ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1959

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1959 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





13-59

# ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԻԴԵՈԼՈԳԻԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ

*Մեծ գաղափարներն իրենց պատմությունն ունեն: Իր պատմությունն ունի նաև տարբեր սոցիալական սիստեմներով պետությունների խաղաղ գոյակցության գաղափարը:*

*Այս գաղափարը քաղաքական վճռական նշանակություն ստացավ առաջին սոցիալիստական պետության ծնունդի հետ միասին: Երկրագնդի մեկ վեցերորդ մասի վրա բանվոր դասակարգի և աշխատավոր ժողովրդի հաղթանակը, բնականաբար, առաջ քաշեց մի հարց. ինչպե՞ս, ի՞նչ հիմունքներով կարող են և պետք է կառուցվեն նոր հասարակության և կապիտալիստական աշխարհի փոխհարաբերությունները: Արդյոք դրանք պատերազմի՞ հարաբերություններ են լինելու, որի դեպքում այս կամ այն սիստեմի հաղթանակը վճռվում է զինված ընդհարումով, թե լինելու են խաղաղ գոյակցության հարաբերություններ, որոնց դեպքում երկու սիստեմներից յուրաքանչյուրը հնարավորություն կստանա մարդկության առջև երևան բերելու իր արժանիքները և թերությունները:*

*Ինչպես հայտնի է, ընտրությունն արվեց Հոկտեմբերյան ռևոլյուցիայից անմիջապես հետո: Կապիտալիզմը գերադասություն տվեց պատերազմին՝ փորձելով ռևոլյուցիան խեղդել հենց օրորոցում: Այնինչ սոցիալիզմը որպես իր արտաքին քաղաքականության անկյունաքարային սկզբունք, առաջ քաշեց խաղաղ գոյակցությունը. սովետական սոցիալիստական պետության առաջին դեկրետը, որ իմպերիալիստական պատերազմի պայմաններում ընդունվեց Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ, խաղաղության դեկրետն էր: Այդ ժամանակից սկսած տարբեր հասարակական սիստեմներով երկրների խաղաղ գոյակցության գաղափարը, որ առաջ է քաշել ու հիմնավորել Վ. Ի. Լենինը, դարձել է սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքը:*

*Առաջին սոցիալիստական պետությունը, հասկանալի է, ստիպված էր հաշվի առնել ռեալ իրադրությունը: Չէ որ խաղաղությունը, ինչպես հայտնի է, պահանջում է երկու կողմերի համաձայնություն, այնինչ կապիտալիզմը համառորեն հրաժարվում էր խաղաղ գոյակցությունից: Երբ երիտասարդ Սովետական ռեսպուբլիկան, շրջապատված լինելով թշնամիներով, ստիպված էր ետ մղել նրանց անընդհատ գրոհները, այդպիսի պայմաններում բոլշևիկները, որքան էլ ձգտում էին հավերժական խաղաղության հասնել ժողովուրդների միջև, ստիպված էին սկսել նրանից, որ գեթ ժամանակավոր խաղաղ դադար ձեռք բերեն: Քանի դեռ պատերազմը մնում էր անխուսափելի և աշխարհում չկային այնպիսի ռեալ ուժեր, որոնք կարողանային փակել պատերազմի ճանապարհը, ստիպված էինք հաշվի առնել և այն, որ որտեղ էլ ռազմական կոնֆլիկտ ծագելու լինի, իմպերիալիստական տերությունները կփորձեն օգ-*

տագործել այն և պատերազմ փաթաթել Սովետական պետության վզին։ Ահա թե ինչու երկար տարիներ շարունակ խաղաղ գոյակցության քաղաքականությունը կոնկրետ արտահայտվում էր նրանով, որ պայքար էր մղվում խաղաղ դադարը հնարավորին չափ ավելի երկարատև դարձնելու համար։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո պատմական պայմանները փոխվեցին։ Դա ՍՄԿՊ XX և XXI համագումարներին թույլ տվեց հետևություն անել, որ խաղաղության աճած ուժերը ի վիճակի են կանխելու նոր պատերազմների բռնկումը, կարող են ժողովուրդների կյանքից վերացնել պատերազմները, որպես պետությունների միջև եղած վիճելի հարցերի լուծման մեթոդ։ Այդպիսի պայմաններում ռեալ հեռանկար է դառնում մշտական խաղաղ գոյակցությունը այն ամբողջ պատմական ժամանակաշրջանում, քանի դեռ մեր մոլորակի վրա կողք-կողքի գոյություն կունենան տարբեր սոցիալական սիստեմների պատկանող երկրներ։

Քառասուն տարվա ընթացքում փոխվել է նաև բուրժուական աշխարհի վերաբերմունքը խաղաղ գոյակցության քաղաքականության նկատմամբ։ Սկզբնական շրջանում բուրժուական աշխարհը փորձում էր առաջարկվող խաղաղ գոյակցությունը դիտել միայն որպես Սովետների թուլություն։ Որպես թե Սովետները խաղաղության մասին այդպես ջերմորեն խոսում են միայն այն պատճառով, որ հույս չունեն, թե պատերազմում կհաղթեն։ Հարկավոր եղավ մի քանի տասնամյակ, որի ընթացքում իմպերիալիստները մերթ պատերազմով, մերթ տնտեսական բլոկադայի ու քայքայիչ գործունեության զենքով շուտ-շուտ փորձում էին սոցիալիզմի ուժերը,—որպեսզի այդ վերսիայի անհեթեթությունը հասնի իմպերիալիզմի շատ ու շատ, նույնիսկ ամենաբթամիտ պարագլուխների գիտակցությանը։ Այդ տասնամյակների ընթացքում սոցիալիզմը այնպիսի վիթխարի ուժ է դարձել, որ առողջ մտքի գեթ մի կաթիլ ունեցող և ոչ մի մարդ խաղաղ գոյակցության գաղափարի մեջ չէր կարող տեսնել «թուլության ֆորմուլա»։ Անփառունակ ձախողում են կրում նաև այդ գաղափարը այլ եղանակով վարկաբեկելու փորձերը, երբ այն հայտարարում են կոմունիստների «պրոպագանդիստական տրյուկ», անվանում են «անհեթեթություն», կամ թե, վերջապես, պարզապես հասարակական կարծիքից թաքցնում են խաղաղ գոյակցության կոնցեպցիայի էությունը։

Ճիշտ է, չի կարելի ասել, թե այդպիսի փորձեր այլևս չեն արվում։

Այսօր էլ դեռ չեն վերջացել իդեոլոգիական հնավաճառները, որոնք մեկ էլ տեսար՝ լույս աշխարհ հանեցին այդ մաշված փաստարկները։ Բոլորովին նորերս այդպիսի դերով հանդես եկավ ոչ անհայտ պատեր Վեթերը, որը խաղաղ գոյակցության մասին լույս ընծայեց հատուկ «հետազոտություն»։ Հակառակ իր աստիճանին՝ նա վաղուց արդեն թողել է աստվածաբանական վեճերի երկնային բարձունքները, որպեսզի մեղապարտ երկրի երեսին զբաղվի հակակոմունիստական պրոպագանդայի ավելի մոդայիկ ու եկամտաբեր գործով։ Եվ թեպետ այդ բնագավառում Վեթերն արդեն շատ բան է սովորեցրել նույնիսկ արևմտագերմանական փորձված ընթերցողին, նրա վերջին աշխատությունն իրավամբ կարելի է համարել կոնտեքստից պոկված և հաճախ էլ ուղղակի «ուղղված» ցիտատներով ֆոկուսներ անելու, անբարեխիղճ մեկնաբանություններ տալու և կեղծումների նշանավոր օրինակ։ Եվ մի՞թե կարելի էր այլ եղանակներով ապացուցել անապացուցելին,—Վ. Ի. Լենինին, ժողովուրդների խաղաղության համար համոզված մարտնչողին, խաղաղ գոյակցության քաղաքակա-



նության հիմնադրին ներկայացնել որպես... պատերազմների ու ագրեսիայի կողմնակից։

Վեթերը, միջնադարյան սխոլաստիկների այս ժառանգը, որը հավակնում է Աղենաուերի խորհրդականի դերն ստանալ, մենակ չէ, նա մեկն է միայն խաղաղ գոյակցության հակառակորդների երգչախմբի մեներգիչներից։ Այդ երգչախումբը դեռևս ձիգ է տալիս իր վհատ երգը։ Բայց նա ավելի ու ավելի հաճախ ստիպված է լինում հանդես գալ դատարկ դահլիճի առաջ։ Հենց այս էլ իրավունք է տալիս վստահությամբ ասել, որ չի հաջողվել խաղաղ գոյակցության գաղափարը ոչ լռեցնել, ոչ էլ այն ներկայացնել որպես դատարկ պրոպագանդա։ Այդ առանձնապես ակներև դարձավ ԱՄՆ-ում Ն. Ս. Խրուշչովի կատարած ուղևորությունից հետո, երբ «գոյակցություն» բառը ամենագործածական բառերից մեկը դարձավ աշխարհի բոլոր լեզուներով, ինչպես երկու տարի առաջ «սպուտնիկ»-ը՝ մի ուրիշ բառ, որ Սովետական Միությունը նվիրեց մարդկությանը։ Այսօր Ամերիկայի Միացյալ Նահանգներում և մյուս կապիտալիստական երկրներում միլիոնավոր մարդիկ սկսում են խաղաղ գոյակցության գաղափարը համարել միջազգային հարաբերությունների առողջացման, մարդկությունը ավերիչ պատերազմի ճնշող սարսափից և ռազմական պատրաստությունների անիմաստ ծախսերից ազատելու ռեալ ծրագիր։

Կարելի է մի անհերքելի հետևություն անել. տարբեր սոցիալական սիստեմների պատկանող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան մեծ գաղափարը, որ արդի պայմաններին համապատասխան, խորապես ու ստեղծագործաբար զարգացրեց Ն. Ս. Խրուշչովը, ճանապարհ է գտնում դեպի նորանոր միլիոնավոր մարդկանց գիտակցությունը։

***

Խաղաղ գոյակցության գաղափարի հաջողությունն ինքն իրեն չի եկել։ Դա ժամանակակից աշխարհում տեղի ունեցած պատմական կարևորագույն փոփոխությունների հետևանք է և ամենից առաջ՝ Սովետական Միության ու մյուս սոցիալիստական երկրների հզորության աճման արդյունք։

Պատմության մեջ առաջին անգամ վիթխարի ուժ է կենտրոնացել այնպիսի դասակարգերի ու պետությունների ձեռքում, որոնք իրենց իսկ բնույթով չեն կարող այդ ուժն օգտագործել ի վնաս մարդկության։ Սոցիալիստական հասարակության մեջ չկա ոչ մի դասակարգ կամ սոցիալական խումբ, որը ցանկանա պատերազմ, սպառազինությունների մրցավազք և էքսպանսիա։ Պատմության մեջ առաջին անգամ ստեղծվել է այնպիսի մի իրադրություն, երբ խաղաղասեր ուժերը ոչ միայն ջերմ ձգտում, այլև ռեալ միջոցներ ունեն բացահայտ ձախողման մատնելու խաղաղության թշնամիների ամեն մի ավանտյուրա։ Միջազգային ասպարեզում աճել է գաղութային լծից ազատագրված և խաղաղասիրական արտաքին քաղաքականություն վարող պետությունների դերը, ակտիվացել են նոր պատերազմի սպառնալիքի դեմ պայքարող բոլոր ուժերը։ Այս ամենը բոլորովին նոր միջազգային իրադրություն է ստեղծում։ Առաջանում են այնպիսի պայմաններ, երբ խաղաղ գոյակցությունը դադարում է միայն կոմունիստների ցանկությունը լինել և դառնում է կյանքի համառ պահանջը, որին ստիպված էին ականջ դնել նույնիսկ նրանք, ովքեր դեռ երեկ փախչում էին նրանից, ինչպես սատանան խնկից։

Օրինակների համար հեռու գնալու կարիք չկա։ Ո՞վ կարող էր, օրինակ, ռազմատենչության մեջ մրցել Ուինստոն Չերչիլի հետ։ Նրան են պատկանում «ռևոլյուցիան օրորոցի մեջ խեղդել» բառերը, որ քառասուն տարի առաջ թևավոր խոսք էր դարձել բուրժուական աշխարհում։ Նրան է պատկանում նաև «սառը պատերազմում» յուրատեսակ առաջին կրակոցի կասկածելի պատիվը՝ Ֆուլտոնում արտասանած հայտնի ճառը, որով նշանավորվեց ՍՍՌՄ-ի նկատմամբ արևմտյան տերությունների հարաբերությունների կտրուկ շրջադարձը, պատերազմական տարիների դաշինքից շրջադարձը դեպի թշնամանք և լարվածություն։ Բայց փոխվել են ժամանակները, փոխվել են և երգերը։ Ռազմաշունչ ճառերի փոխարեն մենք Չերչիլի բերանից խոստովանություն ենք լսում, թե բոլոր պետությունների համար անհրաժեշտ է խաղաղ գոյակցել մեկ մոլորակի վրա։ Այդպիսի օրինակներ քիչ չէին։ Նույնիսկ ամերիկյան ռազմատենչ սենատորների շարքերում, որոնք դեռ երեկ Սովետական Միության դեմ ատոմային պատերազմի գաղափարն էին կրում, ավելի ու ավելի են զգոն ձայներ հնչում, որոնք կոչ են անում միջազգային իրադրության նորմալացման ուղիներ որոնել։

Պատերազմել չի կարելի,—ահա այդպիսի հետևության է հասցնում կյանքը բոլորին, ովքեր չեն կորցրել բանականությունը։

Սա կարևոր քայլ է խաղաղ գոյակցության գաղափարն ընդունելու ճանապարհին։ Բայց և միաժամանակ սա միայն առաջին քայլն է։ «Այժմ,— ՍՍՌՄ Գերագույն Սովետի III սեսիայում տված զեկուցման մեջ իրավացիորեն նշել է Ն. Ս. Խրուշչովը,—խնդիրն այն չէ, թե պետք է լինի խաղաղ գոյակցություն, թե՝ չպետք է լինի, այն կա և կլինի, եթե մենք չենք ուզում համաշխարհային միջուկա-հրթիռային պատերազմի խելացնորությունը։ Խնդիրն այն է, որ գոյակցենք խելամիտ հիմունքներով»։

Ի՞նչ է նշանակում այս։

Այս ամենից առաջ նշանակում է վերջ դնել «սառը պատերազմին», սոցիալիստական և կապիտալիստական պետությունների միջև հասնել նորմալ, բարի-դրացիական հարաբերությունների։ Այս, երկրորդ, նշանակում է հուսալի երաշխիքներ մշակել բոլոր պատահականությունների դեմ, որոնք կարող էին մարդկությանը հրել նոր աղետի հորձանուտի մեջ, և միջազգային հարաբերություններից վերացնել այն ամենը, ինչ զինված ընդհարումների սպառնալիք է ստեղծում։

Խաղաղ գոյակցությունն իր լիակատար և իսկական իմաստով ոչ միայն «չպատերազմելու» քաղաքականություն է, այլև միջազգային հարաբերությունների առողջացման լայն պոզիտիվ ծրագիր է։ «Բացի չհարձակվելու պարտավորությունից,—գրում է Ն. Ս. Խրուշչովը,—այն կանխորոշում է նաև բոլոր պետությունների պարտավորություն՝ ոչ մի ձևով և ոչ մի պատճառաբանությամբ չխախտել միմյանց տերիտորիալ ամբողջականությունն ու սուվերենիտետը։ Խաղաղ գոյակցության սկզբունքը նշանակում է հրաժարվել ուրիշ երկրների ներքին գործերին միջամտելուց՝ նրանց պետական կարգերը, կենսաձևը փոխելու նպատակով կամ որևէ այլ պատճառաբանությամբ։ Խաղաղ գոյակցության դոկտրինան նախատեսում է նաև, որ երկրների միջև քաղաքական ու տնտեսական փոխհարաբերությունները պետք է կառուցվեն կողմերի լիակատար հավասարության և փոխադարձ օգուտի հիման վրա»։

Կապիտալիստական երկրների կառավարող շրջանները պատրա՞ստ են



արդյոք այսպիսի ծրագիր ընդունելու։ Վերջին ամիսների իրադարձությունները հիմք են տալիս ասելու, որ այստեղ որոշ բեկում է նկատվում։ Այն տեսակետը, որի համաձայն պատերազմից հրաժարվելով պետք է միջազգային քաղաքականության մեջ պահպանել ռազմական կոնյունկտուրան, ակնհայտորեն կորցնում է հասարակական համակրանքը։ Այդ բանին քիչ չի նպաստել նաև իրերի ընթացքը հենց սոցիալիստական երկրներում։ Այն ցույց տվեց, թե որքան անհիմն են բուրժուական անհեռատես գործիչների հույսերը, թե սոցիալիզմը ներքուստ կթուլանա, թե այդ երկրներում կզարգանան այնպիսի պրոցեսներ, որոնք որպես թե, երբ միայն դրսից «սառը պատերազմի» աջակցությունն ստանան, կհասցնեն սոցիալիզմի սիստեմի տապալման և կապիտալիզմի գիրկը կվերադարձնեն «մոլորված» սոցիալիստական հոգիները։ Իրականությունը հերքեց այդ հաշիվները։ Սոցիալիզմն է՛լ ավելի ամրապնդվեց և՛ տնտեսապես, և՛ քաղաքականապես։ Ուստի և «սառը պատերազմի» քաղաքականությունը իրերին լրջմիտ նայող կապիտալիստների տեսակետով ևս կորցնում է ամեն մի հեռանկար։

Բայց սխալ կլիներ համարել, թե այդպիսի լրջմիտ հայացքը վերջնականապես հաղթանակել է։ Խաղաղ գոյակցության գաղափարի շուրջը մղվող պայքարն ամենևին էլ չի ավարտվել։ Գաղտնիք չէ, որ կապիտալիստական երկրներում դեռևս կան սոցիալական ուժեր, որոնք ցանկանում են ինչ գնով էլ լինի հավերժացնել միջազգային լարվածությունը, որը նրանց խոստանում է առասպելական շահույթներ և քաղաքական մեծ ազդեցություն։ Այդ ուժերն ամենևին էլ մտադիր չեն անձնատուր լինել։ Ջանալով հարմարվել նոր իրադրությանը՝ նրանք շտապ վերակառուցվում են, փոխում են պայքարի ճակատը, տենդորեն նոր տակտիկա են մշակում։

Մարդիկ, որոնք դեռ երեկ «խաղաղ գոյակցություն» բառերն արտասանել չէին կարողանում, բառերը բկներում էին մնում, վերջապես սովորեցին արտասանել դրանք։ Բայց այդ անում են անտարբեր արագախոսությամբ, այնպիսի մի տեսքով, որը պետք է նշանակի՝ բայց իսկապես ի՞նչ կա այստեղ ուրախանալու։ Լավ, ասենք թե խաղաղ գոյակցությունը «թեժ» պատերազմից լավ է։ Բայց ի՞նչ նոր բան է մտցնում այն՝ համեմատած այն դրության հետ, որ գոյություն ունի 1945 թվականից հետո։ Եվ արդյոք այն շա՞տ է հեռացել «սառը պատերազմից»։ Առաջիններից մեկը այդպիսի դիրք բռնեց ԱՄՆ-ի վիցե պրեզիդենտ Ռիչարդ Նիքսոնը, որը հայտարարեց. «Գոյակցությունը նշանակում է, որ աշխարհը պետք է բաժանվի երկու թշնամական լագերների, որոնց միջև կանգնած է ատելության ու երկյուղի պատնեշը»։

Վերջին շաբաթներս խաղաղ գոյակցության բոլոր հակառակորդների համար այդպիսի պնդումները բառացիորեն դարձել են պրոպագանդիստական մոդայի ճիչ։ Պարզ երևան եկավ նաև այդ տեսակետի կողմնակիցների պատճառաբանությունը։ Այս տեսակետից խիստ ցուցանշական է ԱՄՆ-ի պետական քարտուղարի օգնական Էնդրյու Բերդինգի վերջերս ունեցած ելույթը Ռադիոհաղորդման ու հեռուստատեսության ազգային ասոցիացիայի կոնֆերանսում։ «Խաղաղ գոյակցությունը,—հայտարարեց նա,—հրապուրիչ է հնչում։ Շատ մարդիկ ընդունել են այն՝ առանց նեղություն քաշելու խորանալու նրա մեջ։ Ուստի մեզ համար խիստ կարևոր է իմանալ, թե ինչ է նշանակում այն»։ Պատասխանելով այս հարցին՝ Բերդինգը ափսոսանք է հայտնել այն առթիվ, որ Սովետական Միության առաջարկած խաղաղ գոյակցությունը, դե տեսեք «չի

կարելի հավասարեցնել խաղաղության հետ՝ մեր հասկացողությամբ»։ Ինչո՞ւ։ Նրա համար, որ, ասում է, խաղաղ գոյակցությունը սովետական հասկացողությամբ չի նշանակում երկու սիստեմների մրցության, նրանց միջև իդեոլոգիական պայքարի վերջացում։ Այս հիման վրա էլ Բերդինգը ջանում է այն ներկայացնել որպես իսկական խաղաղության մի ինչ-որ անլիարժեք սուռոգատ և անում է այսպիսի հետևություն. «Մարդիկ մի ինչ-որ ավելի լավ բանի իրավունք ունեն, քան խաղաղ գոյակցությունն է»։

Այսպիսի դրույթները, որ արտահայտել են Ամերիկայի մի քանի ուրիշ քաղաքական գործիչներ ևս, պատրաստակամությամբ ընդունեց ռեակցիոն մամուլը։ Օրինակ՝ «Յունայտեդ Ստեյտս նյուս էնդ Ուորլդ ռիպորտ» ժուռնալը սովետական առաջարկությունները մեկնաբանել է այս կերպ. «Ամբողջ աշխարհում «սառը պատերազմը» նախատեսվող ապագայում չի վերջանա»։ Իսկ «Նյու-Յորք Թայմս» թերթն այնտեղ է հասել, որ փորձել է երկու սիստեմների խաղաղ գոյակցության ու մրցակցության կոնցեպցիան մեկնաբանել որպես կոմունիզմի յուրահատուկ մի «պահանջագիր»՝ «քայքայիչ աշխատանքի միջոցով նոր նվաճումների» անարգել իրավունք ստանալու համար։

Ստացվել է շատ յուրահատուկ մի պատկեր. հենց նրանք, ովքեր այնքան երկար ժամանակ ու անհաշտ կերպով հանդես էին գալիս «սառը պատերազմի» դիրքերից, այժմ միաբերան քննադատում են խաղաղ գոյակցությունը նրա համար, որ այն... բավականաչափ «խաղաղ չէ»։ Բայց կարևորը գործի բարոյական կողմը չէ. ռեակցիոն պրոպագանդայի կեղծավորությանն առաջին անգամը չենք հանդիպում։ Գլխավորը պրոբլեմի էությունն է, մանավանդ որ այդպիսի պատճառաբանություններն ուղղված են լայն հասարակությանը, որի մեջ քիչ չեն մարդիկ, որոնք հմուտ չեն թեորիայի և քաղաքականության հարցերում։ Խաղաղ գոյակցության գաղափարի քննադատները ջանում են հենց նրանց համոզել, թե իբր այդ գաղափարը ոչ մի նոր բան չի մտցնում միջազգային հարաբերությունների մեջ, թե դա այնպիսի մի նպատակ չէ, որի համար արժե լրջորեն պայքարել։ Այսպիսի պրոպագանդայի վտանգավորությունը, իհարկե, չի կարելի թերագնահատել։

Գործի էությունն այստեղ հանգում է սերտորեն իրար հետ կապված երկու հարցերի։ Դրանցից առաջինը կարելի է ձևակերպել այսպես. ինչո՞ւ Սովետական Միությունը, հռչակելով, թե իր նպատակն է նորմալացնել միջազգային հարաբերությունները, միևնույն ժամանակ պնդում է, թե իդեոլոգիական պայքար պետք է լինի։ Ինչո՞ւ նա խաղաղ գոյակցությունը իդեոլոգիական բնագավառի վրա չի տարածում։ Եվ երկրորդ հարց. խաղաղ գոյակցության կոնցեպցիան իդեոլոգիական պայքարի պայմաններում արդյո՞ք բավականաչափ հիմքեր ստեղծում է կապիտալիստական ու սոցիալիստական երկրների միջև կայուն խաղաղության ու նորմալ, բարի-դրացիական հարաբերություններ հաստատելու համար։



Ինչ վերաբերում է առաջադրված հարցերից առաջինին, ապա նրա պատասխանը, կարճ ասած, այսպես է. Սովետական Միությունը խաղաղ գոյակցությունը կապում է իդեոլոգիական պայքարի հետ այն պարզ պատճառով, որ դա միակ ռեալ մոտեցումն է։ Ի՞նչ կնշանակեր հայտարարել, թե կապիտալիս-



տական աշխարհի հետ դադարեցվում են մրցակցությունը և իդեոլոգիական պայքարը։ Դա կամ կլինի կեղծավորություն, իր իսկական հայացքները և մտադրությունները թաքցնել, մի բան, որ դեռ երբեք չի օգնել համաձայնության հասնելու, լուծելու սոցիալ-քաղաքական բարդ պրոբլեմները, կամ թե դա կնշանակեր կոմունիստների դավաճանություն իրենց սկզբունքներին, իրենց աշխարհայացքին։ Ըստ երևույթին, հենց դրան են ձգտում շատերն այն մարդկանցից, ովքեր խաղաղ գոյակցությունը քննադատում են «իսկական խաղաղության» դիրքերից։ Բայց այդպիսի, եթե կարելի է ասել «վարիանտը» հազիվ թե նույնիսկ հիշատակման կարիք ունենա։

Խաղաղ գոյակցության կոնցեպցիայի էությունը հենց այն է, որ այստեղ խոսքը վերաբերում է ոչ թե պարզապես տարբեր պետությունների, այլ սոցիալական հակադիր սիստեմների պատկանող պետությունների գոյակցությանը։ Նշանակում է դրան մոտեցումը ևս պետք է լինի ոչ թե նեղ-դիվանագիտական, այլ՝ սոցիալական, որը պետք է իր մեջ պարունակի պատմական հեռանկարի ըմբռնողությունը, աշխարհում ստեղծված դրության դասակարգային վերլուծությունը։

Եվ իրոք, երկու սիստեմների համատեղ գոյակցությունը մեկ մոլորակի վրա ապահովվո՞ւմ է արդյոք նրանց միջպետական հարաբերություններով։ Ոչ, որքան էլ ինքնին կարևոր լինեն այդ հարաբերությունները։ Երկու սիստեմների գոյությունն ունի և մի ուրիշ կողմ։ Նրանցից ամեն մեկը մարմնավորում է մի դասակարգի տիրապետությունը—մի դեպքում կապիտալիստների դասակարգի, իսկ մյուսում՝ բանվոր դասակարգի,—որոնց միջև մղվում է անհաշտ պայքար, որը կազմում է մեր պատմական դարաշրջանի հիմնական բովանդակությունը։ Այդ դասակարգերի պայքարը սկսվել է առաջին կոմունիստական պարտիայի երևան գալուց դեռ շատ առաջ, և Մարքսը չէ, որ հայտնագործել է այն։

Այդ պայքարի ելքը կարող է լինել միայն մեկ բան. բանվոր դասակարգի լիակատար հաղթանակը, որը կապված է արտադրության ավելի առաջավոր, պատմականորեն պրոգրեսիվ եղանակի հետ։ Սոցիալիզմի հաղթանակը այն երկրներում, որտեղ ապրում է մարդկության մեկ երրորդ մասը, կարևոր էտապ է այդ նպատակի ճանապարհին։ Բայց այդ հաջողությունը չի նշանակում և չի կարող նշանակել դասակարգային պայքարի ավարտում։ Բանվորների ու բուրժուազիայի միջև այդ պայքարը շարունակվում է և պիտի շարունակվի ոչ միայն այս կամ այն երկրի ներսում, այլև միջազգային ասպարեզում՝ երկու սոցիալական սիստեմների միջև, ծավալվելով տնտեսական, քաղաքական և իդեոլոգիական բնագավառներում։

Ավելի քան քառասուն տարի առաջ երկու սոցիալական սիստեմների միջև սկսված վեճը չի վերջանա, մինչև որ նրանցից ավելի առաջավորը լիակատար հաղթանակ չտանի ամբողջ աշխարհում։ Այս է պատմության օրենքը։ Այս անխախտելի փաստը ոչ մի համաձայնությամբ չի վերացվի և չի փոփոխվի. այն գոյություն ունի օբյեկտիվորեն և որևէ կառավարության կամքից չի կախված։

Բայց կառավարություններից, կառավարող դասակարգերից ու պարտիաներից մեծ չափով կախված է պատմականորեն անխուսափելի այդ պայքարի ձևերի ընտրությունը։ Առաջարկելով խաղաղ գոյակցություն՝ Սովետական Միությունը ելնում է նրանից, որ կարելի է խուսափել այդ պայքարը պետու-

թյունների միջև զինված կոնֆլիկտի փոխվելուց և այն ուղղել այնպիսի կանալներով, որ քաղաքակրթությանը չսպառնա աղետաբեր պատերազմներով, այնպիսի կանալներով, որոնք ամենից ավելի համապատասխանեն մարդկության պահանջներին և շահերին։

Ընդհանուր գծերով այս է Սովետական Միության առաջարկած խաղաղ գոյակցության քաղաքականության սոցիալ-պատմական ֆոնը։ Այդ քաղաքականությունը իր առջև անիրականանալի նպատակ չի դնում, այն է՝ վերջ դնել միջազգային ասպարեզում ծավալված դասակարգային պայքարին։ Այսպիսի նպատակը նույնիսկ ամենաուժեղ ու փորձված քաղաքական պարտիաների ու կառավարությունների ուժից վեր է։ Բայց խաղաղ գոյակցությունը նշանակում է հրաժարվել պետությունների միջև պայքարի զինված ձևից, որի փոխարեն տրվում է հասարակական սիստեմների մրցակցության ձևը՝ իրենց ժողովուրդների պաշտպանության համար։ Պայքարի այդպիսի ձևը ամենից ավելի է համապատասխանում մարդկության շահերին։ Ոչ թե զենքը, այլ ժողովուրդների կամքը պիտի վճռի, թե որ կարգերն են լավ, որ կարգը կարող է աշխատավորների համար ապահովել բարեկեցության ավելի բարձր մակարդակ, իսկական ազատություն, կուլտուրայի բարգավաճում։

Երկու սոցիալական սիստեմների պայքարի այսպիսի ձևը անխուսափելիորեն ենթադրում է գաղափարական պայքարի շարունակում։ Քանի որ կապիտալիզմն ու սոցիալիզմն իրար հետ պայքարելու են ժողովուրդների աջակցությունը նվաճելու համար, ապա, ուրեմն, գաղափարների պայքարն անխուսափելի է։

Միայն ակնհայտ կեղծարարները կարող են ձևացնել, թե իբր մինչև սոցիալիզմի ծագումը եղել է եղբայրության ու բարեկամության իդիլիա, ընդհանուր գրկախառնության մի թագավորություն, բայց ահա եկել են կոմունիստները և պահանջում են երկու սիստեմների ինչ-որ մրցակցություն ու իդեոլոգիական պայքար։

Իրականում աշխարհը կանգնած է—և ամենևին ոչ կոմունիստների մեղքով—մի ուրիշ երկընտրանքի առաջ։ Մի կողմից՝ զինված կոնֆլիկտներ պետությունների միջև ու «սառը պատերազմ», մյուս կողմից՝ երկու սիստեմների խաղաղ մրցակցություն և իդեոլոգիական պայքար։ Նշանակում է, կոմունիստներն իդեոլոգիական պայքարն առաջարկում են ոչ ընդհանուր իդիլիայի փոխարեն—այն չկա և դասակարգային հակամարտությունների գոյության պայմաններում լինել չի կարող—այլ՝ «սառը պատերազմի» և արյունահեղ պատերազմների փոխարեն։ Պարզ է, որ սա ո՛չ թե մի քայլ դեպի ետ է և ո՛չ էլ տեղում դոփել է նշանակում, այլ վիթխարի առաջընթաց է միջազգային իրադրության առողջացման գործում։

Խաղաղ գոյակցության սովետական կոնցեպցիայի հակառակորդներին առանձնապես համբերությունից հանում է այն հանգամանքը, որ կոմունիստները խաղաղ գոյակցության մասին խոսելիս անսասան վստահություն են արտահայտում, թե կապիտալիզմի հետ մրցակցելիս իրենք են հաղթելու, թե, վերջին հաշվով, հաղթանակելու են իրենց գաղափարները։ Էլ ի՞նչ գոյակցության մասին կարող է խոսք լինել, հարցնում են նրանք, երբ Սովետական Միությունը վստահություն է արտահայտում, թե վերջիվերջո կոմունիզմը հաղթելու է ամբողջ աշխարհում։

Պատասխանելով այդպիսի տարակուսական հարցերին՝ ընկեր Ն. Ս. Խրուշչովը ամերիկյան «Ֆորին աֆֆերս» ժուռնալի համար գրած իր «Խաղաղ գոյակցության մասին» հոդվածում իրավացիորեն նշել է, որ այդ հարցերի հեղինակները իդեոլոգիական պայքարի հարցերը շփոթում են պետությունների հարաբերությունների հարցերի հետ։ «Մենք, կոմունիստներս,— գրել է նա,—հավատում ենք, որ վերջին հաշվով կոմունիզմի գաղափարն ամբողջ աշխարհում կհաղթի այնպես, ինչպես հաղթել է մեր երկրում, Չինաստանում և ուրիշ շատ պետություններում։ Հնարավոր է, որ «Ֆորին աֆֆերս»-ի շատ ընթերցողներ մեզ հետ չեն համաձայնի։ Գուցե նրանք գտնում են, որ վերջին հաշվով կհաղթանակի կապիտալիզմի գաղափարը։ Այդպես մտածելն իրենց իրավունքն է։ Մենք կարող ենք վիճել, կարող ենք չհամաձայնել իրար հետ։ Գլխավորն այն է, որ դա պահպանվի իդեոլոգիական պայքարի դիրքերում, զենք չգործադրվի իր ասածը պնդելու համար»։



Սոցիալիստական երկրները հենց այդպիսի դիրքի վրա են կանգնած։ Նրանք մտադիր չեն իրենց գաղափարներն ու հայացքները զենքի ուժով փաթաթել ուրիշ ժողովուրդների վզին։ Մարքսիզմ-լենինիզմին օրգանապես խորթ է «ռևոլյուցիա արտահանելու», այն դրսից «հրահրելու» գաղափարը։ Ինչպես հայտնի է, մեր պարտիան անողոքաբար քննադատեց այդպիսի հայացքները, որ բաժանում էին տրոցկիստներն ու բուխարինականները։ Պատասխանելով նրանց՝ Լենինը գրել է. «Նման «թեորիան» կատարելապես հակառակ կլիներ մարքսիզմին, որը միշտ ժխտել է ռևոլյուցիաների «առաջմղումը», որոնք զարգանում են ռևոլյուցիաներ ծնող դասակարգային հակասությունների սրության հասունանալուն համընթաց» (Երկեր, հ. 27, էջ 66)։ Բայց ի՞նչ հիմքեր կարող են լինել պահանջելու, որ կոմունիստներն սկսեն կասկածել, թե վաղ թե ուշ կոմունիզմի կողմը կանցնի ամբողջ մարդկությունը։ Չէ՞ որ այդպիսի հետևության օգտին է խոսում պատմության ամբողջ փորձը և արդի հասարակության զարգացման տենդենցների լրջմիտ գնահատությունը։

Այս տեսակետից շատ տարօրինակ է թվում, երբ կապիտալիստական որոշ գործիչներ պահանջ են դնում ինչ-որ «երաշխիքներ» տալ իրենց, որ կոմունիստական գաղափարների ազդեցությունն այլևս չի աճի ամբողջ աշխարհում։

Ժխտելով ամերիկյան «Լուկ» ժուռնալի խմբագրի արտահայտած այդպիսի պահանջները՝ Ն. Ս. Խրուշչովը Նյու-Յորք քաղաքի Տնտեսական ակումբում իր պատվին կազմակերպված ճաշկերույթում ասաց. «Ի՞նչ է Ձեր ուզածը։ Դուք ցանկանում եք, որ ես ձեզ երաշխիք տամ, թե ամերիկյան ժողովուրդը հավիտենապես ապրելու է կապիտալիստական հասարակության պայմաններո՞ւմ։ Ցանկանում եք դեղատոմս ստանալ, որպեսզի կապիտալիզմը պաշտպանե՞ք իր կործանումից։ Ես բժիշկ չեմ և այդպիսի դեղատոմսեր տալ չեմ կարող։ Այն հարցը, թե ինչպիսի կարգեր են լինելու ձեր երկրում, ոչ ինձնից է կախված և ոչ էլ ձեզնից։ Դա կախված է ամերիկյան բանվորներից, ամերիկյան ժողովրդից, որոնք և կորոշեն, թե ինչպիսի կարգեր կընտրեն»։

Խաղաղ գոյակցության սովետական կոնցեպցիայի ռեալության մասին է խոսում նաև այսպիսի մի փաստ. այս կոնցեպցիայի քննադատները, որոնք գտնում էին, որ «մարդիկ ինչ-որ ավելի լավ բանի իրավունք ունեն», ոչ մի պոզիտիվ առաջարկություն չեն անում։ Եվ այդ հասկանալի է. նրանք առաջարկելու բան չունեն։ Իսկապես, կարելի՞ է արդյոք, ի հակադրություն սովետական կոնցեպցիայի, առաջ քաշել, օրինակ, խաղաղ գոյակցության պլան՝ «գաղափարական միասնության» պայմանով։ Ո՛չ, չի՛ կարելի։ Որովհետև

*իրականում դա կնշանակեր պահանջել, որ բոլոր պետությունները անհապաղ ընդունեն կամ սոցիալիստական, կամ կապիտալիստական իդեոլոգիան։ Բայց քանի որ ոչ մեկ, ոչ մյուս կողմը չեն ցանկանում իդեոլոգիան «փոխել», ապա այդպիսի պլանը կլիներ ոչ թե խաղաղության ու ժողովուրդների բարեկամության ծրագիր, այլ՝ խաչակրաց արշավանքի ծրագիր՝ «իսկական հավատի» հաղթանակի համար, այլ խոսքով ասած՝ պատերազմի և միջազգային լարվածության սրման ծրագիր։*

*Մի ուրիշ վարիանտ, որ կարելի էր երևակայել, «իդեոլոգիական զինադադարն» է։ Թող, կասեն, ամեն մեկը մնա իր կարգերով և իր իդեոլոգիայով, բայց այսուհետև հրաժարվի իդեոլոգիական պայքարից։ Բայց այս վարիանտն էլ ամենևին ռեալ չէ։ Դրա մասին կարող են մտածել միայն այնպիսի մարդիկ, որոնք չեն հասկանում աշխարհում տեղի ունեցող սոցիալական պրոցեսների էությունը և կարծում են, թե պատմությունը կարելի է կանգնեցնել, հարկավոր է միայն դրա մասին համաձայնության գալ։*

*Այն պայմաններում, երբ շարժման մեջ են մտել ժողովուրդների բազմամիլիոն մասսաները, երբ նրանք իրենք են ցանկանում վճռել, թե որ սոցիալական կարգերը իրենց համար կապահովեն լավագույն, մարդավայել կյանք, բոլոր մարդկանց հայացքները հառած են այն բանին, թե ինչ է կատարվում սոցիալիստական ու կապիտալիստական աշխարհում։ Այդպիսի պայմաններում վճռական իդեոլոգիական նշանակություն են ստանում ոչ այնքան խոսքերը, որքան գործերը՝ աշխատավորների բարեկեցության մակարդակն այս կամ այն երկրում, նրանց տնտեսական ու սոցիալական հաջողությունները, նրանց նվաճումները դեմոկրատիայի, գիտության ու կուլտուրայի բնագավառում, նրանց առաջընթացի տեմպերը։ Չի կարելի սպանել մարդկանց հետաքրքրությունը, թե ի՞նչ է կատարվում աշխարհում, ինչպես և չի կարելի մեր մոլորակը բաժանել անթափանցելի մասերի, ստեղծել այնպիսի պատնեշներ, որոնց վրայով ո՛չ հայացքն անցնի, ո՛չ բառը հասնի։*

*Իդեոլոգիական պայքարը, հետևապես, ո՛չ թե որևէ մեկի քմահաճույքն է կամ հնարանքը, այլ իրականության անհերքելի փաստն է, որ արտացոլում է տարբեր հասարակական սիստեմների գոյությունը։ Անհրաժեշտ է, որ այդ փաստն ընդունեն բոլորը, ովքեր ցանկանում են մնալ իրականության հողի վրա։*



*Այսօր հարցն այսպես չի դրված. ընդունե՞լ, թե չընդունե՞լ իդեոլոգիական պայքարի օրինաչափությունը։ Այդ պայքարը կա և կլինի, քանի դեռ աշխարհում գոյություն ունեն տարբեր դասակարգեր, տարբեր սոցիալական սիստեմներ։ Հարցի էությունն այն է, որ երկու սիստեմների մրցակցության և նրանց միջև իդեոլոգիական պայքարի պայմաններում կանխվեն ռազմական ընդհարումները, վերջ տրվի «սառը պատերազմին», միջազգային հարաբերությունները վերակառուցվեն ժողովուրդների համագործակցության ու բարեկամության հիման վրա։*

*Իրականանալի՞ է արդյոք այս խնդիրը։*

*Կոմունիստներն այդ հարցին դրական պատասխան են տալիս։ Ըստ որում նրանք ելնում են ոչ թե բարի ցանկություններից, այլ ներկայումս աշխարհում ստեղծված դրության լրջմիտ վերլուծությունից։ Այդպիսի վերլուծությունն ամենայն անհերքելիությամբ վկայում է, որ պատերազմի սպառնալիք և միջազգային լարվածություն առաջացնող պրոբլեմների մեծ մասի հիմքը ամենևին էլ իդեոլոգիական պատճառներ չեն։ Օրինակ, զինաթափման ճանապարհին գայթակղության քար են ծառայում ոչ թե գաղափարական նկատառումները, այլ այն, որ ազդեցիկ մոնոպոլիաները չեն ուզում հրաժարվել այն շահույթներից, որ խոստանում է իրենց սպառազինությունների մրցավազքը։ Ոչ թե գաղափարների պայքարը, այլ գաղութակալության քաղաքականությունն է ծնունդ տալիս չդադարող ու վտանգավոր լարվածությանը Հարավ-Արևելյան Ասիայում, Մերձավոր Արևելքում, Հյուսիսային Աֆրիկայում։*



*Կոմունիստների տեսակետն այս հարցում ամենահամոզիչ կերպով հաստատում է պատմական փորձը։ Այն, մասնավորապես, վկայում է, որ վերջին ժամանակներս խոշորագույն պատերազմները բռնկել են ամենևին էլ ո՛չ իդեոլոգիական պայքարի հետևանքով, այս կամ այն սոցիալական սիստեմի առավելությունների կամ թերությունների մասին ծագած վեճի պատճառով, այլ շատ ավելի նյութական նկատառումներով, այն պատճառով, որ իմպերիալիստներն ընկել էին շահույթների հետևից, գաղութների ազդեցության շրջանների, հումքի աղբյուրների և վաճառահանման շուկաների ետևից։*

*Այսպիսի փաստերի լույսի տակ խիստ անհամոզիչ են երևում ժամանակակից բոլոր կոնֆլիկտներն ու բարդությունները իդեոլոգիայի «հաշվին գրելու» բոլոր փորձերը։ Այսօր այդ ընդունում են նաև Արևմուտքի որոշ քաղաքական գործիչներ։ Ոչ այլ ոք, քան Ալլենը՝ ԱՄՆ-ի պաշտոնական պրոպագանդիստական գերատեսչության ղեկավարն էր, որ վերջերս հայտարարեց. «Նույնիսկ, եթե մենք լուծելու լինեինք իդեոլոգիական տարաձայնությունները, միևնույն է, մենք էլի ստիպված կլինեինք միջազգային հարաբերություններն ամբողջ աշխարհում կազմակերպել այնպես, որ կանխվեն սուվերեն պետությունների լուրջ բախումները։ Անգլիան և Ռուսաստանը գժտված էին հարյուր տարի շարունակ, մինչև 1914 թվականը։ Քրիստոնեական պետությունների մեծ մասը իրար դեմ պայքարում էին նույնպիսի պատրաստակամությամբ, ինչպես քրիստոնյաները կռապաշտների դեմ»։ Բայց մի՞թե մինչև աշխարհիս երեսին առաջին սոցիալիստական պետության երևան գալը, այն պայմաններում, երբ ոչ մի բանով չէր մռայլված «գաղափարական միասնությունը», այդ ժամանակ մի՞թե կոնֆլիկտներից ու պատերազմներից շարունակ բզկտվող բուրժուական աշխարհը կարող էր իր վեճերը լուծել խաղաղ ճանապարհով։*

*Դրա հետ միասին պատմությունը տարբեր սոցիալական սիստեմներ ու իդեոլոգիաներ ունեցող պետությունների միջև նորմալ հարաբերությունների ավելի քան բավականաչափ օրինակներ է տալիս։ Հայտնի է, օրինակ, որ բուրժուա-դեմոկրատական ռեսպուբլիկական երկրի՝ ԱՄՆ-ի և կիսաֆեոդալական, բացարձակ միապետական տերության՝ Ռուսաստանի միջև եղած խոր տարբերությունները ավելի քան հարյուր տարի շարունակ չէին խանգարում նրանց ոչ միայն հաշտ ապրել, այլև իրենց հարաբերությունները կառուցել լիակատար բարեկամական հիմքերի վրա։ Իդեոլոգիաների տարբերությունները երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին չխանգարեցին նաև սոցիալիզմի երկրի և այնպիսի կապիտալիստական տերությունների դաշինքին, ինչպիսիք են՝ ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան։ Ասենք հենց ներկա ժամանակաշրջանում էլ նորմալ, իսկական բարեկամական հարաբերությունների քիչ օրինակներ չկան այնպիսի երկրների միջև, որոնք իրարից բաժանված են իդեոլոգիական լուրջ տարբերություններով, ինչպիսիք են, օրինակ, մի կողմից*

Սովետական Միությունը և մյուս կողմից՝ Հնդկաստանը, Ինդոնեզիան, Աֆղանստանը։

Որ նույնիսկ իդեոլոգիական հարցերի մասին ամենասուր վեճերը չեն կարող խանգարել ժողովուրդների փոխըմբռնմանը, դրա ամենավերջին համոզիչ ապացույցն է Ն. Ս. Խրուշչովի ուղևորությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներ։ Ամերիկացիների հետ ունեցած իր հանդիպումների ժամանակ, ինչպես հայտնի է, Սովետական կառավարության ղեկավարը չէր խուսափում իդեոլոգիական դիսկուսիաներից, չէր սքողում խոր տարաձայնությունները, սկզբունքորեն և հետևողականորեն շարադրում էր մարքսիստական-լենինյան տեսակետը ժամանակակից բոլոր կարևորագույն պրոբլեմների նկատմամբ։ Այդ հանդիպումներից շատերը վերածվում էին շատ սուր իդեոլոգիական պայքարի։ Բայց կգտնվի՞ արդյոք գեթ մեկ մարդ, որն ասի, թե այդ ուղևորության հետևանքով ԱՄՆ-ի ու Սովետական Միության հարաբերությունները ոչ թե լավացան, այլ վատացան, թե այդ ուղևորությունը հսկայական ներդրում չեղավ «սառը պատերազմի» լիկվիդացման գործում։

Հետևապես, և՛ անցյալի փորձը, և՛ արդի իրականությունը վկայում են մեկ բան. եթե իդեոլոգիական տարաձայնությունները դիտմամբ առիթ չդարձվեն հարաբերությունների սրման համար, ապա այդ տարաձայնությունները չեն կարող խանգարել տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող պետությունների համագործակցության հաջողակ կարգավորմանը։ Եթե շատ անկեղծ ու հետևողական ջանքեր գործադրվեն այդ ուղղությամբ, ապա երկու սիստեմների մրցության և իդեոլոգիական պայքարի պայմաններում էլ լիակատար հնարավորություն կա վերջ տալու «սառը պատերազմին» և հասնելու ոչ թե խաղաղության ինչ-որ սուռոգատի, ինչպես պնդում են որոշ բուրժուական գործիչներ, այլ իսկական բարի-դրացիական ու բարեկամական հարաբերությունների։

Հասկանալի է, խաղաղ գոյակցության հետ համատեղելի է ո՛չ այն ամենը, ինչ սովոր են անվանել իդեոլոգիական պայքար։ Այլ բան է գաղափարների պայքարը, վեճը՝ իրականության այս կամ այն պրոցեսի ու երևույթի ըմբռնման ու գնահատման մասին, մարդկության մեծամասնության ընդունելի իդեալներին հասնելու ուղիների մասին, սոցիալական այս կամ այն կարգերի արժանիքների ու առավելությունների մասին։ Այդպիսի պայքարը, այդպիսի վեճը չեն կարող և չպետք է խանգարեն սոցիալիստական ու կապիտալիստական տերությունների փոխհարաբերությունների վճռական բարելավմանը։ Եվ բոլորովին այլ բան է զրպարտչական պրոպագանդան, պրովոկացիան, պատերազմ քարոզելը, սաբոտաժի և այլ հանցագործությունների դրդելը, հասարակության կյանքում շփոթություն և տարաձայնություն առաջացնող լուրերի տարածումը։ Այդպիսի պրոպագանդան, եթե նույնիսկ այն իդեոլոգիական հարցեր է շոշափում, ոչ թե գաղափարական պայքար է, այլ ավելի շուտ՝ քայքայիչ գործունեություն, միջամտություն ուրիշ պետությունների ներքին գործերին։

Խաղաղ գոյակցության որոշ հակառակորդներ բացահայտորեն փորձում են չարաշահել այն, որ վերջին տասը-տասներեք տարվա ընթացքում շատ մարդիկ սովորել են իդեոլոգիական պայքար հասկացողությունը նույնացնել այդպիսի պրոպագանդայի հետ, «սառը պատերազմի» հետ, որը միջազգային ռեակցիան բորբոքել է Սովետական Միության դեմ։ Այդ պրոպագանդան, իս-



կապես, կարող է վնասել և լուրջ վնաս է հասցրել պետությունների փոխհարաբերությանը, սերմանել է անվստահություն և փոխադարձ ատելություն։

Բայց իդեոլոգիական պայքարը, ինչպես հասկանում են կոմունիստները, ամենևին էլ «սառը պատերազմ» չէ։ «Սառը պատերազմը» մի քաղաքականություն է, որը նախատեսում է օգտագործել բոլոր միջոցները, այդ թվում նաև պրոպագանդայի միջոցները, ամենից առաջ իսկական «թեժ» պատերազմ նախապատրաստելու և բորբոքելու համար, ինչպես նաև նրա համար, որ շարունակ միջամտություն է արվում ուրիշ երկրների ներքին գործերին, նպատակ ունենալով տապալել այնտեղ գոյություն ունեցող կարգերը։ Սրանով են բնորոշվում համապատասխան պրոպագանդայի (այսպես կոչված՝ «հոգեբանական պատերազմի») և՛ բնույթը, և՛ մեթոդները, մի պրոպագանդա, որ ԱՄՆ-ում քիչ երկրպագուներ չի ունեցել և այժմ էլ ունի, բայց վճռականապես մերժվում է Սովետական Միությունում։

Խաղաղ գոյակցությունը հակադիր նպատակ ունի. բացառել պատերազմը որպես պետությունների վեճերի լուծման մեթոդ և ապահովել տերությունների չմիջամտությունը միմյանց ներքին գործերին։ Նշանակում է և այն իդեոլոգիական պայքարը, որ ենթադրում է այդպիսի քաղաքականությունը, չի կարող կրել «հոգեբանական պատերազմի» բնույթ, որը թունավորում է միջազգային մթնոլորտը, լուրջ խոչընդոտներ է ստեղծում խաղաղության ամրապնդման և ժողովուրդների համագործակցության ճանապարհին։ Խաղաղ գոյակցությունը պահանջում է ոչ թե «սառը պատերազմի» մեթոդների, այդ թվում նաև պրոպագանդիստական մեթոդների հավերժացում ու լեգալացում, այլ վճռական հրաժարում նրանցից։

Դա իդեոլոգիայի և սոցիալական սկզբունքների հարց չէ, այլ քաղաքական միջոցների հարց է։ Այդ հարցում, ինչպես և միջպետական հարաբերությունների այլ հարցերում, հնարավոր ու հարկավոր են զիջումներ, կոմպրոմիսներ, որոնց նշանակության մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի 3-րդ սեսիայում տված իր զեկուցման մեջ խոսեց Ն. Ս. Խրուշչովը։ Բայց հիմքից բոլորովին զուրկ են կոմունիստներին ներկայացվող այն պահանջները, որ նրանք իրենց աշխարհայացքով հանդես գալիս ցույց տան իրենց բարի կամքը, զիջումներ անեն իդեոլոգիայի բնագավառում, հանդուրժողականություն ցուցաբերեն բուրժուական գաղափարների նկատմամբ։ Այդպիսի պահանջներ առաջ քաշողներին կարելի է ասել՝ իզուր եք սպասում, պարոնայք։ «...Չի կարելի,—իրավացիորեն նշում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը.—պետությունների խաղաղ գոյակցության շահերի համար արվող փոխադարձ զիջումները շփոթել սկզբունքների հարցում կատարվող զիջումներին, նրա հետ, ինչ վերաբերում է մեր սոցիալիստական կարգերի բուն իսկ բնույթին, մեր իդեոլոգիային։ Այստեղ ոչ մի զիջումի և որևէ հարմարեցման մասին խոսք անգամ լինել չի կարող։ Եթե զիջումներ լինեն սկզբունքներում, իդեոլոգիայի հարցերում, ապա այդ կնշանակի սողալ դեպի մեր հակառակորդների դիրքերը։ Դա կնշանակի քաղաքականության որակական փոփոխություն, կլինի դավաճանություն բանվոր դասակարգի գործին։ Նա, ով այդպիսի ճանապարհ կբռնի, նա կկանգնի սոցիալիզմին դավաճանողի ճանապարհին և, իհարկե, նրա վրա պետք է բացվի անողոք քննադատության կրակը»։

Ահա թե ինչու խաղաղ գոյակցությունը, նույնիսկ եթե նրա սկզբունքները լիովին հաղթանակեն պետությունների փոխհարաբերությունների մեջ, օրա-

կարգից չի հանում բուրժուական իդեոլոգիայի դեմ անհաշտ պայքար մղելու խնդիրը։ Ահա թե ինչու միշտ, ինչպիսի հետագա զարգացում էլ ստանալու լինեն միջազգային հարաբերությունները, մեր գաղափարների պաշտպանությունը, նրանց անաղարտ պահպանումը մնալու է որպես ամեն մի կոմունիստի սրբազան պարտքը։ Այս է խոր տարբերությունը իսկական լենինյան, սկզբունքային դիրքերի վրա կանգնածների և նրանց միջև, ովքեր գլորվել են օպորտունիզմի և ռևիզիոնիզմի դիրքերը։

Բուրժուական ու պրոլետարական աշխարհայացքների միջև կոմպրոմիսներ չկան և չեն կարող լինել։ Մասնավոր սեփականությո՞ւն, թե՝ հասարակական, բուրժուական պետությո՞ւն, թե՝ պրոլետարիատի դիկտատուրա, բուրժուական դեմոկրա՞տիա, թե՝ սոցիալիստական—այս և մյուս բոլոր կարևոր հարցերի նկատմամբ կարելի է միայն կանգնել այս կամ այն կողմը. միջին վիճակ չկա։ Կոմունիստների խաղաղ գոյակցության սկզբունքն առաջ քաշելիս բուրժուազիայից չեն պահանջում, որ նա այս կամ այն իդեոլոգիական հարցերում ինքն իրեն դավաճանի։ Բայց նրանք վճռականապես մերժում են ամեն մի փորձ, որը կտիպի իրենց դավաճանել իրենց գաղափարներին և սկզբունքներին։

Հետևողական, սկզբունքային ու վճռական իդեոլոգիական պայքարը սոցիալիստական լագերի երկրներում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման կարևոր պայմաններից մեկն է։ Իսկ խաղաղ գոյակցության քաղաքականությունը կոմունիստները նրա համար չեն առաջարկում, որ ցանկանում են արգելակել այդ շինարարությունը, այլ՝ ամենից առաջ հենց նրա համար, որ ցանկանում են է՛լ ավելի հաջողակ դարձնել այն։

«Կոմունիստ» ամսագիր № 16, 1959

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՀԵՐՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՒ ՊԱՅՔԱՐԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ

(«Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմություն» նոր դասագրքի հայերեն հրատարակության առթիվ)

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-Լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի դիրեկտոր

1

Աշխատանքի ու պայքարի մեծ, սխրանքներով լի ուղի է անցել Սովետական Միության Կոմունիստական պարտիան՝ մեծ Լենինի ստեղծած ու կոփած պարտիան։ Լենինյան պարտիայի ուղին՝ դա մեր երկրի բանվոր դասակարգի և աշխատավոր մասսաների հերոսական պայքարի, ծանր փորձությունների և համաշխարհային-պատմական հաղթանակների, սոցիալիզմի հաղթանակների ավելի քան կեսդարյա ուղին է։ Կոմունիստական պարտիայի ամբողջ բազմահարուստ պատմությունը, որն անխզելիորեն կապված է նրա մեծ կազմակերպչի և առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի անվան հետ, մարքսիզմ-լենինիզմն է գործողության մեջ։ Հանճարեղ Լենինի և նրա հավատարիմ աշակերտների ու զինակիցների ղեկավարությամբ մարտերում կոփված Սովետական Միության Կոմունիստական պարտիան հանդիսանում է կոմունիզմ կառուցող սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող մեծ ուժը, սովետական ժողովրդի ուղեցույց աստղը, նրա ավանգարդը։ Բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության ազատագրման գործի, սոցիալիզմի հաղթանակի համար մղած անձնվեր պայքարով, հասարակության ռևոլյուցիոն վերափոխման ուղղությամբ իր անխոնջ գործունեությամբ Սովետական Միության Կոմունիստական պարտիան վաստակել է սովետական բազմազգ և բազմամիլիոն ժողովրդի անսահման սերն ու վստահությունը։

Մեր Հայրենիքի աշխատավորները անցած ամբողջ պատմական փորձով համոզվել են, որ Կոմունիստական պարտիան հանդիսանում է իրենց արմատական շահերն արտահայտող միակ իսկական ժողովրդական պարտիան։ Հայտնի է, որ մեր պարտիայի գործունեությունը բաժանվում է երկու գլխավոր ժամանակաշրջանի։ Առաջին ժամանակաշրջանն ընդգրկում է ցարական ինքնակալության և կապիտալիստական կարգի տապալման, պրոլետարիատի

դիկտատուրայի հաստատման համար պարտիայի մղած պայքարը։ Երկրորդ ժամանակաշրջանը՝ պարտիան իշխանության ղեկի մոտ, պարտիան Սովետական Միությունում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։ Այդ ժամանակաշրջանների պատմության սեղմ շարադրանքին է նվիրված «Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմություն» նոր դասագիրքը [1], որը Հայպետհրատի հրատարակությամբ մասսայական տիրաժով լույս է տեսել հայերեն [2]։

«Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմություն» գիրքը բացվում է համառոտ առաջաբանով, որի մեջ ընդհանուր գծերով տրված է Կոմունիստական պարտիայի անցած հերոսական ուղու գնահատականը, ցույց է տրված պարտիայի պատմության ու տեսության ուսումնասիրության նշանակությունը մեր կադրերի, սովետական ամբողջ ժողովրդի համար։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան ղեկավարվել ու ղեկավարվում է մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն տեսությամբ։ Պարտիան, հավատարիմ մարքսիզմ-լենինիզմի վեհ դրոշին, կուտակել է պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակի համար մղված պայքարի մեծ ու բազմազան փորձ։ Լենինյան պարտիայի գործունեության շնորհիվ ստեղծվեց պատմության մեջ առաջին սոցիալիստական հասարակարգը և դրա հետ միասին նաև սոցիալիզմի կառուցման՝ փորձով ստուգված գիտությունը։ Նոր դասագրքի առաջաբանում և ապա մնացած բաժիններում էջ առ էջ ցույց է տրված Կոմունիստական պարտիայի հերոսական պայքարի էպոպեան իր պատմության զանազան էտապներում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, հավատարիմ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, հետևողականորեն կատարել է իր պարտականությունները մյուս երկրների բանվոր դասակարգի և ժողովուրդների ազատագրական շարժման նկատմամբ, արել է հնարավոր ամեն ինչ սոցիալիզմի գաղափարների հաղթանակի համար։ Ահա ինչու Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմությունն ամբողջ աշխարհի երկրների կոմունիստների մեջ օրինական հպարտության զգացում է առաջ բերում իրենց եղբայրական հաղթական պարտիայի համար, ամրապնդում է ամբողջ աշխարհի աշխատավորների հավատը սոցիալիզմի հաղթանակի նկատմամբ։

---

[1] ՍՄԿՊ պատմության նոր դասագիրքը հրատարակության է պատրաստել հեղինակային կոլեկտիվը հետևյալ կազմով՝ ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի թղթակից-անդամ Բ. Ն. Պոնոմարյով (ղեկավար), պատմական գիտությունների թեկնածու Վ. Ս. Զայցև, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Վ. Մ. Խվոստով, պատմական գիտությունների դոկտոր Ա. Պ. Կուչկին, ակադեմիկոս Ի. Ի. Մինց, պատմական գիտությունների դոկտոր Ն. Ի. Շատագին, տնտեսական գիտությունների թեկնածու Լ. Ա. Սլեպով, փիլիսոփայական գիտությունների թեկնածու Ա. Ի. Սոբոլև, պրոֆեսոր Ի. Մ. Վոլկով, պատմական գիտությունների թեկնածու Մ. Ս. Վոլին, պատմական գիտությունների թեկնածու Ա. Ա. Տիմոֆեևսկի։

[2] Հայերեն թարգմանությունը կատարված է 1959 թ. օգոստոսի 5-ի ռուսերեն հրատարակությունից։ Այն խմբագրել են՝ Մ. Հ. Իգոնցը, Գ. Ա. Հայրյանը, Խ. Հ. Բարսեղյանը, Կ. Ս. Վարդանյանը, թարգմանել են՝ Վ. Գ. Ավագյանը (գլուխ I—IV), Ռ. Հ. Գուլբանյանը (V—VIII), Հ. Հ. Մարտիրոսյանը (IX—XI և XVIII), Հ. Գ. Թուրշյանը (XII, XVI—XVII, եզրափակում), Վ. Ա. Փոթեյանը (XIII—XV)։

Հայերեն թարգմանությունը բնագրի հետ համեմատել են Տ. Ա. Դադյանը և Գ. Ա. Մարտիրոսյանը։



## 2

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության գիտական մշակման գործում անգնահատելի դեր խաղացին պարտիայի XX և XXI համագումարները, որոնք որոշումներ ընդունեցին արմատապես բարելավելու գաղափարական աշխատանքի դրվածքը, վճռական պայքար ծավալելու դոգմատիզմի, տիրացուականության դեմ, գիտականորեն վեր հանելով մեր պարտիայի պայքարի ու հաղթանակների համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող փորձը՝ ստեղծագործաբար մշակելու նրա պատմությունը։ Պարտիայի XX համագումարին տրված ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասված է. «Անհրաժեշտ է ստեղծել պարտիայի պատմության մատչելի, պատմական փաստերի վրա հենվող, մարքսիստական դասագիրք, որտեղ գիտականորեն ընդհանրացվի կոմունիզմի համար պարտիայի մղած պայքարի համաշխարհային-պատմական փորձը և որտեղ շարադրանքը հասցվի մինչև մեր օրերը» (Ն. Ս. Խրուշչով, «Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին», Հայպետհրատ, էջ 177, 1959 թ.)։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության նոր դասագիրքը գրված է համագումարի որոշումների լույսի տակ, Վ. Ի. Լենինի հանճարեղ աշխատությունների, ՍՄԿՊ համագումարների, կոնֆերանսների, Կենտկոմի պլենումների որոշումների և այլ կարևորագույն փաստաթղթերի ու նյութերի հետազոտման, պատմական գիտության վերջին նվաճումների, պատմա-ռևոլյուցիոն գրականության խոր ուսումնասիրման ու վերլուծման հիման վրա։ «Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմություն» նոր դասագրքի հրատարակությունը կարևոր իրադարձություն է պարտիայի գաղափարական կյանքում, նրա բազմահարուստ փորձի գիտական լուսաբանման բնագավառում։ Հեղինակային կոլեկտիվը քրտնաջան աշխատանք է կատարել լենինյան գրական, տեսական հարուստ ժառանգության ուսումնասիրման, պարտիայի պրակտիկ գործունեության ընդհանրացման ուղղությամբ։ Գրախոսվող աշխատությունը գրված է լենինյան պարտիականության դիրքերից։

Հայտնի է, որ 1938 թվականից սկսած մեր պարտիայի պատմության ընդհանուր ճանաչում գտած ձեռնարկն էր «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց»-ը, որն իր նախորդ ժամանակաշրջանի նմանօրինակ ձեռնարկների և աշխատությունների համեմատությամբ որոշակի առաջընթաց քայլ էր ՍՄԿՊ պատմության գիտական մշակման ու հետազոտման ճանապարհին և խոշոր դեր խաղաց պարտիայի գաղափարական կյանքում։ Բայց «Համառոտ դասընթաց»-ը զերծ չէր թերություններից և սխալներից։ Հենց այն փաստը, որ մեր պարտիայի պատմության շարադրանքը նրանում հասցված էր մինչև 1937 թվականը, պահանջում էր ստեղծել նոր ձեռնարկ։ Էլ չենք խոսում անհատի պաշտամունքի և այլ հարցերի հետ կապված սխալների մասին։ «ՍՄԿՊ պատմություն» նոր դասագրքի հեղինակները, հաշվի առնելով «Համառոտ դասընթաց»-ի դրական կողմերը և այդ գրքի վերաբերյալ եղած քննադատական դիտողությունները, ամենից առաջ վերանայել են այնտեղ տրված պարտիայի պատմության պերիոդիզացիան և ճշտել այն։ Նոր դասագիրքը բաղկացած է 18 գլխից և «Եզրափակում» բաժնից։ Պարտիայի մինչև

1923 թվականի պատմության պերիոդիզացիայի հիմքում դրված են Վ. Ի. Լենինի ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատության և մյուս երկերում զարգացրած դրույթները: ՍՄԿՊ հետագա տարիների պատմության պերիոդիզացիան համապատասխանում է ՍՍՌՄ-ում սոցիալիստական հասարակարգի կառուցման և կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը բնակոխելու գլխավոր էտապներին:

Հայտնի է, որ «Համառոտ դասընթաց»-ում 1883—1904 թթ. պատմությունը շարադրված էր մի գլխով: Նոր ձեռնարկում այն տրված է երկու գլխով՝ 1. «Բանվորական շարժման սկիզբը և մարքսիզմի տարածումը Ռուսաստանում (1883—1894 թվականներ)» և 2. «Պայքար Ռուսաստանում մարքսիստական պարտիայի ստեղծման համար: ՌՍԴԲՊ կազմվելը: Բոլշևիզմի առաջացումը (1894—1904 թվականներ)»: Նոր դասագրքի I և II գլուխներում փաստական հարուստ նյութերի հիման վրա գիտական բարեխղճությամբ ցույց է տրված բանվորական շարժման սկիզբը և մարքսիզմի տարածումը Ռուսաստանում, Վ. Ի. Լենինի մղած պայքարը Ռուսաստանում մարքսիստական նոր տիպի պարտիայի ստեղծման համար: «Աշխատանքի ազատագրություն» խմբի աչքի ընկնող գործունեության շնորհիվ, ասված է նոր դասագրքում, մարքսիզմը դարձավ ռուսական հասարակական և ռևոլյուցիոն մտքի հոսանք:

Ռուսական առաջին մարքսիստներից է Կոմունիստական պարտիայի մեծ հիմնադիր Վ. Ի. Լենինը: Վ. Ի. Լենինը պատմության մեջ մտավ որպես գիտական կոմունիզմի հանճարեղ տեսաբան, մասսաների ականավոր կազմակերպիչ, գիտության մեծ կորիֆեյ, պրոլետարական ռևոլյուցիայի անզուգական ստրատեգ: Ստեղծագործաբար զարգացնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ռևոլյուցիոն ուսմունքը, Վ. Ի. Լենինը այն հարստացրեց նոր դրույթներով: Վ. Ի. Լենինի գործունեությունը 90—ական թվականներին, նրա առաջ քաշած գաղափարները, նրա անհաշտ պայքարը միջազգային ռևիզիոնիզմի և մարքսիստական տեսության բոլոր աղճատումների դեմ, պարտիական կադրերին և բանվորական մասսաներին ռևոլյուցիոն ոգով դաստիարակելը— այս բոլորը դրեց մարքսիզմի զարգացման նոր, լենինյան էտապի սկիզբը:

Ընդհատակի դաժան պայմաններում, բազմաթիվ թշնամիների դեմ մղվող պայքարում մեծ Լենինի գլխավորությամբ կոփվեցին անձնվեր և պրոլետարիատի գործին նվիրված, սկզբունքայնորեն կայուն և կարգապահ, օպորտունիստական ամեն տեսակ աղտեղության նկատմամբ անհաշտ, մասսաների հետ անխզելիորեն կապված պրոֆեսիոնալ-ռևոլյուցիոներների կադրեր: «Այդպիսի պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներներ էին,— ասված է նոր դասագրքում,— Ի. Վ. Բաբուշկինը, Ն. Է. Բաումանը, Ռ. Ս. Զեմլյաչկան, Մ. Մ. Լիտվինովը, Մ. Ի. Կալինինը, Ն. Կ. Կրուպսկայան, Ս. Գ. Շահումյանը, Գ. Ի. Պետրովսկին, Օ. Ա. Պյատնիցկին, Յա. Մ. Սվերդլովը, Ի. Վ. Ստալինը, Ե. Դ. Ստասովան և շատ ուրիշ իսկրայականներ» (էջ 67):

Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայությունը ռուսական պրոլետարիատի հանդեպ ամենից առաջ այն էր, որ նա ստեղծեց Կոմունիստական պարտիան, նրան զինեց ռևոլյուցիոն տեսությամբ և պայքարի հստակ ծրագրով: XX դարի սկզբին Վ. Ի. Լենինը պրոլետարական անվեհեր ռևոլյուցիոներին հատուկ խիզախությամբ հայտարարեց. «տվե՛ք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն—և մենք շո՛ւռ կտանք Ռուսաստանը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 5, էջ 622):



Պարտիայի պատմության նոր դասագրքում հետևողականորեն ցույց է տրված անմահ Լենինի և նրա ստեղծած «Իսկրա»-ի տիտանական պայքարը մարքսիստական նոր տիպի պարտիայի ստեղծման համար: Նոր տիպի պարտիայի, նրա բնույթի, բանվորական շարժման մեջ նրա դերի, նրա գործունեության հիմնական սկզբունքների վերաբերյալ իր հայացքները Վ. Ի. Լենինը շարադրել է «Ի՞նչ անել» նշանավոր գրքում:

Նոր, բազմաթիվ փաստեր են բերված ՌՍԴԲՊ II համագումարի մասին. ընդգծված է, որ ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի, բոլշևիկների պարտիայի ստեղծումը ՌՍԴԲՊ II համագումարի հիմնական արդյունքն է, որ «Բոլշևիզմը, որպես քաղաքական մտքի հոսանք և որպես քաղաքական պարտիա, գոյություն ունի 1903 թվականից» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 9):

Առանց հուզմունքի չի կարելի կարդալ ռուսական առաջին ռևոլյուցիային՝ իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական ռևոլյուցիային նվիրված էջերը: «Արյունը, բռնությունն ու մահը կրնկակոխ հետևել են մեզ: Բայց դա ոչինչ: Ապագան պատկանում է բանվոր դասակարգին»—բանվոր դասակարգի ցալիք հաղթանակի նկատմամբ անսահման հավատով տոգորված գրել են Մոսկվայի 1905 թվականի դեկտեմբերյան զինված ապստամբության մասնակիցները Պրեսնյայի մարտական դրուժինայի շտաբի վերջին կոչում:

Ելնելով պարտիայի պատմության լենինյան պերիոդիզացիայից, ճշտված են պարտիայի պատմության ռեակցիայի և ռևոլյուցիոն շարժման նոր վերելքի ժամանակաշրջանների ժամանակագրական սահմանները: Ռեակցիայի ժամանակաշրջանը, որ «Համառոտ դասընթաց»-ում ընդգրկում էր 1908—1912 թվականները, նոր դասագրքում ընդգրկում է 1907—1910 թթ., իսկ ռևոլյուցիոն նոր վերելքի ժամանակաշրջանը՝ 1912—1914 թթ. փոխարեն 1910—1914 թվականները: Ուշագրավ էջեր են նվիրված ՌՍԴԲՊ Համառուսաստանյան VI կոնֆերենցիային, որը կայացավ 1912 թվականի հունվարին Պրագայում և կարևոր դեր խաղաց բոլշևիկների պարտիայի՝ նոր տիպի պարտիայի կառուցման գործում: Նոր դասագրքի հեղինակները ուղղել են «Համառոտ դասընթաց»—ում թույլ տրված այն սխալը, թե բոլշևիկների պարտիայի սկիզբը դրվել է միայն 1912 թվականի Պրագայի կոնֆերենցիայում: Կոնֆերենցիան հանրագումարի բերեց մենշևիկների դեմ բոլշևիկների պայքարի մի ամբողջ պատմական ժամանակաշրջանի արդյունքները, ամրապնդեց բոլշևիկների հաղթանակը, նրանց ձեռքում պահեց ՌՍԴԲՊ դրոշը: Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայում և նրա ղեկավարության մեջ՝ Կենտրոնական Կոմիտեում, վերացվեց ֆրակցիոնությունը, մի հանգամանք, որ բացառիկ նշանակություն ունեցավ պարտիայի զարգացման և ռևոլյուցիոն պայքարում նրա դերի ուժեղացման համար:

Գնահատելով Պրագայի կոնֆերենցիայի արդյունքները, Վ. Ի. Լենինը 1912 թվականի սկզբներին Մ. Գորկուն գրել է. «Վերջապես հաջողվեց—հակառակ լիկվիդատորական սրիկաների— վերածնել պարտիան և նրա Կենտրոնական Կոմիտեն: Հուսով եմ, Դուք այս առթիվ կուրախանաք մեզ հետ միասին» (Երկեր, հ. 35, էջ 1):

Պրագայի կոնֆերենցիան, որ փաստորեն համագումարի դեր խաղաց,

կարևոր տեղ է գրավում ո՛չ միայն մեր պարտիայի պատմության, այլ միջազգային բանվորական շարժման պատմության մեջ։

Նոր դասագրքում մի հատուկ գլխով (գլ. VIII) առանձնացված և տրված է Հոկտեմբերից հետո պարտիայի մղած պայքարը սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման և սովետական կարգերի ամրապնդման համար (1917 թ. հոկտեմբեր— 1918 թվական)։ Առաջ այդ պայքարը տրվում էր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և իրագործման ժամանակաշրջանին նվիրված բաժնում (1917 թ. ապրիլ— 1918 թ.)։ Նոր պերիոդիզացիան հնարավորություն է տալիս ավելի հանգամանորեն լուսաբանելու Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի պատմությունը, նրա ներքին և միջազգային նշանակությունը, բացահայտելու Կոմունիստական պարտիայի կազմակերպական-քաղաքական գործունեությունը, մասսաների ստեղծագործական աշխատանքը նոր, Սովետական պետություն ստեղծելու գործում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը մարքսիզմ-լենինիզմի փայլուն տրիումֆն է։ Առաջին երկիրը, որ ճեղքեց իմպերիալիզմի շղթան, մեր երկիրն էր։ Մենք շատ ծանր զոհեր տվեցինք այդ շղթան խորտակելու համար մղվող պայքարում, ասել է Վ. Ի. Լենինը, բայց մենք այն խորտակեցինք, մենք ամբողջ աշխարհի առաջ բարձրացրինք իմպերիալիզմի լիակատար տապալման համար մղվող պայքարի դրոշը։

Ընթերցողի առջև վառ կերպով պատկերվում է Կոմունիստական պարտիայի և նրա մեծահանճար առաջնորդ Վ. Ի. Լենինի խիզախ ու անվեհեր գործունեությունը Մեծ Հոկտեմբերի օրերին։ Տրված է ՍՄԿՊ դերը կոմունիստական III ինտերնացիոնալի հիմնադրման գործում, ավելի լիակատար է լուսաբանված պարտիայի գործունեությունը օտարերկրյա ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմների տարիներին։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման շնորհիվ արմատական փոփոխություններ կատարվեցին Ռուսաստանի բնակչության բոլոր դասակարգերի և խավերի դրության մեջ։ Պրոլետարիատը դարձավ իշխող դասակարգ, իսկ Կոմունիստական պարտիան՝ կառավարող պարտիա։

Ինչպես նախորդ, այնպես էլ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի տարեգրությանը նվիրված բաժիններում ցույց է տրված, որ Ռուսաստանի ազգային շրջանների աշխատավորների ռևոլյուցիոն պայքարը ղեկավարում էին բոլշևիկյան կազմակերպությունները։ «Բոլշևիկների պարտիան,— ասված է նոր դասագրքում,— իր մեջ էր առել Ռուսաստանի բոլոր ազգությունների աշխատավոր դասակարգերի լավագույն տարրերը, նրանցից դաստիարակել էր սոցիալիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի գործին նվիրված այնպիսի ռևոլյուցիոներներ, ինչպիսիք էին՝ Ֆ. Ա. Սերգեևը (Արտյոմը), Գ. Ի. Պետրովսկին, Վ. Յա. Չուբարը, Ա. Գ. Շլիխտերը—Ուկրաինա, Մ. Ազիզբեկովը—Ադրբեջան, Ա. Ֆ. Մյասնիկովը (Մյասնիկյան), Ս. Գ. Շահումյանը—Հայաստան, Պ. Ա. Ջափարիձեն, Ֆ. Ի. Մախարաձեն, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Մ. Գ. Ցխակայան—Վրաստան, Պ. Ի. Ստուչկան—Լատվիա, Վ. Ս. Միցկյավիչյուս-Կապսուկասը (Միցկևիչ-Կապսուկասը)— Լիտվա, Ա. Տ. Ջանգիլդինը—Ղազախստան, Վ. Է. Կինգիսեպը—Էստոնիա, Ու. Դ. Բույնակսկին—Դաղստան և շատ ուրիշներ։ Դրանք պարտիայի՝ պայքարում կոփ-



-ված և աշխատավորների խոր վստահությունը վայելող գործիչներ էին» (էջ 310—311)։

Նոր դասագրքում պատշաճ լուսաբանում է գտել հայ ժողովրդի ականավոր զավակներ, հավատարիմ լենինյաններ՝ Ս. Գ. Շահումյանի, Բ. Մ. Կնունյանցի, Ս. Ս. Սպանդարյանի, Ա. Ֆ. Մյասնիկյանի, Ա. Ի. Միկոյանի, Սովետական Միության մարշալ Ի. Խ. Բաղրամյանի գործունեությունը։

Որոշ փոփոխություններ կան Կոմպարտիայի երեսնական թվականների պատմության ժամանակագրական շրջանակների շարադրանքի մեջ։ «Համառոտ դասընթաց»-ի XI գլխի («Բոլշևիկների պարտիան գյուղատնտեսության կոլեկտիվացման համար մղվող պայքարում 1930—1934 թթ.») և XII գլխի («Բոլշևիկների պարտիան սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու համար մղվող պայքարում և նոր Կոնստիտուցիայի կիրառումը 1935—1937 թթ.») փոխարեն նոր դասագրքում տրվում են հետևյալ գլուխները. գլուխ XII «Պարտիան ամբողջ ճակատով սոցիալիզմի հարձակման ժամանակաշրջանում։ Կոլտնտեսային կարգի ստեղծումը (1929—1932 թթ.)» և գլուխ XIII «Պարտիայի պայքարը ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցումն ավարտելու համար։ Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում (1933—1937 թթ.)»։ Այս փոփոխությունները կատարելիս հաշվի են առնված այն իրադարձությունները, որ տեղի են ունեցել մեր երկրի ներքին կյանքում, այն է՝ առաջին հնգամյակի հաջող կատարման շնորհիվ հզոր ինդուստրիայի ստեղծումը և գյուղում կոլտնտեսային կարգի հաստատումը, իսկ մյուս կողմից՝ միջազգային կյանքում տեղի ունեցած լուրջ փոփոխությունները՝ ֆաշիզմի հաղթանակը Գերմանիայում (1933 թ.) և ՍՍՌՄ-ի նկատմամբ իմպերիալիստական նոր ագրեսիայի սպառնալիքի ուժեղացումը։

ՍՄԿՊ պատմության նոր դասագիրքը, ինչպես նշեցինք, պարտիայի պատմության շարադրանքը հասցնում է մինչև մեր օրերը։

Նոր դասագրքի գրեթե երկու երրորդը նվիրված է հետհոկտեմբերյան ժամանակաշրջանի պատմության լուսաբանմանը։

Սոցիալիզմի դարաշրջանի պատմությանը նվիրված էջերում վառ կերպով պատկերված է Կոմունիստական պարտիայի բազմաբովանդակ գործունեությունը մեծ Լենինի պատգամների կենսագործման՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման, երկրի սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման, կուլտուրական ռևոլյուցիայի իրականացման և մյուս բոլոր բնագավառներում։

Հետադարձ հայացք ձգելով Կոմունիստական պարտիայի անցած ուղու վրա, ուսումնասիրելով նոր դասագիրքը, օրինական հպարտությամբ են լցվում մեր սրտերը։ Իր իմաստուն առաջնորդի՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական հերոս ժողովուրդը անթիվ հաղթանակներ է ձեռք բերել, Հայրենական Մեծ պատերազմի տարիներին թշնամիների դեմ մղած համառ պայքարում պաշտպանելով Մեծ Հոկտեմբերի նվաճումները, ամենաառաջավոր հասարակական ու պետական կարգը, ՍՍՌՄ ազատությունն ու անկախությունը, ամրացնելով մեր Հայրենիքի պետական սահմաններն ու նրա անվտանգությունը։ Սովետական ժողովուրդն իր անձնազոհ պայքարով Եվրոպայի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկացումից, գերմանական իմպերիալիզմի ճնշումից։ Կարմիր Բանակը, հենվելով Եվրոպայի ժողովուրդների օգնության վրա, գերմանա-ֆաշիստական զավթիչներին դուրս շպրտեց

Լեհաստանից, Չեխոսլովակիայից, Հարավսլավիայից, Բուլղարիայից, Ռումինիայից, Հունգարիայից, Ավստրիայից, Դանիայից, Հյուսիսային Նորվեգիայից, պատվով կատարելով իր ազատագրական մեծ միսիան։

Սովետական ժողովուրդը իր հարազատ պարտիայի ղեկավարությամբ երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում օգնեց Հարավ-արևելյան ու Կենտրոնական Եվրոպայի, ինչպես նաև Չինաստանի, Կորեայի, Վիետնամի ժողովուրդներին՝ գերմանական ու ճապոնական օկուպացիայի դեմ նրանց մղած պայքարում, իսկ հետագայում օգնություն ցույց տվեց նրանց՝ այդ երկրներում ժողովրդա-դեմոկրատական կարգի ստեղծման ու ամրապնդման համար մղած պայքարում։

Հայրենական Մեծ պատերազմի հերոսական պատմությանը նվիրված էջերը, որ գրված են փաստական հարուստ նյութի ուսումնասիրության և վերլուծության հիման վրա, անհուն հայրենասիրությամբ են լցնում սովետական մարդկանց սրտերը։

Գրախոսվող դասագրքում շատ էջեր են նվիրված Կոմունիստական պարտիայի հետպատերազմյան ժամանակաշրջանի պատմությանը, հատկապես 1953 թվականից հետո ընկած ժամանակաշրջանում պարտիայի և նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի ծավալած բեղմնավոր աշխատանքներին։ Բազմաթիվ էջեր են նվիրված Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի հանրագումարին։

1953—1958 թվականները նոր, նշանավոր էտապ հանդիսացան Կոմունիստական պարտիայի կյանքում, սոցիալիստական Հայրենիքի հզորությունն ամրապնդելու, կոմունիստական հասարակարգ կառուցելու, ամբողջ աշխարհում խաղաղություն պահպանելու համար նրա մղած պայքարում։ Անչափ մեծ է ՍՄԿՊ XX համագումարի դերն ու նշանակությունը ինչպես մեր պարտիայի, այնպես էլ միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ։ «Քաղաքական և տնտեսական միջոցառումների նշանակությամբ,— ասված է նոր դասագրքում,—պարտիայի ստեղծարար գործունեության թափով և մասսաների հասարակական ակտիվության մակարդակով դա (1953—1958 թթ.—Խ. Բ.) Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության կարևորագույն ժամանակաշրջաններից մեկն է» (էջ 852)։

Պարտիայի պատմության նոր դասագրքում ցույց է տրված, որ սովետական հասարակությունն իր ներքին զարգացման մեջ 1953—1958 թվականներին թևակոխեց այնպիսի մի ժամանակաշրջան, երբ կոմունիստական շինարարության խնդիրները դարձան պարտիայի և ժողովրդի անմիջական գործնական խնդիրներ։

Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ սովետական ստեղծագործ ժողովուրդը քաղաքական և տնտեսական խոշոր միջոցառումներ իրականացրեց սովետական հասարակական ու պետական կարգն էլ ավելի ամրապնդելու, արդյունաբերությունը, ամենից առաջ ծանր ինդուստրիան, հուժկու թափով զարգացնելու, գյուղատնտեսության շեշտակի վերելքի և աշխատավորների նյութական բարեկեցությունը բարձրացնելու ուղղությամբ։ ՍՄԿՊ XX համագումարը, որ նշանավոր իրադարձություն հանդիսացավ սովետական ժողովրդի և միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ, տվեց համաշխարհային ասպարեզում եղած նորագույն երևույթների խոր վերլուծությունը և գիտական ընդհանրացումը, միջազգային զարգացման ար-



մատական պրոբլեմների վերաբերյալ առաջ քաշեց մի շարք դրույթներ, որոնք հարստացրին մարքսիզմ-լենինիզմը։ Համագումարը զարգացրեց հասարակական տարբեր սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը, հետևություն արեց ժամանակակից միջազգային պայմաններում պատերազմները կանխելու ռեալ հնարավորության մասին, ընդհանրացրեց համաշխարհային բանվորական և կոմունիստական շարժման փորձը, ՍՍՌՄ և ժողովրդական դեմոկրատիայի երկրների փորձը, զարգացրեց և խորացրեց լենինյան դրույթը տարբեր երկրների կողմից սոցիալիզմին անցնելու ձևերի բազմազանության և սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հնարավորության մասին։ Միանգամայն ճիշտ կերպով նշվում է, որ խաղաղ գոյակցությունը նշանակում է տարբեր սիստեմներ ունեցող երկրների մրցություն տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում։ Իդեոլոգիական բնագավառում նրանց միջև ծավալվում է լարված պայքար։

Համագումարը դիրեկտիվ տվեց՝ «հաստատակամորեն շարունակել պայքարը տնտեսական խաղաղ մրցության միջոցով լուծելու ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ պատմական կարճ ժամկետում հասնել և անցնել առավել զարգացած կապիտալիստական երկրներից» (էջ 797)։

Մի առանձին գլխում տրված են պարտիայի գործունեությունը ՍՍՌՄ-ը կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը թևակոխելու էտապում, պարտիայի XXI համագումարի պատմական նշանակությունը։ Համագումարը հանրագումարի բերելով մեր երկրում ձեռք բերված համաշխարհային-պատմական հաղթանակները՝ ընդգծեց, որ ՍՍՌՄ-ում սոցիալիզմը լիակատար և վերջնական հաղթանակ է տարել, որ սովետական ժողովուրդը մարտերում կոփված իր իմաստուն առաջնորդի՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ թևակոխել է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Համառոտ կերպով տրված է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի, ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագրի նշանակությունը։

Դասագրքում շարադրված են Կոմունիստական պարտիայի այն հոյակապ խնդիրները, որ ՍՄԿՊ XXI համագումարը առաջադրել է առաջիկա յոթնամյակում։

Պարտիայի XXI համագումարը Կոմունիստական պարտիայի, սովետական ժողովրդի և միջազգային բանվորական շարժման պատմության մեջ մտավ որպես մի նոր փառավոր էջ, որպես կոմունիզմ կառուցողների համագումար։ Գրքում լուսաբանված են Կոմունիստական պարտիայի լենինյան խաղաղասիրական քաղաքականությունը, ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու գործում ՍՍՌՄ-ի ձեռք բերած մեծ հաղթանակները, Սովետական Միության միջազգային հեղինակության բարձրացումը։

3

ՍՄԿՊ պատմության նոր դասագրքում ավելի հստակ ու հանգամանորեն է տրված ժողովուրդների մեծահանճար առաջնորդ Վ. Ի. Լենինի դերը Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծման գործում։ Վ. Ի. Լենինը Կոմունիստական պարտիայի մեծ կազմակերպիչն ու առաջնորդն

է։ Լենինի ուսմունքը՝ լենինիզմը, ռուսական և միջազգային կուլտուրայի մեծ նվաճումն է։ «Լենինիզմը,—ասված է նոր դասագրքում,—մարքսիզմի շարունակությունն ու զարգացումն է, իմպերիալիզմի ու պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանի, ՍՍՌՄ-ում սոցիալիստական ու կոմունիստական շինարարության, համաշխարհային սոցիալիստական սիստեմի ծագման ու զարգացման դարաշրջանի, մարդկային հասարակության՝ կապիտալիզմից կոմունիզմին անցնելու դարաշրջանի մարքսիզմը» (էջ 9)։ Լենինիզմը ինտերնացիոնալ ուսմունք է, որը հզոր լուսարձակի նման լուսավորում է աշխատավոր մարդկության ուղին։ Պարտիայի պատմության նոր դասագրքում հաջող է լուսաբանված Վ. Ի. Լենինի ռևոլյուցիոն գործունեությունը, տրված է նրա տեսական աշխատությունների բնութագրությունը, բացահայտված է նրանց նշանակությունը մարքսիզմի, գիտական կոմունիզմի զարգացման, Կոմունիստական պարտիայի տեսական-գաղափարական, կազմակերպական ու տակտիկական հիմունքների մշակման գործում։

Նոր դասագրքի առաջին տողից մինչև վերջին տողը շարադրված է պատմական, պարտիական փաստաթղթերի հիման վրա։ Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի իմաստուն ցուցումներով, աշխատանքի հիմքում դնելով պատմական մատերիալիզմի սկզբունքները, հեղինակային կոլեկտիվը նյութի շարադրման ընթացքում ելել է պատմական կոնկրետ իրադրությունից, և ոչ թե մեխանիկորեն կառչել առանձին օրինակներից։ Դեռևս 1917 թվականի հունվարին Վ. Ի. Լենինը «Վիճակագրությունը և սոցիոլոգիան» աշխատության մեջ նշել է, որ հասարակական երևույթների բնագավառում չկա ավելի տարածված և ավելի սնանկ պրիոմ, քան առանձին փաստիկներ դուրս կորզելը, օրինակների հետ խաղալը։ «Փաստերը,—ասել է Վ. Ի. Լենինը,—եթե դրանք վերցվեն իրենց ամբողջության, իրենց կապի մեջ,—ո՛չ միայն «համառ», այլև անվերապահորեն ապացուցիչ բան են։ Փաստիկները, եթե դրանք վերցվեն ամբողջից դուրս, կապից դուրս, եթե դրանք կցկտուր և կամայական են,—միայն խաղալիք են, կամ որևէ է՛լ ավելի վատ բան» (Երկեր, հ. 23, էջ 363)։

Գրքում ցույց է տրված Կոմունիստական պարտիայի լենինյան կորիզի ռևոլյուցիոն ակտիվ գործունեությունը տրոցկիստների, զինովևականների, աջ օպորտունիստների, ամեն տեսակի նացիոնալիստական խմբավորումների և մյուս կապիտուլյանտների դեմ մղած պայքարում, հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի, հանուն սոցիալիստական հասարակարգի կառուցման։ Հիշատակված են պարտիայի գծի համար մղվող պայքարում ակտիվ դեր խաղացած այնպիսի գործիչների ու աշխատողների անունները, ինչպիսիք են՝ Ա. Ա. Անդրեևը, Ա. Ա. Ժդանովը, Ն. Ս. Խրուշչովը, Մ. Ի. Կալինինը, Ս. Մ. Կիրովը, Ս. Վ. Կոսիորը, Վ. Վ. Կույբիշևը, Ֆ. Է. Ձերժինսկին, Ա. Ի. Միկոյանը, Ե. Մ. Յարոսլավսկին, Ն. Մ. Շվերնիկը, Գ. Ի. Պետրովսկին, Ի. Վ. Ստալինը, Կ. Ե. Վորոշիլովը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Մ. Վ. Ֆրունզեն և ուրիշներ։ Գրքում ցույց է տրված Ի. Վ. Ստալինի դերը Կոմունիստական պարտիայի, Սովետական պետության և միջազգային բանվորական շարժման պատմության մեջ, ընդգծված է, որ Ի. Վ. Ստալինը, գտնվելով պարտիայի Կենտկոմի Գլխավոր քարտուղարի պոստում, պարտիայի և Սովետական պետության մյուս ղեկավար գործիչների հետ միասին ակտիվորեն պայքարում էր լենինյան պատգամները կենսագործելու համար։ Նրա գործունեությունը կապված էր ՍՍՌՄ-ում սոցիալիստական մեծ վերափոխությունների իրականացման հետ։



Որպես ականավոր տեսաբան ու կազմակերպիչ, նա գլխավորում էր պայքարը տրոցկիստների, աջ օպորտունիստների, բուրժուական նացիոնալիստների դեմ, կապիտալիստական շրջանների դավերի դեմ։ Ի. Վ. Ստալինը խոշոր ծառայություններ է մատուցել ո՛չ միայն ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակն ապահովելու գործում, այլև համաշխարհային կոմունիստական և ազգային-ազատագրական շարժման մեջ։ Ի. Վ. Ստալինը օգտակար շատ բան է արել սովետական երկրի, ՍՄԿՊ-ի, ամբողջ միջազգային բանվորական շարժման համար։ Այդ ամենը, բնականաբար, մեծ հեղինակություն և ժողովրդականություն էր ստեղծել Ի. Վ. Ստալինի համար։ Միաժամանակ դասագրքում նշված են Ի. Վ. Ստալինի անձի պաշտամունքի հետ կապված սխալները, որոնք ամբողջ սրությամբ քննադատության ենթարկվեցին ՍՄԿՊ XX համագումարում և Կենտկոմի 1956 թվականի հունիսի 30-ի՝ «Անհատի պաշտամունքը և նրա հետևանքները հաղթահարելու մասին» որոշման մեջ։

Ի. Վ. Ստալինի անձի պաշտամունքի պարտիական քննադատության էությունն այդ պաշտամունքի վնասակար հետևանքի վերացումն էր և դրանով իսկ սոցիալիզմի դիրքերի ամրապնդումը, այլ ոչ թե պարտիայի ու երկրի կյանքում Ի. Վ. Ստալինի դրական դերի հախուռն բացասումը։ «Ընկեր Ստալինի գործունեության մեջ,—ասել է Ն. Ս. Խրուշչովը,—մենք տեսնում ենք երկու կողմ՝ դրական, որ մենք պաշտպանում ենք ու բարձր գնահատում, և բացասական, որը քննադատում, դատապարտում և մերժում ենք... Մեր պարտիան, մենք բոլորս դատապարտում ենք Ստալինին այն կոպիտ սխալների և խեղաթյուրումների համար, որոնք լուրջ վնաս հասցրին պարտիայի գործին, ժողովրդի գործին» («Պրավդա», 1958 թ. օգոստոսի 28)։

Պարտիան, հաղթահարելով անհատի պաշտամունքի հետևանքները, մեծ ասպարեզ բացեց աշխատավոր մասսաների ակտիվ գործունեության և ստեղծագործական նախաձեռնության համար, վերացրեց անհատի պաշտամունքի կաշկանդիչ ազդեցությունը իդեոլոգիայի բնագավառում, պաշտպանեց և անշեղորեն կենսագործեց ստեղծագործական մարքսիզմի գիծը, վերականգնեց և ամրապնդեց տեսական ու պրակտիկ գործունեության օրգանական միասնությունը։

Գրախոսվող աշխատության մեջ մեծ տեղ է տրված պարտիայի շարքերի միասնության և համախմբվածության համար մղված պայքարի լուսաբանությանը։ «Մեր խնդիրն է,—գրել է Վ. Ի. Լենինը,—պահպանել մեր պարտիայի ամրությունը, կայունությունն ու մաքրությունը։ Մենք պետք է աշխատենք պարտիայի անդամի կոչումն ու նշանակությունն ավելի, ավելի ու ավելի բարձրացնել» (Երկեր, հ. 6, էջ 642)։

Պարտիայի ուժը աշխատավոր մասսաների հետ ունեցած սերտ կապի մեջ է։ Իր զարգացման բոլոր էտապներում պարտիան մշակել և կիրառել է մարքս-լենինյան տեսության վրա հիմնված, բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության, երկրի բոլոր ազգերի շահերին, Հայրենիքի շահերին, Սովետական Միությունում կոմունիզմի հաղթանակի, միջազգային կոմունիզմի շահերին համապատասխանող քաղաքական գիծ։

Նոր դասագրքում հաջող է տրված պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակի համար մղած պայքարում և դիկտատուրայի պայմաններում Կոմունիստական պարտիայի կուտակած մեծ և բազմահարուստ փորձը, պարտիայի ներսում առաջացած հակալենինյան զանազան խմբավորումների՝ տրոցկիստ-

ների, «բանվորական օպոզիցիայի», «դեմոկրատական ցենտրալիզմի» խմբի, տրոցկիստական-զինովևական բլոկի, աջ օպորտունիստների, նացիոնալիստական և այլ խմբավորումների դեմ մղված երկարատև ու համառ պայքարը: Թշնամական բոլոր պարտիաների ու հակալենինյան խմբավորումների, ռեվիզիոնիստների դեմ տարած քաղաքական հաղթանակը և նրանց գաղափարական ջախջախումը սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի, ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման անհրաժեշտ պայմանն էին:

Գրքում բացահայտված է Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և Շեպիլովի հակապարտիական խմբի պառակտիչ վարքագիծը, ցույց է տրված Ն. Ս. Խրուշչովի, Կենտկոմի Նախագահության մյուս անդամների ու թեկնածուների, Կենտկոմի քարտուղարների, Կենտկոմի անդամների ակտիվ գործունեությունը հակապարտիական ֆրակցիոն խմբի մերկացման և ջախջախման գործում: Նշված է, որ պարտիան և սովետական ամբողջ ժողովուրդը միահամուռ կերպով հավանություն տվեցին Կենտկոմի 1957 թվականի Հունիսյան պլենումի որոշումներին, է՛լ ավելի սերտորեն համախմբվեցին լենինյան Կենտկոմի շուրջը՝ ՍՄԿՊ XX համագումարի որոշումները մինչև վերջ կենսագործելու համար:

Պարտիայի պատմության նոր դասագրքի առանձնահատկություններից մեկն այն է, որ նրանում համամասնություն է ստեղծված ընդհանուր պատմական և պարտիական-պատմական նյութի շարադրման միջև:

«ՍՄԿՊ պատմություն» նոր դասագիրքն ավարտվում է «Եզրափակում» բաժնով, որտեղ համառոտակի տրված է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի անցած ուղու, նրա աշխատանքի ու պայքարի գլխավոր հանրագումարը և թե ինչ է սովորեցնում ՍՄԿՊ պատմությունը:

***

Կոմունիստական պարտիան իսկական հայրենասերների պարտիա է, որը միշտ էլ հավատարիմ է պրոլետարական ինտերնացիոնալիզմին և հետևողականորեն ղեկավարվում է մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքով:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի՝ լենինյան պարտիայի պատմական հարուստ փորձը հանդիսանում է կոմունիստներին, սովետական ժողովրդին և աշխարհի պրոգրեսիվ մարդկությանը ռևոլյուցիոն տրադիցիաներով դաստիարակելու, մարքս-լենինյան տեսությամբ զինելու հզոր միջոց: ՍՄԿՊ պատմության բազմակողմանի ուսումնասիրությունը կոմունիստներին և անպարտիական մասսաներին օգնում է խորապես ըմբռնելու սոցիալիզմի համար մղված պայքարի փորձը, է՛լ ավելի է ամրապնդում մեր մարդկանց հավատը կոմունիզմի վերջնական հաղթանակի նկատմամբ: Կոմունիզմի գաղափարը անպարտելի և կենսահաստատ ուժ է դարձել:

Պարտիական, սովետական ակտիվը, բոլոր կոմունիստներն ու կոմերիտականները, մեր բանվորները, կոլտնտեսականները սիրով կուսումնասիրեն Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության նոր դասագիրքը, լենինյան պարտիայի անցած հերոսական ուղու պատմությունը:

---

# ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԻԴԵԱԼԻԶՄԻ ՊԱՅՔԱՐԸ ԲՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Ա. ՄԻՆԱՍՅԱՆ*

Փիլիսոփայության հիմնական հարցը լուծել են և այժմ էլ շարունակում են լուծել երկու տրամագծորեն հակառակ դիրքերից. համաձայն այդ լուծումների էլ փիլիսոփաները բաժանվում են երկու մեծ բանակի, երկու հիմնական ուղղության՝ մատերիալիզմի և իդեալիզմի: Բոլոր այն փիլիսոփաները, որոնք գտնում են, որ բնությունը, մատերիան, ֆիզիկականը, կեցությունն առաջնային է, իսկ ոգին, մտածողությունը, գիտակցությունը երկրորդային, հարում են մատերիալիզմի տարբեր դպրոցներին, իսկ բոլոր այն փիլիսոփաները, որոնք առաջին տեղը դնում են ոգին, գիտակցությունը, մտածողությունը և վերջիններից մակաբերում են իրական աշխարհը, մատերիան, կեցությունը, կազմում են իդեալիստների բանակը:

Գիտության տվյալների հիման վրա հաստատվում է, որ փիլիսոփայության հիմնական հարցի միակ ճիշտ և գիտական լուծումը տալիս է մատերիալիզմը: Ժամանակակից բնագիտության և, հատկապես, ֆիզիոլոգիայի նվաճումները հաստատում են, որ զգայությունն ու մտածողությունը կապված են բարձր ձևով կազմակերպված մատերիայի՝ ներվային սիստեմի և ուղեղի հետ, որ մտածողությունը նյութական, մարմնական օրգանի՝ ուղեղի արդյունքն է: Այդ դեպքում կարող է օրինական հարց ծագել, թե ինչո՞ւ հազարամյակներ շարունակ մատերիալիզմի հետ կողք-կողքի գոյություն ունի այդ հակագիտական, իդեալիստական փիլիսոփայությունը: Եթե իդեալիզմը ոչ մի ընդհանուր բան չունի գիտության հետ, ապա ինչո՞ւ նա տարբեր ձևերով դրսևորվում է բնագիտության առանձին ճյուղերում, չնայած նրան, որ ինչպես մատերիալիզմը, այնպես էլ բնագիտության նվաճումները ամբողջապես հերքում են այն: Այդ հարցերի պարզաբանման համար անհրաժեշտ է բացահայտել իդեալիզմի սոցիալական և իմացաբանական արմատները:

Իդեալիզմը որպես կեղծ, հակագիտական թեորիա, չէր կարող երկար ժամանակ գոյություն ունենալ, եթե հասարակության առանձին խավեր, առանձին դասակարգեր շահագրգռված չլինեին նրա պաշտպանության մեջ: Վ. Ի. Լենինը «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին» իր հոդվածում որոշակիորեն ընդգծում է այն կապը, որ կա ժամանակակից իդեալիստական փիլիսոփայական ուղղությունների և տիրապետող բուրժուազիայի դասակարգային շահերի միջև:

Բացի սոցիալական արմատից, իդեալիզմն ունի նաև իմացաբանական արմատ: Իդեալիզմի առաջացման հնարավորությունը կապված է իմացության բարդ և հակասական պրոցեսի հետ: Լենինն իր «Դիալեկտիկայի հարցի շուր-

ջը» ֆրագմենտում գրում է, որ «Մարդու իմացությունը ուղիղ գիծ չէ (...չի գնում ուղիղ գծով), այլ կոր գիծ, որ անվերջ մոտենում է շրջանների շարքին, սպիրալին։ Այդ կոր գծի ամեն մի հատվածը, բեկորը, կտորիկը կարող է փոխարկվել (միակողմանիորեն փոխարկվել) ինքնուրույն, ամբողջ, ուղիղ գծի, որը (եթե ծառերի հետևում չտեսնես անտառը) այն ժամանակ տանում է դեպի ճահիճ, դեպի տերտերականություն (որտեղ նրան ԱՄՐԱՊՆԴՈՒՄ է տիրապետող դասակարգերի դասակարգային շահը)։ Ուղղագծություն ու միակողմանիություն, փայտայնություն ու ոսկրացածություն, սուբյեկտիվիզմ և սուբյեկտիվ կուրություն, ահա իդեալիզմի իմացաբանական արմատները։ Իսկ տերտերականությունը (=փիլիսոփայական իդեալիզմ) իհարկե, ունի ԻՄԱՑԱԲԱՆԱԿԱՆ արմատներ, նա անհող չէ, նա անպտուղ ծաղիկ է անտարակույս, բայց անպտուղ ծաղիկ, որ բուսնում է մարդկային կենդանի, արգասավոր, ճշմարիտ, հզոր, ամենազոր, օբյեկտիվ, բացարձակ իմացության կենդանի ծառի վրա» (Լենին—Մարքս, Էնգելս, մարքսիզմ. էջ 387, 1950)։

Եթե դիալեկտիկական մատերիալիզմը տալիս է բնության իսկական գիտական պատկերը, առանց որևէ կողմնակի հավելումների, դրա համար էլ կարող է հզոր զենք հանդիսանալ բնագետների ձեռքին արտաքին աշխարհի ճանաչման և վերափոխման գործում, ապա իդեալիզմն ընդհակառակը, տալիս է իրականության կեղծ, ոչ ճիշտ պատկերը, որը խորթ է ու անհամատեղելի գիտության և գիտական ճանաչողության հետ։ Փիլիսոփայության մեջ հայտնի երկու հիմնական ուղղությունների՝ մատերիալիզմի և իդեալիզմի պայքարը բնագիտության մեջ որոշակիորեն ցույց է տալիս, որ թշնամական դասակարգերի պառակտված հասարակության մեջ անմտություն է խոսել անպարտիական գիտության մասին։

Քանի դեռ չի դրվում բնագիտության ձեռք բերած նվաճումների մեկնաբանության հարցը, այնպիսի տպավորություն է ստացվում, թե իբր իմաստ չունի խոսել գիտության պարտիականության մասին։ Սակայն այդ սխալ տեսակետին վերջ է տրվում, երբ որոշակիորեն առաջ է քաշվում գիտության նվաճումների մեկնաբանման հարցը։ Բնագիտության արդյունքների ընդհանրացման ժամանակ առաջին հերթին դրվում է այն հարցը, թե ինչ են իրենցից ներկայացնում բնագիտության կողմից բացահայտվող օրենքները, արդյոք դրանք արտացոլում են մարդուց դուրս գոյություն ունեցող օբյեկտիվ օրենքները, թե՞ հանդիսանում են լոկ մարդկային մտքի արդյունք, «սիմվոլներ», «պայմանական նշաններ», «աշխատանքային հիպոթեզներ» մտածված հարմարության համար։ Դրված հարցին կարող է լինել միայն երկու պատասխան. առաջին՝ գիտության կողմից բացահայտվող օրենքներն արտացոլում են մարդուց դուրս գոյություն ունեցող օբյեկտիվ աշխարհի փոփոխման ու զարգացման օրինաչափությունները, այսինքն՝ արտաքին աշխարհը և նրա զարգացման օրինաչափությունները առաջնային են, իսկ մարդու պատկերացումները նրանց մասին՝ ածանցական, երկրորդային։ Այս տեսակետը մատերիալիստական է և հաստատվում է բնագիտության կողմից կուտակված հարուստ փաստական նյութի օգնությամբ։ Երկրորդ, գիտության օրենքները հայտարարվում են մարդկային մտածողության արդյունք, «սիմվոլներ», «պայմանական նշաններ», «աշխատանքային հիպոթեզներ», որոնք մտածված են հարմարության համար։ Այս տեսակետը իդեալիստական է, որովհետև ժխտում է ոչ միայն գիտության օրենքների օբյեկտիվ բնույթը, այլև բացա-



սում է ամեն մի օբյեկտիվ ռեալության գոյություն մարդուց և նրա գիտակցությունից դուրս։

Վերը շարադրածից որոշակիորեն երևում է, որ բնագիտության նվաճումները կարելի է մեկնաբանել տրամագծորեն հակառակ՝ մատերիալիստական և իդեալիստական դիրքերից։ Այն հանգամանքը, թե այս կամ այն բնագետը և փիլիսոփան ո՛ր տեսակետից է մեկնաբանում բնագիտության նվաճումները, պայմանավորված է նրանով, թե ո՛ր դասակարգին է պատկանում այդ մտածողը, ի՛նչ աշխարհայացք է պաշտպանում նա։ Շատ ականավոր բուրժուական բնագետներ, որոնք իրենց կոնկրետ բնագիտական հետազոտությունների ասպարեզում տալիս են արժեքավոր նյութեր, պաշտպանում են տարերային մատերիալիստական տեսակետ, իսկ երբ անցնում են իմացաբանության բնագավառը, կանգնում են իդեալիստական տեսակետի վրա։ Այդ հանգամանքը բացատրվում է իմացաբանության պարտիականությամբ։

Վ. Ի. Լենինը գրում է, որ «Քիմիայի, պատմության, ֆիզիկայի մասնագիտական բնագավառներում ամենաարժեքավոր աշխատանքներ տալու ընդունակ այդ պրոֆեսորներից ՈՉ ՄԵԿԻ ՈՉ ՄԻ ԽՈՍՔԻՆ ՉԻ ԿԱՐԵԼԻ ՀԱՎԱՏԱԼ, հենց որ խոսք է բացվում փիլիսոփայության մասին։ Ինչո՞ւ։ Նույն այն պատճառով, ըստ որի փաստական, մասնագիտական հետազոտությունների բնագավառում ամենագնահատելի աշխատանքներ տալու ընդունակ՝ քաղաքատնտեսության ՈՉ ՄԻ պրոֆեսորի ՈՉ ՄԻ ԽՈՍՔԻՆ ՉԻ ԿԱՐԵԼԻ ՀԱՎԱՏԱԼ, հենց որ խոսք է բացվում քաղաքատնտեսության ընդհանուր թեորիայի մասին։ Որովհետև վերջինս նույնպիսի ՊԱՐՏԻԱԿԱՆ գիտություն է արդի հասարակության մեջ, ինչպես և ԳՆՈՍԵՈԼՈԳԻԱՆ։ Ընդհանուր առմամբ և ամբողջապես տնտեսագետ-պրոֆեսորները ոչ այլ ինչ են, բայց եթե կապիտալիստների դասակարգի գիտնական գործակատարները, իսկ փիլիսոփայության պրոֆեսորները—թեոլոգների գիտնական գործակատարները» (Երկեր, հ. 14, էջ 459—460)։

Բուրժուազիայի դասակարգային շահը բուրժուական փիլիսոփաներից և բնագետներից պահանջում է, որպեսզի վերջիններս իրենց փիլիսոփայությունն ու բնագիտության ձեռք բերած նվաճումներն օգտագործեն բուրժուազիայի դասակարգային տիրապետությունն ամրապնդելու համար։ Այդպիսի ամրապնդման միջոցներից մեկը հանդիսանում է կրոնը, դրա համար էլ բուրժուական մտածողները աշխատում են բոլոր միջոցներով հիմնավորել վերջինս, նրան տալ «գիտական» տեսք։

Իդեալիզմը, որը հազարամյակներ շարունակ պայքարում է մատերիալիզմի և գիտական ճանաչողության դեմ, պատմական պայմաններից և հանգամանքներից կախված փոխում է իր դրսևորման ձևերը և պայքարի եղանակները։ Կար ժամանակ, երբ իդեալիզմը բացահայտ պայքար էր մղում գիտության և գիտական ճանաչողության դեմ, իսկ այժմ, երբ աշխարհի բնակչության մոտ մեկ երրորդը մեկընդմիշտ ոտք է դրել սոցիալիզմի ուղին, երբ գիտական մարքսիստական փիլիսոփայությունը՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը լայն տարածում է գտել աշխարհում, երբ ժամանակակից գիտությունն իր հսկայական նվաճումներով իրականացնում է մարդկության դարավոր երազանքները, բնական է, որ այս նոր պայմաններում իդեալիզմը ոչ միայն բացահայտ կերպով հանդես չի գալիս գիտության դեմ, այլև աշխատում է վերջինիս նվաճումները օգտագործել իր արդարացի լինելն «ապացուցելու» համար։ Այլ կերպ ասած, այժմյան պայմաններում իդեա-

լիզմն իր գոյությունը պահպանելու համար շատ ավելի կարիք ունի «գիտական» տեսք ընդունելու, քան անցյալում։

Գիտության զարգացման բարդ և հակասական պրոցեսում հանդիպում են ժամանակավոր դժվարություններ։ Որոշ երևույթների և օրենքների բացատրություններ, որպես կանոն, մոտավոր, անցողիկ են լինում, երբեմն փորձեր են կատարվում նոր բացահայտված երևույթը, որը մինչև այդ անծանոթ է եղել մարդկային մտքին, տեղավորել մինչ այդ հայտնի օրենքների շրջանակներում։ Որոշ օրենքներ հաճախ փորձում են կիրառել իրենց գործողության շրջանակներից դուրս, գիտության բարդ պրոբլեմների լուծման համար առաջադրվում են բազմաթիվ հիպոթեզներ, որոնք հաճախակի հերթափոխում են իրար և այլն։ Այդ բոլորը հնարավոր է դարձնում գիտության առանձին ճյուղերում իդեալիզմի երևան գալը. այդ հնարավորությունն իրականության է վերածվում, մի կողմից, այն դեպքում, երբ բնագետները գիտական դիալեկտիկա չիմանալու պատճառով սահում են իդեալիզմի ճահիճը, իսկ, մյուս կողմից, այն դեպքում, երբ առանձին բուրժուական մտածողներ գիտակցորեն դիմում են տարբեր տեսակի սոփեստական պրիոմների, իրենց նպատակի համար օգտագործում են գիտության մեջ եղած ժամանակավոր դժվարությունները, սխալ ձևով են մեկնաբանում գիտության ձեռք բերած նվաճումները և այլն։

Բնագիտության նվաճումների իդեալիստական մեկնաբանությունն ավելի որոշակիորեն է դրսևորվում բնագիտության առանձին ճյուղերում, երբ այդ ճյուղերն ապրում են բուռն վերելք (խոսքը կապիտալիստական երկրների բնագիտության մասին է)։ Եվ իսկապես, 19-րդ դարի վերջին և 20-րդ դարի սկզբին բնագիտության ճյուղերից ֆիզիկան ապրեց բուռն վերելք։ Հայտնագործվեցին էլեկտրոնը, ռենտգենյան ճառագայթները, ռադիոակտիվության երևույթը, ռադիումը և այլն։ Այդ հայտնագործությունների շնորհիվ մարդկային միտքը թափանցեց մինչև այդ իրեն հայտնի մակրոաշխարհից, իրեն բոլորովին անծանոթ մի նոր աշխարհ՝ միկրոաշխարհը։ Պարզվեց, որ մակրոաշխարհի զարգացման օրենքները որակապես տարբերվում են միկրոաշխարհի զարգացման օրենքներից, իսկ այդ հանգամանքը որոշակիորեն ընդգծեց մակրոաշխարհի վերաբերյալ մեր ունեցած գիտելիքների հարաբերական բնույթը։

Ֆիզիկայի բնագավառում կատարված այդ բոլոր հայտնագործություններն է՛լ ավելի խորացրին մեր գիտելիքներն արտաքին աշխարհի մասին, ցույց տվեցին բնության զարգացման դիալեկտիկա-մատերիալիստական բնույթը։ Մինչդեռ, այդ նույն հայտնագործությունները բուրժուական երկրների որոշ ֆիզիկոսներ ու փիլիսոփաներ մեկնաբանելով կեղծ իմացաբանական դիրքերից, հանգում էին իդեալիզմի։ Բնագիտության, հատկապես ֆիզիկայի ձեռք բերած նվաճումների նման իդեալիստական մեկնաբանությունը հանգեցրեց ֆիզիկայի ճգնաժամին։

Վ. Ի. Լենինն իր «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատության մեջ բացահայտեց «ֆիզիկական» իդեալիզմի սոցիալական և իմացաբանական արմատները, ապացուցեց, որ նրա սոցիալական բազան իմպերիալիզմն է։

Դժվար չէ նկատել, որ «ֆիզիկական» իդեալիզմի առաջին իմացաբանական արմատը կապված է մաթեմատիկայի և նրա ուսումնասիրության օբյեկտի միջև եղած իրական կապի ոչ ճիշտ մեկնաբանման հետ։ Մաթեմատիկան ուսումնասիրում է արտաքին աշխարհի տարածական ձևերը և քանակական



հարաբերությունները, հետևապես մաթեմատիկայի օրենքներն ու հասկացությունները հանդիսանում են ոչ թե մաթեմատիկոսի մտքի ազատ ստեղծագործության արդյունք, ինչպես այն փորձում են ներկայացնել «ֆիզիկական» իդեալիստները, այլ արտաքին աշխարհի տարածական ձևերի և քանակական հարաբերությունների արտացոլումը։ Այդ նույն բանը վերաբերում է նաև ֆիզիկական օբյեկտներին, որոնք իրենց որակական տարբերությունների հետ միաժամանակ, բնութագրվում են նաև քանակական որոշակիությամբ։ Այդ օբյեկտների օրինաչափությունների արտահայտումը մաթեմատիկական հավասարումների օգնությամբ ապացուցում է, որ մարդկային միտքն այնքան է խորացել այդ օբյեկտների իմացության բնագավառում, որ նրանց հետ կատարվող քանակական փոփոխություններն արտահայտում է մաթեմատիկական ֆորմուլաների օգնությամբ։ Այստեղից պարզ է դառնում, որ ֆիզիկայի մաթեմատիզացիան ոչ թե ապացուցում է ֆիզիկական օբյեկտների ոչնչացումը, ինչպես փորձում են ապացուցել «ֆիզիկական» իդեալիզմի կողմնակիցները, այլ մարդկային մտքի խորացումն արտաքին աշխարհի իմացության բնագավառում։

Ֆիզիկական իդեալիզմի երկրորդ իմացաբանական արմատը «...դա ՌԵԼՅԱՏԻՎԻԶՄԻ, մեր գիտելության հարաբերականության սկզբունքն է,—ասում է Լենինը,—մի սկզբունք, որն առանձին ուժով փաթաթվում է ֆիզիկոսների վզին հին թեորիաների խիստ բեկման շրջանում և որը ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ ՉԳԻՏԵՆԱԼՈՒ ՊԱՐԱԳԱՅՈՒՄ անխուսափելիորեն տանում է դեպի իդեալիզմ» (Երկեր, հ. 14, էջ 412)։

Բացարձակ ու հարաբերական ճշմարտությունների հարաբերակցության ոչ ճիշտ մեկնաբանությունը հանգեցնում է ռելյատիվիզմի, երբ միակողմանիորեն ուռեցվում է մեր գիտելիքների հարաբերական կողմը, նրանից դուրս է նետվում օբյեկտիվ, բացարձակ ճշմարտության մասնիկը։ Այդպես էլ վարվում են «ֆիզիկական» իդեալիստները. նրանք այն կարծիքին են, թե որքանով որ ֆիզիկայի օրենքներն ու հասկացությունները հարաբերական են, ուրեմն նրանք իրենց մեջ չեն պարունակում բացարձակ ճշմարտության մասնիկ, այլ հանդիսանում են «սիմվոլներ», «պայմանական նշաններ», «աշխատանքային հիպոթեզներ», որոնք մտածված են միայն հարմարության համար։

Բուրժուական մտածողներն աշխատում են բնագիտության առանձին ճյուղերի, առանձին նվաճումների ոչ ճիշտ մեկնաբանման օգնությամբ «հերքել» մատերիալիզմը, տեղ մաքրել իդեալիզմի և կրոնի համար։ Նրանք ձգտում են իրենց նպատակներին ծառայեցնել միկրոաշխարհի վերաբերյալ ձեռք բերված հարուստ գիտելիքները։ Այսպես, օրինակ, կվանտային մեխանիկան, որը զբաղվում է «էլեմենտար» մասնիկների օրինաչափությունների ուսումնասիրությամբ, ցույց է տալիս, որ միկրոօբյեկտների մոտ կոորդինատների և իմպուլսների կապն այլ ձևով է դրսևորվում, քան մակրոմարմինների մոտ։ Այլ կերպ էլ լինել չէր կարող, քանի որ այդ երկու աշխարհները որակապես տարբերվում են միմյանցից։ Դրա համար էլ դիալեկտիկայի օրենքներն ու կատեգորիաները տարբեր ձևով են դրսևորվում այդ բնագավառներում։ Սակայն բուրժուական որոշ ֆիզիկոսներ ու փիլիսոփաներ աշխատում են ջնջել այդ երկու աշխարհների միջև եղած տարբերությունը, նրանք փորձում են պատճառականության ձևակերպումը մակրոաշխարհից նույնությամբ փոխադրել միկրոաշխարհի վրա։ Քանի որ այդպիսի փոխադրումն անհնար է, դրանից

նրանք անում են կեղծ եզրակացություն այն մասին, թե իբր պատճառականությունն իր ուժը կորցնում է միկրոաշխարհում, դրա համար էլ կարելի է խոսել էլեկտրոնի «կամքի ազատության» մասին։ Նրանց կարծիքով հարաբերականության տեսության և կվանտային մեխանիկայի նվաճումները ժխտում են ֆիզիկական օբյեկտների գոյությունն անկախ մարդու կամքից ու գիտակցությունից, բացասում են ժամանակի, տարածության և պատճառականության օբյեկտիվ բնույթը և այլն։ Այս ճանապարհով բուրժուական որոշ ֆիզիկոսներ և բուրժուական փիլիսոփաներ աշխատում են վերակենդանացնել իդեալիզմը գիտության մեջ, նրան տալ «գիտականորեն հիմնավորված» տեսք։

Ժամանակակից ֆիզիկայի խոշոր նվաճումներից մեկը մասսայի և էներգիայի փոխադարձ կապի բացահայտումն է։ Այդ կապն արտահայտվում է $E=mc^2$ ֆորմուլայի օգնությամբ, որտեղ E-ն էներգիան է, m-ը՝ մասսան, իսկ c-ն՝ լույսի արագությունը։ Այդ ֆորմուլայի մեջ խորամուխ լինելու դեպքում պարզվում է, որ այն ըստ էության միացնում է բնության մեզ հայտնի երկու շատ կարևոր օրենքներ՝ էներգիայի պահպանման և փոխակերպման օրենքը, կշռի կամ մասսայի պահպանման օրենքի հետ։ Այն կարևոր դեր է կատարում միջուկային պրոցեսների ժամանակ տեղի ունեցող էներգետիկ փոփոխությունների հաշվառման համար։ Մասսայի և էներգիայի միջև եղած այդ իրական կապն արտահայտող ֆորմուլան բուրժուական փիլիսոփաներն ու որոշ ֆիզիկոսներ աշխատում են օգտագործել իդեալիզմի «հիմնավորման» համար։ Նրանց կարծիքով, այդ ֆորմուլան ցույց է տալիս, որ մասսան էկվիվալենտ է էներգիային, հետևապես մասսան վեր է ածվում էներգիայի, այսինքն՝ մատերիան չքանում է, իսկ էներգիան մնում է։ Դժվար չէ նկատել, որ սա հին էներգետիզմն է, քողարկված նոր ձևով։ Ելնելով մասսայի և էներգիայի փոխադարձ կապի ոչ ճիշտ մեկնաբանությունից, բուրժուական այդ փիլիսոփաներն ու բնագետները փորձում են ցույց տալ տիեզերքի սկիզբն ու վախճանը, էներգիան դարձնել աստծո կամքը երկրագնդի վրա և այլն։

Ժամանակակից գիտության խոշոր նվաճումների թվին է պատկանում «էլեմենտար» մասնիկների և նրանց միջև եղած փոխադարձ կապի բացահայտումը։ Այդ մասնիկների վերածումը մեկը մյուսին է՛լ ավելի խորացրեց մեր գիտելիքները անօրգանական բնության մասին, ցույց տվեց տարբեր տեսակի դիսկրետ (ընդհատ) մասնիկների միջև եղած օրգանական կապը։ Սակայն բուրժուական որոշ մտածողներ փորձեցին այդ նվաճումները ծառայեցնել իրենց դասակարգային շահերի համար։ Այսպես, օրինակ, էլեկտրոնի և պոզիտրոնի վերածումը լույսային ֆոտոնների նրանք որակում են որպես «մատերիայի անիհիլացիա», այսինքն՝ մատերիայի վերածում ոչնչի։ Այդ կեղծ տեսակետը «հիմնավորելու» համար նրանք դիմում են հետևյալ մեթոդին. քանի որ էլեկտրոնը և պոզիտրոնը հանգստի մասսա ունեն, իսկ ֆոտոնը հանգստի մասսա չունի, ապա էլեկտրոնը և պոզիտրոնը մատերիա են, իսկ լույսային կվանտը՝ էներգիա. հետևապես, երբ էլեկտրոնը և պոզիտրոնը ընդհարվելով վեր են ածվում լույսային կվանտների, տեղի է ունենում մատերիայի վերածում էներգիայի, այսինքն՝ մատերիան չքանում է, իսկ էներգիան մնում է, կամ համաձայն նրանց տերմինաբանության տեղի է ունենում մատերիայի վերածում ոչնչի։ Փորձը ցույց է տալիս, որ ո՛չ միայն էլեկտրոնն ու պոզիտրոնն են վերածվում լույսային կվանտների, այլև մեծ էներգիա ունեցող լույսային կվանտն անցնելով ատոմի էլեկտրամագնիսական դաշտով, իր հերթին վերածվում է էլեկտրոնի և պոզիտրոնի։



Ինչպես ամեն մի գիտության, այնպես էլ քիմիայի բնագավառում բացահայտվող օրենքները և օրինաչափությունները հաստատվում են ոչ թե միանգամից, առանց կարծիքների պայքարի, առանց հսկայական դժվարություններ հաղթահարելու, այլ երկար և դժվարին գիտական իմացության միջոցով։ Ընդ որում չկա այնպիսի գիտություն, որը կարողանա մեկընդմիշտ սպառել իր իմացության օբյեկտը։ Եվ դա հասկանալի է, որովհետև ոչ միայն փոփոխվում և զարգանում են տվյալ գիտության օբյեկտները, այլև հենց ինքը գիտությունն արդեն անընդհատ ընդարձակում է իր հետազոտության շրջանակները, արդեն պարզաբանված հարցերին փոխարինելու են գալիս նոր և ավելի խոր չպարզաբանված հարցեր, որոնք ժամանակի ընթացքում նույնպես բացատրվում են գիտության կողմից, այնպես որ, բովանդակ գիտության զարգացման պրոցեսն իրենից ներկայացնում է անվերջ անցում գիտության լուծված պրոբլեմներից չլուծված պրոբլեմներին։

Գիտությունն իր զարգացման պրոցեսում չի բավարարվում միայն բնության մեջ հանդիպող իրերի և երևույթների իմացությամբ, նա այդ իմացությունն օգտագործում է նրա համար, որպեսզի ստեղծի այնպիսի նոր իրեր և երևույթներ, որոնք առանց մարդու ակտիվ ստեղծագործական աշխատանքի չէին կարող հանդես գալ երբեք բնության մեջ։ Այս տեսակետից ուշագրավ են օրգանական քիմիայի հաջողությունները։ Նա սինթեզել է միլիոնավոր պարզ և բարդ քիմիական միացություններ, որոնք մի ժամանակ սինթեզվում էին բույսերի և կենդանիների կողմից։ Քիմիական միացությունների կառուցվածքի և հատկությունների միջև եղած կապի բացահայտումը հնարավորություն է տվել օրգանական քիմիային՝ սինթեզելու բազմաթիվ բարձր մոլեկուլյար միացություններ։ Օրինակ, տարբեր տեսակի պլաստմասսաներ և կաուչուկի տարբեր տեսակներ։ Օրգանական քիմիայի հաջողությունների մասին գաղափար կազմելու համար բավական է նշել, որ առանձին բարձր մոլեկուլյար միացությունների մոլեկուլյար կշիռը հասնում է մեկ միլիոնի։ Այս ամենը խոսում է այն մասին, որ օրգանական քիմիան հանդիսանում է մեր ժամանակի ամենաառաջավոր գիտություններից մեկը։

Օրգանական քիմիայի արագ զարգացումը և հսկայական փաստական նյութի կուտակումը պահանջում են օրգանական քիմիայի տեսության անընդհատ զարգացում։ Այդ զարգացումը հանգեցնում է ինչպես անցյալում հայտնի տեսական դրույթների կատարելագործման, այնպես էլ նոր դրույթների մշակման։ Քանի որ ի տարբերություն անօրգանական միացությունների, օրգանական միացությունները բնութագրվում են մեծ մոլեկուլյար կշիռներով, հետևապես իրենց մեջ ընդգրկում են մեծ թվով ատոմներ, ապա բնական է, որ օրգանական քիմիայի զարգացման կարևոր պրոբլեմներից մեկը պետք է հանդիսանա ատոմների փոխազդեցությունը մոլեկուլում։ Ատոմների փոխազդեցության հարցը մոլեկուլում ուսումնասիրվել է ռուս ականավոր քիմիկոս Բուտլերովի կողմից։ Նա ցույց է տվել, որ բարդ մոլեկուլների հատկությունները պայմանավորված են ոչ միայն նրա կազմի մեջ մտնող ատոմների քանակով, այլև վերջիններիս փոխադարձ դասավորությամբ, այսինքն՝ կառուցվածքով։ Բուտլերովի ստեղծած նյութի քիմիական կառուցվածքի տեսությունը սկզբունքային ճիշտ պատասխան է տվել ատոմների անմիջական և միջնոր-

դավորված փոխազդեցության հարցին մոլեկուլում։ Սակայն այդ չի նշանակում, թե նյութի քիմիական կառուցվածքի վերաբերյալ եղած ուսմունքը ենթակա չէ հետագա կատարելագործման և զարգացման։ Բանն այն է, որ այն ժամանակ, երբ Բուտլերովը (անցյալ դարի երկրորդ կեսում) առաջ քաշեց և մշակեց իր տեսությունը, ատոմը համարվում էր անբաժանելի, անհայտ էր ատոմի կառուցվածքը, իսկ այդ հանգամանքը հնարավորություն չէր տալիս խորանալու ատոմների քիմիական փոխազդեցության մեջ։ Հետագայում ատոմի էլեկտրոնային թաղանթի կառուցվածքի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ մոլեկուլի առաջացման ժամանակ որոշակի մասնակցություն են ունենում ատոմի էլեկտրոնային թաղանթները և հատկապես էլեկտրոնային թաղանթի արտաքին շերտի էլեկտրոնները։ Էլեկտրոնների հատկությունների ուսումնասիրությունը կվանտային մեխանիկայի կողմից հնարավորություն տվեց պարզաբանելու, թե ատոմների արտաքին շերտերի էլեկտրոններն ինչ դեր են կատարում քիմիական միացությունների, կամ քիմիական կապերի առաջացման գործում։

Ռեզոնանսի «տեսության» կողմնակիցները՝ Պաուլինգը, Ինգոլդը և ուրիշներ, փոխանակ ճիշտ ձևով բացատրեն կվանտային մեխանիկայի դերը քիմիական կապերի ըմբռնման գործում, կանգնում են սխալ և հակագիտական տեսակետի վրա, վերակենդանացնում են մարքսիստական փիլիսոփայության կողմից վաղուց հերքված մեխանիցիզմը։ Քիմիական շարժումը ռեզոնանսի «տեսության» կողմնակիցները ցանկանում են լրիվ կերպով փոխարինել շարժման ստորին ձևով՝ կվանտային մեխանիկայով, այլ կերպ ասած, նրանք աշխատում են քիմիայի բնագավառում հանդիպող երևույթների հարուստ բազմազանությունը հանգեցնել էլեկտրոնների մեխանիկային։ Դժվար չէ նկատել, որ կվանտային մեխանիկան, որն ուսումնասիրում է «էլեմենտար» մասնիկների շարժման և փոփոխման օրինաչափությունները, երբեք չի կարող փոխարինել քիմիան, որն զբաղվում է շարժման ավելի բարձր ձևի՝ ատոմների շարժման ուսումնասիրությամբ։

Շարժման տարբեր ձևերի փոխհարաբերության հարցն ուսումնասիրելիս պետք է նկատի ունենալ, որ նրանց միջև գոյություն ունի, մի կողմից փոխադարձ կապ, այսինքն՝ շարժման տարբեր տեսակներն ի վիճակի են որոշակի պայմաններում վերածվելու մեկը մյուսին, իսկ մյուս կողմից, որոշակի որակական տարբերություններ, այնպես որ շարժման բարձր ձևերը չի կարելի հանգեցնել շարժման ստորին ձևերին, դրա համար էլ շարժման բարձր ձևերը ստորին ձևերին հանգեցնելու մեխանիստական բոլոր փորձերը կարող են վերջանալ միայն անհաջողությամբ։

Ռեզոնանսի «տեսության» կողմնակիցները փորձում են մոլեկուլի առանձին վիճակները պատկերացնել ստրուկտուրային տարբեր բանաձևերի օգնությամբ, որոնք կառուցվում են համաձայն այդ մոլեկուլի կազմի մեջ մտնող ատոմների արժեքականության։ Այսպես, Պաուլինգի կարծիքով բենզոլի մոլեկուլը կարող է գտնվել հինգ տարբեր վիճակներում, որոնց կարելի է պատկերացնել հինգ տարբեր ստրուկտուրային բանաձևերի օգնությամբ։ Այդ հինգ վիճակների փոխազդեցությամբ էլ, ըստ Պաուլինգի, պետք է բացատրել բենզոլի հատկությունները։ Այստեղից որոշակիորեն երևում է, որ Պաուլինգը բենզոլի կազմի մեջ մտնող ատոմների ներքին, իսկական փոխազդեցությունը փոխարինել է բենզոլի տարբեր վիճակների միջև եղած արտաքին փոխազդեցությամբ. եթե նկատի ունենանք նաև այն հանգամանքը, որ բենզոլի այդ հինգ վիճակներն արտացոլող ստրուկտուրային բանաձևերը ոչ թե իրական են, այլ մտացածին, ապա պարզ կդառնա, որ ռեզոնանսի «տեսությունը» ուսումնասիրում է ոչ թե քիմիական միացությունների իսկական կառուցվածքը, ոչ թե մոլեկուլի հատկությունների և նրա կառուցվածքի միջև եղած կապը, այլ վերջինս փոխարինում է մտացածին ռեզոնանսային փոխազդեցության մեջ գտնվող մոլեկուլների տարբեր վիճակների փոխազդեցությամբ։ Այստեղից որոշակիորեն երևում է այս «տեսության» իդեալիզմը. թվում է, թե ոչ թե քիմիական միացությունները և նրանց կառուցվածքն են առաջնային, որով պայմանավորվում են վերջիններիս հատկությունները, այլ մտացածին, իրականության մեջ գոյություն չունեցող ռեզոնանսային փոխազդեցության մեջ գտնվող մոլեկուլների տարբեր վիճակների կառուցվածքային բանաձևերն են առաջնային, իսկ նրանցով պայմանավորվում են իրական քիմիական միացությունների հատկությունները։



Կարելի է բերել մատերիալիզմի և իդեալիզմի պայքարի բազմաթիվ ուրիշ փաստեր բնագիտության տարբեր բնագավառներից, սակայն բերված փաստերն էլ բավականին համոզիչ կերպով հաստատում են, որ մատերիալիզմի և իդեալիզմի պայքարը բնագիտության մեջ ոչ միայն չի թուլացել, այլ է՛լ ավելի է սրվել կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման շնորհիվ։ Օրինակ, բուրժուական գիտնական Բրիջմենը, որն արժանացել է Նոբելյան մրցանակի, հանգում է այն եզրակացության, թե իբր «աշխարհը աստիճանաբար չքանում է և հեռանում մեզանից, որովհետև նա դառնում է անիմաստ։ Մենք անգամ չենք կարող այդ արտահայտել այնպես, ինչպես մենք կցանկանայինք։ Մենք չենք կարող ասել, որ աշխարհը գոյություն ունի մի որոշ իմացաբանական հնարավորությունների սահմաններից դուրս, իրեն իմացության բնույթի պատճառով։ Գոյության կոնցեպցիան ինքը դառնում է անիմաստ։ Եվ կատարելապես ճիշտ է, որ դրան արձագանքելու միակ եղանակն է լռելը»։ Բրիջմենի այս պեսիմիստական տեսակետն աշխարհի գոյության մասին ոչ միայն խոսում է գիտության նվաճումներից արվող իդեալիստական եզրակացությունների մասին, այլև որոշ իմաստով ցույց է տալիս, որ այդ մտածողը բուրժուազիայի մայրամուտը փորձում է ներկայացնել որպես ամբողջ մարդկության մայրամուտ։

Կարելի է բերել ուրիշ քաղվածքներ ժամանակակից բուրժուական փիլիսոփաներից և բնագետներից, որոնք որոշակիորեն ցույց են տալիս, թե ինչպես վերջիններս օգտագործում են գիտության նվաճումները իդեալիզմը հիմնավորելու և մատերիալիզմը «հերքելու» համար։ Բուրժուական որոշ ֆիզիկոսներ ու փիլիսոփաներ այժմ առաջ են քաշում այնպիսի խավարամոլ գաղափարներ բնագիտության մեջ, որոնք անցյալում չէին հանդիպում։ Բուրժուական մտածող Իորդանը խոսում է էլեկտրոնի «կամքի ազատության» մասին, Մուկկը փորձում է ցույց տալ, որ քիմիական կատալիզատորներն օժտված են «ինստինկտով», Բեզեն ճգնում է ապացուցել, որ աշխարհը գոյություն չի ունեցել մինչև գիտակցության առաջացումը, իսկ Գամովը առաջ է քաշում այն միտքը, թե աշխարհը առաջացել է ատվածակերպ նախաատոմի պայթյունից։ Այսպիսով պարզ է դառնում, որ մեր օրերում քիչ չեն այն բուրժուական բնագետները, որոնք աշխատում են համաձայնեցնել գիտությունը կրոնի հետ, գիտության նվաճումները ծառայեցնել կրոնի և տերտերականու-

թյան հիմնավորման համար։ Հենց այս էլ հանդիսանում է բուրժուական պարտիականության դրսևորման ձևը բնագիտության մեջ, որի դեմ վճռական և հետևողական պայքար են մղում դիալեկտիկական մատերիալիզմի կողմնակիցները։

Ինչպես սոցիալիզմի լագերի գիտնականներն ու փիլիսոփաները, այնպես էլ կապիտալիստական երկրների պրոգրեսիվ մտածողները հանդես են գալիս գիտության նվաճումներից արվող այդպիսի բացահայտ, խորապես ֆիդեիստական եզրակացությունների դեմ։ Նրանք ցույց են տալիս, որ գիտության նվաճումները ոչ միայն չի կարելի հաշտեցնել կրոնի հետ, այլև ընդհակառակը, այդ նվաճումները սասանում են կրոնի հիմքը և ապացուցում են վերջինիս ողջ կեղծությունը։

Դժվար չէ նկատել, որ իդեալիզմի ոչնչացման համար կարևոր պայման է հանդիսանում շահագործող դասակարգերի ոչնչացումը, որոնք վերջինիս սոցիալական հենարանն են։ Շահագործող դասակարգերի և շահագործման ոչընչացման հետ միասին իդեալիզմը կորցնում է իր ոտքի տակի հողը, որովհետև հասարակության մեջ այլևս չեն լինում այնպիսի ուժեր, որոնք շահագրգռված են իրականության ոչ ճիշտ ճանաչման մեջ։ Սակայն, իդեալիզմի լրիվ հաղթահարման համար անհրաժեշտ է վերացնել ինչպես նրա սոցիալական, այնպես և իմացաբանական արմատները։

Իդեալիզմի իմացաբանական արմատները կարող են պահպանել իրենց կենսունակությունն այնքան ժամանակ, քանի դեռ չի ըմբռնված իմացության պրոցեսի իսկական էությունը։ Այդ պրոցեսը խոր և բազմակողմանիորեն ըմբռնելու համար պետք է տիրապետել մարքսիստական փիլիսոփայությանը՝ դիալեկտիկական մատերիալիզմին։ Միայն մարքսիստական փիլիսոփայությունն է հնարավորություն տալիս հասկանալ իմացության պրոցեսի բարդ դիալեկտիկան, խուսափել վերջինիս առանձին մոմենտների միակողմանի, ոչ ճիշտ մեկնաբանությունից, բնության զարգացման պրոցեսները ըմբռնել այնպես, ինչպես որ նրանք կան։ Այստեղից պարզ է դառնում այն հսկայական դերը, որ ունի մարքսիստական փիլիսոփայությունը բնագիտության զարգացման գործում։ Նրա օգնությամբ հնարավոր է դառնում ոչ միայն մերկացնել բուրժուական փիլիսոփաներին, որոնք փորձում են բնագիտության նորագույն նվաճումներն օգտագործել իդեալիզմն ու տերտերականությունը «հիմնավորելու» համար, այլև տալ այդ նվաճումների գիտական ընդհանրացումը, մշակել ընդհանուր մեթոդոլոգիական սկզբունքներ, որոնք լուսավորում են բնագիտության զարգացման ուղին։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՌԵՎՏՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՅՈԹՆԱՄՅԱԿՈՒՄ

Վ. ԶԱՏԻՆՅԱՆ

ՍՄԿՊ XXI համագումարում քննարկվեցին սոցիալիստական էկոնոմիկայի հեռանկարային զարգացման տեսական ու գործնական նշանակություն ունեցող շատ հարցեր։ Այդ հարցերից մեկը երկրում ապրանքա-դրամային հարաբերությունների, սովետական առևտրի հետագա ծավալման հարցն էր։ Համագումարը, հենվելով ապրանքային արտադրության ու ապրանքաշրջանառության մասին մարքս-լենինյան տեսության վրա, տվեց ապրանքա-դրամային հարաբերությունների զարգացման հեռանկարները, նրանց դիալեկտիկան։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ամբողջ ընթացքում, քանի դեռ պահպանվում են սոցիալիստական սեփականության երկու ձևերը, քանի դեռ արտադրողական ուժերի զարգացումը չի հասել այնպիսի աստիճանի, որով հնարավոր լինի սպառարժեքների լիառատություն ստեղծել և իրականացնել բաշխման կոմունիստական սկզբունքը, ապրանքա-դրամային հարաբերությունների զարգացումը տեղի կունենա ոչ թե նրանց շրջանակների նեղացման ու թուլացման, այլ, ընդհակառակը, այդ հարաբերություններն ամեն կերպ ծավալելու ճանապարհով։ Դրա փայլուն ապացույցն է վերջին տարիներին Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից մի շարք միջոցառումների կենսագործումը։ Արդյունաբերության և շինարարության վերակառուցումը, վարչատնտեսական շրջանների և նրանցում ժողովրդական տնտեսության խորհուրդների կազմակերպումը, արտադրական ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության բարձրացումը հանգեցրին վարչատնտեսական այդ շրջանների ու ձեռնարկությունների ապրանքային կապերի ուժեղացմանը։ Երկրում ապրանքա-դրամային հարաբերությունների հետագա ծավալման պայմաններ ստեղծվեցին ՄՏԿ-ների վերակազմման, գյուղատնտեսական տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելու, գյուղատնտեսական մթերքների մթերումների սիստեմի ու գների փոփոխման շնորհիվ։ Դրա հետ միասին սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի ապահովումը պայմաններ է ստեղծում կոլտնտեսային արտադրության, ապրանքայնության սիստեմատիկ ավելացման ու դրա բազայի վրա քաղաքի և գյուղի, սոցիալիստական արդյունաբերության ու կոլտնտեսությունների միջև տնտեսական, առևտրական հարաբերությունների հետագա զարգացման համար։

Ապրանքա-դրամային հարաբերությունները գնալով կծավալվեն նաև շնորհիվ այն բանի, որ սոցիալիստական աշխատանքի միջազգային հասարակական բաժանման հետագա խորացման հետևանքով էլ ավելի կընդլայնվի

ապրանքաշրջանառությունը սոցիալիզմի լագերի երկրների միջև։ Այդ հարաբերությունները կզարգանան նաև խաղաղ գոյակցության պայմաններում սոցիալական տարբեր սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի երկրների միջև կատարվող առևտրի ու տնտեսական այլ կապերի նորմալացման ու զարգացման հետևանքով։

Այսպիսով, ՍՍՌՄ-ում ապրանքա-դրամային հարաբերությունները, առևտուրը զարգանում, ծավալվում ու ամրապնդվում են ժողովրդական տնտեսության վերելքին զուգընթաց, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման հետ միասին։ Ընդ որում ապրանքա-դրամային հարաբերությունների հետագա ծավալումը ստեղծում է միաժամանակ այն նախադրյալներն ու պայմանները, որոնք անհրաժեշտ են հենց սեփական բացառման համար։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—65 թթ. կոնտրոլ թվերի համաձայն լայն հեռանկարներ են բացվում երկրում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության հետագա ընդլայնման, բնակչության դրամական ռեալ եկամուտների ավելացման ու դրա բազայի վրա ապրանքաշրջանառության հետագա ծավալման համար։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կոնտրոլ թվերի համաձայն, երկրի ազգային եկամուտը, որը հանդիսանում է սովետական ժողովրդի բարեկեցության առավել ընդհանրացնող ցուցանիշը, կաճի 62—65 տոկոսով։ Դա հնարավորություն կտա 60—63 տոկոսով ավելացնելու ժողովրդական սպառման ծավալը։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աննախընթաց զարգացման հետ միասին զգալիորեն կաճեն բնակչության դրամական եկամուտները։ ՍՍՌՄ-ում բանվոր-ծառայողների ռեալ եկամուտները, մեկ աշխատողի հաշվով, կավելանա 40 տոկոսով։ Այդ աճը տեղի կունենա հիմնականում դրամական աշխատավարձի, կենսաթոշակների ու նպաստների ավելացման, հասարակական սննդի գների իջեցման, ինչպես նաև բնակչությունից գանձվող հարկերի վերացման հաշվին։ Զգալի չափով կավելանան նաև կոլտնտեսային գյուղացիության եկամուտները՝ հիմնականում հանրային տնտեսության հաշվին։ Յոթնամյակում Հայկական ՍՍՌ բնակչության դրամական եկամուտները կաճեն 47,3 տոկոսով, այդ թվում՝ բանվոր-ծառայողների աշխատավարձը՝ 44,7 տոկոսով, գյուղատնտեսական մթերքների վաճառքից ստացվող կոլտնտեսականների եկամուտները՝ 44,3 տոկոսով։ Ռեսպուբլիկայի բնակչությանը տրվող կենսաթոշակները և նպաստները 1959—65 թթ. կաճեն 71,1 տոկոսով։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության զգալի աճը ու բնակչության դրամական եկամուտների սիստեմատիկ բարձրացումը հնարավորություն կտան մեծ չափերով ընդլայնելու երկրի ապրանքաշրջանառությունը։ Յոթնամյակում ՍՍՌՄ պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը, համադրելի գներով, կավելանա մոտավորապես 62 տոկոսով։ ՍՍՌՄ Պետական պլանային հանձնաժողովի նախնական հաշվումների համաձայն, յոթնամյակի վերջում բնակչության մեկ շնչի կողմից մսի, ձկան, բուսական յուղերի, շաքարի, բանջարեղենի սպառումը կհասնի այն նորմաներին, որոնք անհրաժեշտ են մարդու սննդի ռացիոնալ կազմակերպման ու նրա օրգանիզմի հարմոնիկ զարգացման համար։

Յոթնամյակի ընթացքում Հայկական ՍՍՌ-ում մանրածախ ապրանքաշրջանառությունը կավելանա 72,8 տոկոսով, իսկ բնակչության մեկ շնչի հաշ-



վով 38,2 տոկոսով։ Հատկանշական է, որ ռեսպուբլիկայի առևտրի ապրանքաշրջանառության ընդհանուր աճի մեջ, քաղաքային առևտրի շրջանառության համեմատությամբ, ավելի բարձր տեմպերով է զարգանալու գյուղական առևտրի շրջանառությունը։ Այսպես, օրինակ, 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, քաղաքային առևտրի շրջանառությունը ռեսպուբլիկայում կավելանա մոտ 50 տոկոսով, իսկ գյուղական առևտրինը՝ 80 տոկոսով։ Գյուղական առևտրի ապրանքաշրջանառության այդպիսի գերազանց աճը պայմանավորված է պարտիայի ու կառավարության վարած այն քաղաքականությամբ, որն ուղղված է քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների վերացմանը, գյուղական բնակչության կենցաղն ու կուլտուրան քաղաքի մակարդակին հասցնելու նպատակին։

Ժողովրդական սպառման ապրանքների շուկայական ֆոնդերի զգալի աճի հիման վրա 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, մսի և մսամթերքների, կաթի ու կաթնամթերքների վաճառքը ռեսպուբլիկայում կավելանա մոտ 2 անգամ, շաքարինը և հրուշակեղենինը՝ 80 տոկոսով, ձվինը՝ 2,3 անգամ, մրգինը՝ 94 տոկոսով և այլն։ Յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով նախատեսվում է ընդլայնել արդյունաբերական ապրանքների վաճառքը, է՛լ ավելի բարձրացնել նրա տեսակարար կշիռն ամբողջ ապրանքաշրջանառության մեջ։ Յոթնամյակի ընթացքում մեր բնակչությունը կստանա բրդյա, բամբակյա, կաշվե, մորթու, մետաղյա, փայտյա ապրանքների նոր բարձրորակ փոխարինիչներ, որոնք իրենց արտաքին տեսքով, դիմացկունությամբ ու ճաշակով չեն զիջի բնական ծագում ունեցող ապրանքներին։

Յոթնամյակում մեծ չափերով կընդլայնվեն կուլտուր-կենցաղային և, հատկապես, կանանց աշխատանքը թեթևացնող տնտեսական, տնային գործածության մի շարք ապրանքների արտադրությունն ու վաճառքը։ Ինչպես նշվում է ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի «Կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների արտադրությունն ավելացնելու, ասորտիմենտն ընդլայնելու և որակը բարելավելու միջոցառումների մասին» վերջերս ընդունած որոշման մեջ, չնայած վերջին տարիներս բավականին ընդլայնվել է կուլտուր-կենցաղային ու տնտեսական ապրանքների արտադրությունը, սակայն, այնուամենայնիվ, նման ապրանքների արտադրության մակարդակը ետ է մնում բնակչության հարաճուն պահանջմունքներից։ Այդ որոշման մեջ նախատեսվում է մոտակա տարիների ընթացքում զգալիորեն ավելացնել հեռուստացույցների, դաշնամուրների, լվացքի ու կարի մեքենաների, սառնարանների, ճենապակյա ու հախճապակյա, ապակյա և էմալապատ ամանեղենի, կուլտուրական ու կենցաղային կարիքները բավարարող այլ ապրանքների արտադրությունը։ Ընդ որում խնդիր է դրվում տնտեսական շատ ապրանքների արտադրությունն ընդլայնել տեղերում՝ արդյունաբերության մնացորդների օգտագործման հաշվին։

Կոմունիստական պարտիայի XXI համագումարը և կառավարության հետագա որոշումները պարտավորեցնում են սովետական առևտրի կազմակերպություններին ու ձեռնարկություններին՝ արտադրության վրա ներգործությունն ուժեղացնելու միջոցով պահանջել, որպեսզի վերջինս է՛լ ավելի բարելավի բնակչությանը մատակարարվող ապրանքների որակը, ընդլայնի նրանց ասորտիմենտը։ «Արտադրության ավելացման հետ միասին,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— թեթև ու սննդի արդյունաբերության մեջ այժմ առաջին

պլանի վրա է դրվում արտադրանքի ասորտիմենտը և որակը զգալիորեն բարելավելու խնդիրը։ Ժողովրդական սպառման ապրանքները պետք է լինեն լավորակ, գեղեցիկ, շքեղ ծրարված ու փաթեթված»։

Հայտնի է, որ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության անընդհատ ավելացումը, բնակչության գնողունակության սիստեմատիկ աճն ու դրա հիման վրա ժողովրդի կենսամակարդակի և կուլտուրայի անընդհատ բարձրացումը իր հետ բերում է բնակչության սպառողական պահանջարկի թե՛ քանակական և թե որակական փոփոխություններ, բարձրանում է բնակչության պահանջը ապրանքների որակի, ասորտիմենտի նկատմամբ, ուժեղանում է մոդայի ազդեցությունը նրա պահանջարկի վրա։ Այդ հանգամանքը սովետական առևտրի կազմակերպությունների ու ձեռնարկությունների առաջ մեծ պատասխանատվություն է դնում՝ բնակչության գնողունակության ու պահանջարկի խոր ու բազմակողմանի ուսումնասիրության հիման վրա ուժեղացնել ապրանքների որակի ու ասորտիմենտի համար տարվող պայքարը։ Պրակտիկայում քիչ չեն դեպքերը, երբ առևտրական կազմակերպությունները և ձեռնարկությունները լիբերալ վերաբերմունք են ցուցաբերում արտադրական ձեռնարկությունների նկատմամբ, ընդունելով նրանց վատորակ, անգամ խոտան արտադրանքը։ Դրանով իսկ նրանք մեծ վնասներ են պատճառում թե՛ իրենց, որովհետև արհեստական պայմաններ են ստեղծում ապրանքների գերնորմատիվ կուտակումների ստեղծման, ապրանքաշրջանառության դանդաղեցման համար, թե՛ արտադրական ձեռնարկություններին։

Արտադրության արդյունքը բնության կողմից մարդկանց տված պատրաստի սպառարժեքներից տարբերվում է նրանով, որ այն աշխատանքի ծախսման հետևանք է։ Այն կարող է պիտանի դառնալ, եթե նրա վրա թափված աշխատանքը հասարակության կողմից ճանաչվի որպես օգտակար աշխատանք, երբ արտադրության այդ արդյունքը գտնվի սպառման ոլորտում։ Եվ, քանի որ սոցիալիստական հասարակարգում ապրանքներն արտադրվում են, վերջին հաշվով, ոչ թե արտադրության, այլ սպառման համար, ապա ամեն մի ձեռնարկություն, լինի այն արդյունաբերական թե առևտրական, պետք է սիստեմատիկ կերպով պայքարի արտադրվող ապրանքների որակի ու ասորտիմենտի բարելավման համար։ Ժողովրդական սպառման ապրանքների որակի ու ասորտիմենտի բարձրացման համար մղվող պայքարը պայքար է սովետական ժողովրդի կենսամակարդակի ու կուլտուրայի, սոցիալիստական ընդլայնված վերարտադրության տեմպերի հետագա բարձրացման համար։

***

Յոթնամյակում բացառիկ ուշադրություն է հատկացվելու երկրում հասարակական սննդի հետագա զարգացմանն ու բարելավմանը։

ՍՍՌՄ-ում հասարակական սննդի ճիշտ կազմակերպման ժողովրդատնտեսական նշանակությունն այն է, որ հնարավորություն է տալիս տնային տնտեսության մեջ գործադրվող նվազ արտադրողական աշխատանքը փոխարինել հանրայնացված, առավել արտադրողական աշխատանքով, ազատել կանանց տնային այդ տիպի աշխատանքներից ու մասնակից դարձնել սոցիալիստական շինարարությանն ու հասարակական կյանքին, ավելի ռացիոնալ ու խնայողաբար օգտագործել երկրի սննդամթերքները, գիտականորեն իրակա-



նացնել աշխատավորների սննդի կազմակերպումը և սոցիալիստական սկզբունքով վերակառուցել նրանց կենցաղը։

Դեռևս Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը հասարակական սննդի ձեռնարկություններն անվանում էր տնային աշխատանքներից կնոջն ազատագրելու միջոց և դրանք դասում էր «ապագա կոմունիզմի սաղմերի» շարքում։ Կոմունիստական պարտիայի XXI համագումարը կոմունիզմի ծավալուն կառուցման կարևորագույն խնդիրներից մեկը համարեց երկրում հասարակական սննդի, որպես կոմունիզմի ծիլերից մեկի, ամեն կերպ զարգացումն ու բարելավումը։ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1959 թվականի փետրվարի 20-ի՝ «Հասարակական սննդի հետագա զարգացման ու բարելավման մասին» հատուկ որոշումը պահանջեց արմատապես վերակառուցել աշխատավորների սննդի կազմակերպման գործը, այն համապատասխանեցնել բնակչության ժամանակակից պահանջներին, որոնք (շնորհիվ նրա գնողունակության զգալի աճի) անհամեմատ բարձրացել են։ Մի շարք միջոցառումներ են մշակվել, որոնց կենսագործումը կխթանի հասարակական սննդի հետագա զարգացմանը։ Նախատեսվում է 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, հասարակական սննդի ձեռնարկությունների արտադրանքի թողարկումն ավելացնել երկու անգամ, զգալիորեն ընդարձակելով դրանց ցանցը։ Հայկական ՍՍՌ-ում հասարակական սննդի ձեռնարկությունների շրջանառությունը յոթնամյակում կավելանա մոտ 2 անգամ։ Կընդլայնվի ասորտիմենտը, կբարձրացվի ճաշերի որակը։ Յոթնամյակում խնդիր է դրվում ձրի նախաճաշ բաց թողնել դպրոցների և ուսումնական այլ հաստատությունների աշակերտներին և ուսանողությանը։ Հասարակական սննդի ձեռնարկությունները կաճեն այն չափով, որ նրանցից կօգտվեն բնակչության ավելի ու ավելի լայն խավեր։

Յոթնամյակում գյուղատնտեսության զարգացման բազայի վրա կընդլայնվի կոլտնտեսային առևտրի շրջանառությունը։ Կոլտնտեսային առևտրի զարգացման հեռանկարները պահանջում են ավելի ու ավելի կազմակերպված բնույթ տալ նրան, վերակառուցել նրա իրականացման մեթոդները, ընդլայնել կոլտնտեսային առևտրի կազմակերպման առաջադիմական ձևերը։ Բանն այն է, որ ժամանակակից կոլտնտեսային առևտուրն իր դրական կողմերի հետ միասին ունի և բացասական շատ կողմեր։ Դրանցից հիմնականը այն է, որ առևտրի այդ ձևի իրականացման հետևանքով, երբ նրանում զգալիորեն գերազանցում են ոչ թե կոլտնտեսությունները, այլ կոլտնտեսականները, հանրային տնտեսության աշխատանքներից օրերով կտրվում են մեծ քանակությամբ աշխատունակ կոլտնտեսականներ և դա խանգարում է հանրային տնտեսության մեջ աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Հաշվումները ցույց են տվել, որ ամեն օր Երևանի շուկաները գյուղատնտեսական մթերքներ են բերում ավելի քան 3000 աշխատունակ կոլտնտեսական, իսկ կիրակի և նախատոնական օրերին այդ թիվն ավելի քան կրկնապատկվում է։ Հանրային աշխատանքներից կտրվելը մեծ վնաս է պատճառում նաև հենց իրենց՝ կոլտնտեսականներին, որոնք կորցնում են շատ աշխօրեր։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ ռեսպուբլիկայի քաղաքների կոլտնտեսային առևտրի ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալի մեջ զգալի տեղ է գրավում կոլտնտեսականների կողմից վաճառվող գյուղատնտեսական մթերքների բաժինը։ Այդ

բացատրվում է ո՛չ միայն կոլտնտեսականների անձնական տնտեսությունների առկայությամբ, այլև այն բանով, որ աշխօրերի դիմաց կոլտնտեսականներին վճարում են ավելի շատ մթերքներ, քան դրամ։ Նման դրությունը կոլտնտեսականների մոտ առաջացնում է գյուղատնտեսական մթերքների ավելցուկների զգալի աճ և ստիպում նրանց կտրվել հանրային աշխատանքից ու վաճառքի տանել այդ ավելցուկները։ Լավ է, իհարկե, երբ այդ մթերքները հանձնվում են կոմիսիոն առևտրի կազմակերպություններին։ Բայց, ցավոք սրտի, կոմիսիոն առևտրի շատ կազմակերպություններում եղած թերությունները իջեցրել են նրանց հեղինակությունը կոլտնտեսությունների և կոլտնտեսականների աչքում. վերջիններս գերադասում են իրենք տանել այդ մթերքները քաղաքի շուկաները, քան թե հանձնել կոմիսիոն առևտրի տեղական կազմակերպություններին։ Այդ կազմակերպությունները շատ դեպքերում ժամանակին չեն մարում կոլտնտեսությունների և կոլտնտեսականների հետ ունեցած պարտքերը և ձգձգում են վճարումները։ Հաճախ գյուղատնտեսական լավորակ մթերքները վատ պահպանելու և ժամանակին չիրացնելու հետևանքով իջնում է նրանց որակը. ուստի պահանջում են վերանայել մինչև այդ պայմանագրով նախատեսված գները։ Նման երևույթը ազդում է կոլտնտեսությունների դրամական եկամուտների մինչև այդ նախատեսված չափերի վրա. գների իջեցման հետևանքով վնասվում են միայն կոլտնտեսություններն ու կոլտնտեսականները։ Ահա այդ պատճառով, չնայած կոմիսիոն առևտրի որոշակի զարգացման, այնուհանդերձ դանդաղ է մեծանում նրա տեսակարար կշիռը կոլտնտեսային առևտրի շրջանառության մեջ։ Ներկայումս այն չի գերազանցում 15 տոկոսից։ Հատկապես ցածր է կոմիսիոն առևտրի մասնակցությունը կոլտնտեսականների գյուղատնտեսական մթերքների ավելցուկների իրացմանը։ Այսպես, օրինակ, 1958 թվականին կոմիսիոն առևտրի կազմակերպությունները վաճառքի են հանել ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների անդամների գյուղատնտեսական մթերքների ավելցուկների ոչ ավելի, քան 10 տոկոսը։

Պետք է ամեն կերպ բարելավել կոմիսիոն առևտրի վիճակը, բարձրացնել նրա հեղինակությունը և դերը։ Կոմիսիոն առևտուրն ունի խոշոր ժողովրդատնտեսական նշանակություն և զարգացման մեծ հեռանկարներ։ Այն հնարավորություն է տալիս ավելի կազմակերպված ու մինիմալ ծախսերով իրացնել գյուղատնտեսական մթերքների ավելցուկները, ազատել կոլտնտեսություններն ու կոլտնտեսականներին այդ մթերքները քաղաքային շուկաները տանելու անհրաժեշտությունից ու պայմաններ ստեղծել աշխատանքային ռեսուրսները հանրային տնտեսության մեջ ավելի ռացիոնալ օգտագործելու համար։ Պետք է պլանավորել գյուղատնտեսական մթերքների ավելցուկների իրացման գործը, ներգործել կոլտնտեսային առևտրի գների վրա։

Կոլտնտեսային առևտրի զարգացման ու կազմակերպվածության բարձրացման նպատակով անհրաժեշտ է, որպեսզի ռեսպուբլիկայի առևտրի կազմակերպությունները ընդլայնեն կոլտնտեսությունների հետ պայմանագրեր կնքելու պրակտիկան։ Պայմանագրերի այդպիսի կապերի հետագա զարգացումն ավելի ակտուալ է դառնում կոլտնտեսություններում վարձատրման դրամական ձևին անցնելու հետևանքով, քանի որ գնալով ավելանալու են գյուղատնտեսական մթերքների ավելցուկները։ Գյուղատնտեսական մթերքների ավելցուկների սիստեմատիկ աճը միաժամանակ պահանջում է ընդլայնել կոլտնտեսու-



թյուններում մթերքների պահպանման, նրանց նախնական վերամշակման նյութա-տեխնիկական բազան։ Այս տարվա առատ բերքը մի անգամ ևս ապացուցեց նման ձեռնարկությունների շտապ կառուցման անհրաժեշտությունը։ Այդպիսի ձեռնարկությունները անհրաժեշտ է կառուցել, հատկապես, քաղաքներից հեռու գտնվող շրջաններում։ Կոլտնտեսություններում արտադրական ձեռնարկությունների կառուցումը մեզ հնարավորություն կտա ավելի լավ կազմակերպելու քաղաքային բնակչության մատակարարման գործը, խթանելու կոլտնտեսային արտադրության ընդլայնմանը։

***

Սովետական առևտրի զարգացման կարևոր պայմաններից մեկը նրա նյութա-տեխնիկական բազայի ընդլայնումն ու կատարելագործումն է։ Սովետական առևտրի նյութա-տեխնիկական բազայի մեջ մտնում են այն բոլոր միջոցները (առևտրական ցանցը, հասարակական սննդի ձեռնարկությունները, պահեստային տնտեսությունը, առևտրի տրանսպորտային միջոցները, կշռաչափային ապարատներն ու զանազան գործիքները, սառնարանային սարքավորումներն ու ապրանքների պահպանման անհրաժեշտ հարմարանքները և այլն), որոնք անհրաժեշտ են սովետական առևտրի հիմնական ֆունկցիայի իրականացման՝ ապրանքներն արտադրությունից սպառողներին հասցնելու համար։

Առևտրական ցանցի նյութա-տեխնիկական հագեցվածության աստիճանը կարող է խթանել կամ կաշկանդել ապրանքաշրջանառության աճը։ Որքան բարձր է առևտրի նյութա-տեխնիկական հագեցվածությունը, այնքան շատ հնարավորություններ են ստեղծվում շրջանառության պրոցեսի արագացման, ապրանքային կորուստների կանխման, սովետական սպառողներին ավելի լավ սպասարկելու համար։

Հետպատերազմյան տարիներին ապրանքաշրջանառության աճի հետ միասին բարելավվեց սովետական առևտրի նյութա-տեխնիկական բազան, զգալի չափով ընդարձակվեցին մանրածախ առևտրի ու հասարակական սննդի ձեռնարկությունների ցանցը, պահեստային տնտեսությունը, դրանք հագեցվեցին նորագույն տեխնիկայով։ 1940 թվականի վերջին ռեսպուբլիկայում կար մանրածախ առևտրի 2710 ձեռնարկություն, 1958 թվականի վերջին՝ 4087։ Այդ նույն ժամանակաշրջանում հասարակական սննդի ձեռնարկությունների թիվը 562-ից աճեց մինչև 953-ի, կամ 70 տոկոսով։ Առևտրի մանրածախ ցանցի ընդարձակման շնորհիվ պակասեց մեկ կետի բեռնվածությունը։ Եթե 1940 թվականին ռեսպուբլիկայի մեկ առևտրական կետին ընկնում էր 487 մարդ, ապա 1958 թվականին ընկավ 432 մարդ։ Չնայած պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ցանցի զգալի աճին, այնուհանդերձ այդ աճը ետ է մնում ապրանքաշրջանառության ընդլայնման տեմպերից։ 1958 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայի պետական ու կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառությունը (առանց հասարակական սննդի) համադրելի գներով աճեց մոտ 2,2 անգամ. մինչդեռ մանրածախ ցանցն այդ նույն ժամանակաշրջանում ընդլայնվեց միայն 51 տոկոսով։ Նման դրությունն անկասկած կարող է անդրադառնալ բնակչության սպասարկման որակի վրա, ավելացնելով առևտրա-

կան ցանցի մեկ միավորի բեռնվածությունն ապրանքաշրջանառության տեսակետից։

Վերջին տարիներին ընդարձակվեց նաև առևտրի առաջադիմական ձևերին պատկանող ինքնասպասարկման ձեռնարկությունների, առանց վաճառողի ու ապրանքների բաց ցուցադրման ձևով վաճառքի կազմակերպման խանութների ու սեկցիաների ցանցը։ Առևտրի առաջադիմական ձևերի էֆեկտիվությունն ապրանքաշրջանառության զարգացման, շրջանառության ծախսերի կրճատման ու բնակչության սպասարկման կուլտուրայի բարձրացման բնագավառում, ապացուցված է արդեն վերջին մի քանի տարիների փորձով։ Ուստի այդ ձևերն ունեն զարգացման մեծ հեռանկարներ, որոնց պետք է անցնել հենց այժմվանից։ Առևտրի այդ առաջադիմական ձևերը կարևոր դեր կարող են խաղալ բնակչության վերադաստիարակման գործում։ Սովետական ժողովուրդը թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը և առևտրի առաջադիմական այս ձևերը, կարելի է ասել, ապագա կոմունիստական հասարակարգի բաշխման կետերի սաղմնային ձևերն են։ Չէ՞ որ ժամանակակից ինքնասպասարկման ձեռնարկություններում ու առանց վաճառողի խանութներում մնացել է միայն ապրանքի առք ու վաճառքի հետ կապված մասնակի գործարքը։ Կոմունիզմի բարձրագույն փուլում ապրանքա-դրամային հարաբերությունների վերացման հետ միասին կվերանա նաև այդ գործարքը և հասարակության անդամները նման կետերից կվերցնեն իրենց անհրաժեշտ սպառարժեքները։

Ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով նախատեսվում է 1959—1965 թթ. ՍՍՌՄ-ում կառուցել 90 հազար խանութ, հասարակական սննդի 64 հազար ձեռնարկություն։ Հայկական ՍՍՌ պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ցանցը նախատեսվում է ընդլայնել 22,6 տոկոսով։ Եթե 1958 թվականի մանրածախ ցանցի ձեռնարկությունների թիվը ռեսպուբլիկայում կազմում էր 4087, ապա 1965 թվականին այն կհասնի 5014-ի։ Այդ նույն ժամանակաշրջանում հասարակական սննդի ձեռնարկությունների թիվը ռեսպուբլիկայում 1958 թվականի 913-ից, 1965 թվականին կհասնի 1357-ի կամ կաճի 45,5 տոկոսով։

Հատկանշական է այն, որ յոթնամյակում առևտրական ցանցի ընդլայնումը ռեսպուբլիկայում տեղի կունենա գլխավորապես խոշոր ձեռնարկությունների կառուցման ու նրանցում բանվորական տեղերի զգալի ավելացման հաշվին։ Այսպես, օրինակ, ռեսպուբլիկայի Պետպլանի նախնական տվյալներով 1959—1965 թթ. մանրածախ առևտրի ցանցում բանվորական տեղերի թիվը կավելանա մոտ 80 տոկոսով, իսկ հասարակական սննդի ձեռնարկություններում հաճախորդների սպասարկման տեղերի թիվը՝ 75 տոկոսով։ Յոթնամյակի տարիներին ռեսպուբլիկայում կկառուցվեն ու շահագործման կհանձնվեն մի շարք խոշոր առևտրական ձեռնարկություններ, ինչպես, օրինակ, Լենինականի ունիվերմագը, Երևանի «Մանկական աշխարհ» ունիվերմագը և այլն։ Զգալիորեն կընդարձակվի առևտրի պահեստային տնտեսությունը և այն կհագեցվի նորագույն տեխնիկական սարքավորումներով ու հարմարանքներով, որոնք կապահովեն ժողովրդական սպառման ապրանքների բարձրորակ պահպանումը։ Նախատեսվում է 1959—1965 թթ. ռեսպուբլիկայում կառուցել արդյունաբերական ու մթերային ապրանքների 151 պահեստ, բանջարեղենի 118 պահեստ և 125 սառցարան։ Առևտրի նյութա-տեխնիկական



բազայի ընդլայնման, նոր օբյեկտների կառուցման համար, միայն ռեսպուբլիկայի Առևտրի մինիստրության գծով 1959—1965 թթ. կապիտալ ներդրումները կկազմեն 188,5 միլիոն ռուբլի (1955 թ. հուլիսի 1-ի գներով), որը մոտ 2,3 անգամ կգերազանցի 1952—1958 թթ. կապիտալ ներդրումների ծավալը։ Հայաստանի սպառողական կոոպերացիայի գծով յոթնամյակում կապիտալ ներդրումները կկազմեն 257 միլիոն ռուբլի, կամ 119 միլիոն ռուբլով շատ, քան նախորդ յոթ տարիներում ունեցած կապիտալ ներդրումների ծավալն էր։

Սովետական առևտրի նյութա-տեխնիկական բազայի ընդարձակումը և բարելավումը հնարավորություն կտան է՛լ ավելի բարձրացնելու բնակչության սպասարկման կուլտուրան, նրա կենսամակարդակը, խթանելու սովետական առևտրի ապրանքաշրջանառության հետագա աճը։ Առևտրի առաջադիմական ձևերի մեջ լայնորեն կծավալվի հասարակական սննդի ձեռնարկություններից ճաշեր ու կիսաֆաբրիկատներ տուն բաց թողնելու, խանութներից ապրանքներ տուն տանելու պրակտիկան։ Մեծ չափերով կընդարձակվի ավտոմատների ցանցը, որը հնարավորություն կտա է՛լ ավելի կրճատելու բնակչության սպասարկման ժամանակը։

Յոթնամյակում սովետական առևտրի աննախընթաց զարգացումը առևտրի աշխատողներին պարտավորեցնում է ապրանքաշրջանառության կազմակերպման հետագա բարելավման միջոցով բարձրացնել բնակչության սպասարկման կուլտուրան, խոր ու բազմակողմանիորեն ուսումնասիրել նրա աճող պահանջմունքները, արտադրության վրա առևտրի ներգործման ուժեղացման ճանապարհով պահանջել արդյունաբերական ձեռնարկություններից՝ արտադրել և առևտրական ցանցին հանձնել բնակչության պահանջարկը բավարարող ապրանքներ։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակակից էտապում է՛լ ավելի է բարձրանում սովետական առևտրի դերն առանձին վարչական շրջանների, քաղաքի և գյուղերի միջև տնտեսական կապերի ուժեղացման, գյուղատնտեսության արտադրության վերելքին խթանելու, սովետական ժողովրդի մշտապես աճող պահանջմունքներն առավել լրիվ բավարարելու, նրան անհրաժեշտ ապրանքներ ժամանակին մատակարարելու գործում։ Սովետական առևտրի կազմակերպությունների ու ձեռնարկությունների աշխատանքի որակի հետագա բարձրացումը, ապրանքաշրջանառության գիտական պլանավորումն ու կազմակերպումը կարող են խոշոր դեր խաղալ սոցիալիստական ընդլայնված վերարտադրության տեմպերի հետագա բարձրացման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, բաշխման սոցիալիստական սկզբունքից կոմունիստական սկզբունքին անցումն ապահովելու գործում։

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՈՐՈՇ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐՆԵՐ

**Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ**

1959 թվականի նոր տարվա նախօրյակին, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու գործում աշխատավորների ձեռք բերած հաջողությունների, պետությանը բամբակի, շաքարի ճակնդեղի, հացահատիկի, մսի, կաթի և բրդի հանձնման պլանների կատարման և գերակատարման համար Հայկական ՍՍՌ-ն պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Բարձր պարգևի շնորհումը խորապես հուզեց և ուրախացրեց մեր ռեսպուբլիկայի աշխատավորներին։ Ոգեշնչված իրենց անձնվեր աշխատանքի բարձր գնահատականով՝ Հայաստանի գյուղատնտեսության և մյուս բնագավառի աշխատողները պարտավորվեցին չխնայել իրենց ուժերը նոր, է՛լ ավելի նշանակալից հաջողություններ ձեռք բերելու և դրանով իսկ այդ մեծ պատվին միշտ արժանի լինելու համար։

Այս տարվա գարնանը կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողների ուժերով տնկվեց 2751 հեկտար խաղողի և պտղատու այգի։

Ընթացիկ տարում ստացվեց խաղողի առատ բերք, կոլտնտեսություններում և սովխոզներում ավելացավ անասունների գլխաքանակը։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորների անձնվեր աշխատանքի լավագույն արտահայտությունը արդյունաբերության ընթացիկ տարվա պլանի կատարման արդյունքներն են. տարվա պլանը կատարվել է ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 16-ին։ Արտադրության ծավալը անցյալ տարվա միևնույն ժամանակամիջոցի համեմատությամբ մեծացել է 11,3 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը, ձեռնարկությունների տեխնիկական հագեցվածության ուժեղացման շնորհիվ, գերակատարվել է 4 տոկոսով։

Պարտիական կազմակերպությունների կյանքում 1959 թվականը բնութագրվում է պարտիական լայն մասսաների քաղաքական և ստեղծագործական ակտիվության հետագա ծավալմամբ, յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու համար մղվող համաժողովրդական պայքարում նրանց կազմակերպական դերի բարձրացմամբ։ Գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկներում, կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս կազմակերպություններում քաղաքական մեծ վերելքի պայմաններում կոմունիստները և բոլոր աշխատավորները քննարկեցին ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները և ՍՄԿՊ ԿԿ-ի Հունիսյան պլենումի արդյունքները։

Քննարկման ընթացքում աշխատավորները բազմաթիվ արժեքավոր առաջարկություններ արին և ցանկություններ հայտնեցին։ Յուրաքանչյուր բանվոր,



կոլտնտեսական, գիտնական, ինժեներ, գյուղատնտես ձգտում է իր բոլոր ուժերը, իր ամբողջ փորձը ի սպաս դնել յոթնամյակի հոյակապ խնդիրների կատարմանը։

Պարտիական կազմակերպությունների գործունեության հետագա ակտիվացման և պարտիական հսկողության ձևերի աշխուժացման գործում մեծ դեր խաղաց ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի հունիսի 26-ի որոշումը՝ «Արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում ձեռնարկությունների ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտկազմակերպությունների կողմից վերահսկելու իրավունքն իրականացնող հանձնաժողովներ ստեղծելու մասին»։ Այդ որոշման կատարումը զգալիորեն բարձրացրեց պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը պետական պլանների կատարման գործում, ուժեղացրեց կոմունիստների ակտիվությունը, ավելի ընդլայնեց հասարակական հսկողությունը։

Ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպություններում ստեղծված է 1229 հանձնաժողով, որոնցում ընդգրկված է 5300 կոմունիստ։ Հանձնաժողովները ակտիվ կերպով խորամուխ են լինում արտադրության զանազան բնագավառներում, հայտաբերում չօգտագործված ռեզերվներ, առաջարկություններ մտցնում արտադրանքի որակի լավացման և ինքնարժեքի իջեցման, նոր տեխնիկայի ներմուծման, ձեռնարկությունների և նրանց առանձին տեղամասերի աշխատանքների բարելավման ուղղությամբ։

Շատ պարտիական կազմակերպություններ, չնայած կարճ ժամկետին, արդեն դրական փորձ են ձեռք բերել այդ գործում։ Դրանցից են՝ ավտոդողերի, ալյումինի, Կիրովի, Ձերժինսկու անվան գործարանների, ձեթ-օճառ կոմբինատի և մյուս գործարանների պարտիական կազմակերպությունները։

Ժողովրդական լայն մասսաների պայքարը յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու համար արտահայտվեց կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների շարժման ծավալմամբ։ Այդ հայրենասիրական նախաձեռնությունը, որը սոցիալիստական մրցության բարձր աստիճանն է, գնալով ավելի է ծավալվում։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել սոցիալիստական մրցության ծավալման ուղղությամբ։ Այժմ ռեսպուբլիկայում կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարում է ավելի քան 800 կոլեկտիվ, որոնցում աշխատում են մոտավորապես 8500 հոգի։ Արդեն 90 բրիգադա կրում է այդ պատվավոր կոչումը։

Հայրենասիրական այդ նոր շարժման ծավալման ուղղությամբ աչքի ընկնող աշխատանք է կատարել Կիրովական քաղաքի պարտիական կազմակերպությունը։ Տարվա սկզբից այնտեղ կար կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարող 8 բրիգադա։ Պարտիական կազմակերպությունների սիստեմատիկ աշխատանքի շնորհիվ այդ կոչման համար պայքարող բրիգադաների թիվը քաղաքում այժմ զգալի կերպով աճել է։ Ներկայումս այդ պատվավոր կոչման համար պայքարում են 38 բրիգադա և մեկ ագրեգատի, մեկ տեղամասի ու մեկ ցեխի կոլեկտիվներ։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները հաջողությամբ կենսագործելու համար ստեղծագործական պայքարի նոր ձև է Վալենտինա Գագանովայի հետևորդների հայրենասիրական շարժումը։ Հայաստանի պարտիական կազմա-

կերպությունները որոշ աշխատանք են կատարել այդ շարժման ծավալման ուղղությամբ։ Բայց այն ռեսպուբլիկայում դեռևս մեծ թափ չի ստացել և այդ ուղղությամբ անհրաժեշտ է բավականին աշխատանք կատարել։

Ռեսպուբլիկայի աշխատավորների պայքարը յոթնամյա պլանի կատարման համար գյուղատնտեսության բնագավառում իր արտահայտությունը գտավ «Հարուստ հեկտարի համար» հայրենասիրական շարժման մեջ։ Ռեսպուբլիկայում այդ շարժման սկիզբը դրեց Արտաշատի շրջանի Շահումյան գյուղի կոլտնտեսության դաշտավարական բրիգադան՝ Գ. Բարսեղյանի ղեկավարությամբ։

Յոթնամյակի առաջին տարվա առաջադրանքների հաջող կատարումը արդյունք է այն բանի, որ մեր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն ամեն կերպ բարձրացնում են կոմունիստների ավանգարդային դերը արտադրության մեջ։ Դա բացահայտորեն դրսևորվել է սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում։

Հոկտեմբերի 1-ից նոյեմբերի 15-ը սկզբնական պարտիական կազմակերպություններում տեղի ունեցան հաշվետու-ընտրական ժողովներ, որոնք գործարար մթնոլորտում քննարկեցին արտադրության հետագա վերելքի, յոթնամյակի առաջին տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու հարցերը։ Արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի և կառույցների պարտիական ժողովներում հատուկ ուշադրություն է հատկացվել ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի առաջ քաշած խնդիրների լուծմանը։ Կոլտնտեսային պարտիական կազմակերպություններում կոմունիստները խոսում էին գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, դաշտային բոլոր աշխատանքները ժամանակին ավարտելու, անասունների ձմեռումը հաջող կազմակերպելու և այլ հարցերի մասին։

Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները ընդհանրացրին պարտիական կազմակերպությունների աշխատանքի դրական փորձը։ Ժողովներում ներկա գտնվող ՍՄԿՊ անդամների և անդամության թեկնածուների 40 տոկոսը ելույթ ունեցավ։ Բայց կոմունիստների ակտիվությունն արտահայտվեց ոչ միայն դրանում, այլ թերությունների նկատմամբ նրանց անհաշտության, սուր և սկզբունքային քննադատության մեջ։

Պետական պլանների կատարման նկատմամբ մեծ հոգատարությամբ էին տոգորված կոմունիստների ելույթները՝ Կիրովի անվան գործարանի պարտիական կազմակերպության կոնֆերանսում։ Գործարանի կոլեկտիվը ամենայն իրավամբ հպարտանում է իր հաջողություններով։ Հաշվետու ժամանակաշրջանում գործարանը յուրաքանչյուր եռամսյակում ռեսպուբլիկայի ժողտնտխորհի ձեռնարկությունների մեջ գրավել է առաջին տեղը և արժանացել Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և ՀԱՄԽ-ի սահմանած փոխանցիկ կարմիր դրոշին։ Գործարանում լուրջ աշխատանք է տարվում նոր տեխնիկայի արմատավորման, արտադրական պրոցեսների ավտոմատացման ուղղությամբ. 1—7 ցեխում դրված է նոր անխափանիչ գեներատոր, 1—8 ցեխում արմատավորված է երկու հզոր ռեակտոր, 11—5 ցեխում բնական գազի գործածությանն անցնելու համար վերակառուցված են բոլոր կաթսաները։ Գործարանի կոլեկտիվը հաջողությամբ է լուծել ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1958 թվականի հուլիսի 23-ի որոշմամբ առաջ քաշված արտադրության համար նոր հզորությունների ստեղծման խնդիրները, որոնք



հնարավորություն տվին հասնելու արտադրության 1961 թվականին նախատեսված մակարդակին։

Նշելով նվաճումները, զեկուցողը՝ գործարանի պարտկազմակերպության քարտուղար Ռ. Գալստյանը և ելույթ ունեցողները կանգ առան ադմինիստրացիայի, պարտիական կոմիտեի, ցեխային պարտկազմակերպությունների գործունեության մեջ գոյություն ունեցող թերությունների վրա։ Կոմունիստները սուր քննադատության ենթարկեցին արտադրանքի առանձին տեսակների՝ կաուստիկ սոդայի, ացետիլենի, չոր սոդայի, կարբինոլինի ինքնարժեքի բարձրացման փաստը։ Դրա պատճառներից մեկը համարվեց այն, որ կաուստիկ սոդայի և 1—8 ցեխերի պարտբյուրոների քարտուղարներ Ա. Գասպարյանը և Ն. Մկրտչյանը, ինչպես նաև 1—7, 11—4 ցեխերի և այլ պարտիական կազմակերպություններ չեն ստուգել ցեխային պարտկազմակերպությունների ժողովներում այդ հարցի մասին ընդունված որոշումների կատարումը։ Գործարանի տեխնիկական ղեկավարությունը, համապատասխան բաժինները և գլխավոր ինժեներ Ն. Կարապետյանը միջոցներ չեն ձեռնարկել արտադրանքի այդ տեսակների ինքնարժեքն իջեցնելու ուղղությամբ։

Ակտիվ և գործնականորեն անցավ Արտաշատի շրջանի Ներքին Դվին գյուղի «Շինարար» կոլտնտեսության պարտկազմակերպության ժողովը։ Կոլտնտեսության պարտկազմակերպությունը արտադրության մեջ ճիշտ է դասավորել կոմունիստների ուժերը։ 43 պարտանդամներից և անդամության թեկնածուներից 36-ը անմիջականորեն աշխատում են դաշտավարական բրիգադաներում և անասնապահական ֆերմաներում։ Եվ այդ տալիս է իր դրական արդյունքները։

Ներքին Դվինի կոլտնտեսության պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում կոմունիստները օրինական հպարտությամբ ամփոփեցին իրենց հաջողությունների արդյունքները, վերլուծեցին պարտբյուրոյի գործունեությունը։ Նրանք պարտբյուրոյի քարտուղար Ա. Աբրահամյանի զեկուցումը լրացրեցին նոր փաստերով, բացահայտեցին գոյություն ունեցող թերությունները և մի շարք կոնկրետ առաջարկություններ մտցրին հետագայում արտելի աշխատանքները է՛լ ավելի բարելավելու ուղղությամբ։

Էջմիածնի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսության կոմունիստները իրենց կազմակերպության ժողովում հարց բարձրացրին կոլտնտեսության միջոցներով գիշերօթիկ դպրոց, մանկապարտեզ, մսուր, բաղնիք և այլ կուլտուր-կենցաղային օբյեկտներ կառուցելու։

Հաշվետու-ընտրական ժողովները կազմակերպված և բարձր մակարդակով անցան ավտոդողերի, կաբելի գործարանների, գինու կոմբինատի, Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի, Լենինականի գուլպայի ֆաբրիկայի, Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի, Արտաշատի շրջանի Ջրվաշեն, Արթիկի շրջանի Մեծ Մանթաշ գյուղերի կոլտնտեսությունների և շատ այլ պարտկազմակերպություններում։

Սակայն բոլոր տեղերում չէ, որ հաշվետու-ընտրական ժողովներն անցան պահանջվող գաղափարական-քաղաքական և կազմակերպչական մակարդակով։ Եղան դեպքեր, երբ առանձին պարտբյուրոներ և նրանց քարտուղարները ձևականորեն մոտեցան հաշվետու-ընտրական ժողովների անցկացմանը, կոմունիստների առաջ հանդես եկան մակերեսային զեկուցումներով, իսկ պարտիայի շրջկոմները, քաղկոմները չհետևեցին այդ ժողովների նախապատ-

րաստմանը։ Այդպես ինչո՞վ կարելի է բացատրել այն փաստը, որ Շահումյանի շրջանի Ներքին Շենգավիթ գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղար Ս. Ավագյանը ժողովում հանդես եկավ անցյալ տարվա հաշվետու զեկուցումով։

Հայտնի է, որ քննադատության և ինքնաքննադատության մակարդակը շատ բանով կախված է այն բանից, թե ինչպիսի խորությամբ են շարադրված զեկուցումները, ինչպիսի սրությամբ և սկզբունքայնությամբ են նրանցում արծարծված քննարկման դրվող հարցերը։ Այնտեղ, ուր պարտբյուրոները և նրանց քարտուղարները չեն կատարել այդ կարևոր պահանջը, ժողովներն անցել են անշուք, անհետաքրքիր։ Հենց այդպես են անցել ժողովները սպորտային ընկերությունների միություններում և կազմակերպություններում, Երևանի Թեթև արդյունաբերության տեխնիկումում, ապակե-տարայի գործարանում, Կոտայքի շրջանի Քյանքյան գյուղի կոլտնտեսությունում և այլն։

Սպիտակի շրջանի Սարամեջ գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղար Հ. Թովմասյանը իր զեկուցումը պատրաստեց ժողովից մեկ օր առաջ։ Նա գրեթե ոչինչ չասաց հաշվետու ժամանակաշրջանում պարտկազմակերպության գործունեության մասին։ Պարտբյուրոյի թույլ աշխատանքի հետևանքով անցյալ հաշվետու-ընտրական ժողովի որոշումը մնաց չկատարված։ 22 կոմունիստներից արտադրության մեջ աշխատում են միայն 7-ը։ Փոխանակ ինքնաքննադատաբար, ազնվությամբ բացատրելու թերությունների պատճառները, զեկուցողը իր ամբողջ ժամանակը նվիրեց բյուրոյի անդամների անձնական փոխհարաբերություններին։ Պատահական չէ, որ ժողովը բյուրոյի աշխատանքը գնահատեց անբավարար։ Անբավարար գնահատվեցին Ստալինյան շրջանի տրիկոտաժի արտելի, Երևանի № 2 հացի գործարանի, «Պիոներ» ամսագրի խմբագրության, Իջևանի շրջանի Փոլադ գյուղի կոլտնտեսության, Ղուկասյանի շրջանի Թազագյուղի և Ջույգաղբյուրի կոլտնտեսությունների պարտբյուրոների և պարտկազմակերպությունների քարտուղարների աշխատանքները։

Սիսիանի շրջանի «3-րդ Ինտերնացիոնալ» կոլտնտեսությունը այս տարի գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրության գործում, անցյալ տարվա համեմատությամբ, ետ մնաց։ Ձգձգվեց հացահատիկի, ծխախոտի բերքահավաքը, իսկ պարտբյուրոն ոչինչ չարեց գոյություն ունեցող թերությունները վերացնելու համար։ Պատահական չէ, որ պարտբյուրոյի աշխատանքը ենթարկվեց կոմունիստների խիստ քննադատության։

Վերևում նշված փաստերը վկայում են, որ պարտկազմակերպությունների առանձին քարտուղարներ և բյուրոյի անդամներ պատասխանատվություն չեն զգում կոմունիստների առաջ, որոնք իրենց ընտրել են։

Կենսագործելով կադրերի հետ տարվող աշխատանքների բարելավման մասին պարտիայի ցուցումները, կոմունիստները պարտբյուրոների կազմում ընտրեցին առավել ձեռներեց, գործիմաց մարդկանց։ Հատուկ ուշադրություն հատկացվեց նոր, երիտասարդ կադրերի և կանանց առաջքաշմանը։

Ընթացիկ տարում սկզբնական պարտիական կազմակերպությունների նոր քարտուղարները կազմում են նրանց ընդհանուր թվի 30,9 տոկոսը։ Զգալիորեն ավելացել է պարտկազմակերպությունների կին քարտուղարների թիվը։ Այժմ նրանք կազմում են 17,7 տոկոս, անցյալ տարվա 15,4 տոկոսի դիմաց։ Բյու-



րոյի անդամների մեջ կանանց թիվը կազմում է ընդհանուր կազմի 15,8 տոկոսը, որը ևս ավելի է քան անցյալ տարի։

Բարելավվել է քարտուղարների որակական կազմը ըստ կրթության։ Ընթացիկ տարում պարտկազմակերպությունների քարտուղարների 33,6 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, 1958 թվականի 31,9 տոկոսի դիմաց։ Նրանց մեջ կան արդյունաբերության, գյուղատնտեսության շատ մասնագետներ՝ ինժեներներ, գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ։ Սկզբնական պարտիական կազմակերպությունների կազմում կա 233 բանվոր, 618 կոլտնտեսական։

Սակայն պարտիայի ոչ բոլոր շրջկոմներն են, որ պատշաճ ուշադրություն են հատկացրել կին կադրերի առաջքաշմանը։ Որոշ շրջաններում (Վեդի, Կրասնոսելսկ, Մարտունի, Ստեփանավան, Հոկտեմբերյան) չի ավելացել կին քարտուղարների թիվը, իսկ առանձին շրջաններում (Սիսիան, Մեղրի, Ալավերդի) նույնիսկ պակասել է։

Ընթացիկ տարվա հաշվետու-ընտրական ժողովների թերություններից է նաև այն, որ շատ սկզբնական պարտկազմակերպություններ դեռևս չեն կարողանում իրենց աշխատանքի բնույթից ելնող, կոնկրետ որոշումներ կայացնել, որոնք պետք է ուղենիշ լինեն նրանց հետագա գործունեության համար։

Հաշվետու-ընտրական ժողովներում քիչ ուշադրություն է նվիրվել անասնապահության կուլտուրայի բարձրացման, անասունների ցեղի բարելավման, աշխատատար պրոցեսների մեքենայացման և այլ հարցերին։

Ժողովներում քիչ է խոսվել միջկոլտնտեսային շինարարության մասին. մինչդեռ ռեսպուբլիկայի շրջանների մեծ մասում քիչ աշխատանք է կատարվել այդ ուղղությամբ։

Կոլտնտեսությունների և սովխոզների պարտկազմակերպությունների ժողովներում բավարար չափով չեն անդրադարձել դպրոցների, մանկապարտեզների, մանկամսուրների, բաղնիքների, լվացքատների, վարսավիրանոցների և այլ օբյեկտների շինարարության հարցերին։

Լուրջ թերություն պետք է համարել այն, որ պարտիայի շրջկոմները և քաղկոմները պահանջվող ուշադրություն չեն հատկացրել քաղաքային և շրջանային թերթերում հաշվետու-ընտրական ժողովների ընթացքի լուսաբանմանը։ Աղինի, Ամասիայի, Բասարգեչարի, Կրասնոսելսկի շրջանային թերթերը և Երևանի, Լենինականի քաղաքային մամուլը փորձնականորեն չեն վերլուծել առանձին պարտիական կազմակերպությունների աշխատանքը. չեն բացահայտել և ընդհանրացրել նրանց գործունեության ձևերն ու մեթոդները, նորը, առաջավորն ու արժեքավորը այդ աշխատանքում։

Հաշվետու-ընտրական ժողովներում պարտիական կազմակերպությունների կյանքի ու գործունեության վերաբերյալ լուրջ հարցեր են արծարծվել։ Կոմունիստները ի մի են բերել անցած տարվա ընթացքում պարտիական կազմակերպությունների ձեռք բերած հսկայական փորձը։ Անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունների կողմից ընդունված որոշումները, կոմունիստների արժեքավոր քննադատական դիտողությունները դրվեն պարտիական կազմակերպությունների ամենօրյա աշխատանքի հիմքում։

Ավարտելով հաշվետու-ընտրական ժողովները, սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է ծավալուն աշխատանք կատարեն և նորանոր հաջողություններով դիմավորեն ՀԿՊ XXI համագումարը։

---

# ՉԱՐԳԱՑՈՂ ԿԻՐՈՎԱԿԱՆԸ

***Լ. ԽԱՉԻԿՕՂԼՅԱՆ***

(Նոթեր Կիրովականի քաղաքային պարտիական կոնֆերանսից)

*Կոնֆերանսը սկսվելուց դեռ շատ առաջ բազմաթիվ պատգամավորներ ու հյուրեր սկսեցին հավաքվել քիմիական կոմբինատի գեղեցիկ զարդարված կուլտուրայի պալատում։ Ի՞նչն էր նրանց ստիպում այստեղ գալ այդքան վաղ, կոնֆերանսը բացվելուց համարյա մեկ ու կես ժամ առաջ։ Նրանք եկել էին, որպեսզի իրենց գործերի մասին պարտիական լուրջ խոսակցություն սկսելուց առաջ դիտեն այն պատուղները, որ ձեռք են բերվել կիրովականցիների ստեղծագործական աշխատանքով։*

*Իսկ դիտելու բան, իրոք որ շատ կա։ Կուլտուրայի պալատի ընդարձակ ճեմասրահում տեղավորված են ամենաբազմապիսի էքսպոնատներ՝ քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների արտադրանքի նմուշները։*

*Բոլորովին վերջերս քիմիական կոմբինատը յուրացրել է կորունդի՝ արհեստական թանկագին քարերի թողարկումը, որի այնքան սուր կարիքն են զգում երկրի արդյունաբերության շատ ու շատ ճյուղեր։ Ահա այդ քարերը՝ վառ ու կարմիր սուտակներ, մեղմ-կապտավուն ալեքսանդրիտներ, վարդագույն շափյուղաներ։ Դժվար թե անփորձ աչքը դրանք տարբերի բնական թանկագին քարերից։*

*Ացետատային մետաքսի գործարան։ Քաղաքում այդ գործարանը դեռ չկա, նրա կառուցումը նոր է սկսվել։ Բայց այստեղ նրա մասին խոսում, նրանով ապրում են բոլորը՝ փոքրից մինչև մեծը։ Քաղաքի կոմերիտմիությունը դպրոցներն ավարտած ավելի քան չորս հարյուր պատանիներ ու աղջիկներ է ուղարկել այդ նորակառույցը, որ խոշորագույններից մեկն է Սովետական Միության մեջ։ Այն համաժողովրդական նորակառույց է դառնում։ Եվ թեպետ դեռևս արտադրանք չի տալիս, բայց ամեն մի կիրովականցի գիտի, որ դա երկրին շատ պետքական ձեռնարկություն է լինելու, որ այն հռչակելու է իրենց քաղաքի անունը և ամբողջ մեր ռեսպուբլիկան։ Այդ ձեռնարկության մեծությունը պատկերացնելու համար կբերենք միայն մեկ թիվ. գործարանն օրական արտադրելու է այնքան մետաքսե մանվածք, որից կարելի է պատրաստել տասնյակ հազարավոր վերնաշապիկ։*

*Քիմիական արդյունաբերության Հայաստանի գիտահետազոտական ու նախագծային ինստիտուտի երիտասարդ կոլեկտիվը մշակել է նաև մի ուրիշ սինթետիկ մանրաթելի՝ «Նրանիտի» արտադրության տեխնոլոգիան, որը հիանալիորեն փոխարինում է բրդին։*

*Մեր ընթերցողները, իհարկե, շատ անգամ են լսել նորագույն ավտոմատ սարքերի, ապարատների, մեքենաների, հրաշք ավտոմատների, կամ, ինչպես*



*ասում են՝ «մտածող մեքենաների» մասին։ Բայց հազիվ թե շատերը գիտեն, որ այդպիսի սարքեր արտադրվում են նաև Կիրովական քաղաքում։*

*...Մարդկանց մի խումբ, խիտ շրջապատել է քունքերն արդեն փոքր-ինչ սպիտակած, ցածրահասակ, ամրակազմ մի մարդու և լարված ուշադրությամբ լսում է նրա պատմությունը։ «Ավտոմատիկա» գործարանի դիրեկտոր Լ. Այնաչյանն իր կոլեկտիվի նկատմամբ ոչ առանց հպարտության պատմում է, թե ինչպես կարճ ժամանակամիջոցում իրենց հաջողվեց երկրում առաջին անգամ յուրացնել ու կարգավորել այդ բարդ և ժողովրդական տնտեսության համար խիստ կարևոր էլեկտրոնային ավտոմատիկ սարքերի արտադրությունը։*

*— Հետաքրքրական է, թե որտեղ կարելի է կիրառել սրանք,— հարցնում է պատգամավորներից մեկը։*

*— Ավելի ճիշտ կլինի ասել՝ որտե՞ղ չի կարելի օգտագործել,— ժպտալով պատասխանում է դիրեկտորը։— Այս ունիվերսալ սարքերը շատ լայն կիրառում կունենան արդյունաբերական, քիմիական, մետալուրգիական, էլեկտրատեխնիկական և այլ ճյուղերի մեջ։*

*Թույլ և մենք մի քիչ ավելի մանրամասն ենք խոսում ցուցահանդեսի մասին, բայց բանն այն է, որ համընկնելով քաղաքային պարտիական կոնֆերանսի բացման հետ, ըստ էության այս ցուցահանդեսն ակնառու կերպով արտացոլում է այն ամենը, ինչ արել են Կիրովականի աշխատավորները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ հաշվետու ժամանակամիջոցում։ Բնորոշ է, որ ցուցահանդեսում ներկայացված արտադրանքի բոլոր նմուշներն առանց բացառության թողարկվել են վերջին տարվա ընթացքում։*

*Ծանոթանալով ցուցահանդեսի մյուս բաժիններին ևս, անձամբ տեսնում ես այն խոշոր աշխատանքը, որ կատարել են արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, գիտա-հետազոտական ու այլ հիմնարկությունների կոլեկտիվները յոթնամյակի առաջին տարում և համոզվում ես, որ քաղաքի կոմունիստներն ու բոլոր աշխատավորները անդադրում եռանդով պայքարում են մեր պարտիայի մեծ նախագծումների կենսագործման համար։*

*Այս առանձնապես զգացվում էր նաև կոնֆերանսում։*

*— Այսօր, մեր կոնֆերանսի բացման օրը,— ասում է զեկուցողը՝ պարտիայի քաղաքային կոմիտեի քարտուղար Յոլակ Բաղալյանը,— Կիրովականի արդյունաբերությունը ժամկետից 27 օր առաջ կատարեց արտադրանքի թողարկման տարեկան պլանը։*

*Կիրովականցիները ոչ միայն հաջողությամբ կատարեցին պետական պլանը, այլև մեծ չափով գերակատարեցին այն պարտավորությունները, որ ստանձնել էին եղբայրական Վրաստանի Բաթումի և Սուխումի քաղաքների աշխատավորների հետ կնքած սոցիալիստական մրցության պայմանագրերով և երկրին 25 միլիոն ռուբլու գերպլանային արտադրանք տվին։ Ըստ որում զգալիորեն գերակատարված են նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և կուտակումների առաջադրանքները։*



*Կիրովականն իրավամբ համարվում է մեր ռեսպուբլիկայի բուռն թափով աճող երիտասարդ արդյունաբերական կենտրոններից մեկը։ Քաղաքի երիտասարդությունը երևում է նրա տեխնիկայի վերջին խոսքով հագեցած գործա-*

*րաններով ու ֆաբրիկաներով, նրա գեղեցիկ, բարեկարգ փողոցներով, բնակելի թաղամասերով, բայց ամենագլխավորը՝ նրա մարդիկ են, որոնք ընդունակ են ստեղծագործական խոյանքների, ուժեր չեն խնայում առաջադրված նպատակին հասնելու համար:*

*Ահա թե ինչու, նրանցից շատերը առաջիններից մեկն էին ռեսպուբլիկայում, որ արձագանքելով Մոսկվայի տեսակավորող դեպոյի երիտասարդության մեծ նախաձեռնությանը՝ որոշեցին այսուհետև ապրել ու աշխատել կոմունիստաբար: Ահա թե ինչու, ինչպես նշեց զեկուցողը, կոմունիստական աշխատանքի բրիգադաների, ցեխերի կոչման համար պայքարողների շարքերն օրեցօր ավելի ու ավելի են ընդարձակվում: Եվ եթե այս տարվա սկզբին քաղաքում այդ պատվավոր կոչման համար պայքարող բրիգադաների թիվը միավորներով էր հաշվվում, ապա այժմ հասել է տասնյակների: Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարողների շարքերն ամեն ամիս ավելանում են նորանոր տեղամասերով, հերթափոխություններով ու ցեխերով:*

*— Ընթացիկ տարին ինչպես մեր ամբողջ երկրի, այնպես էլ Կիրովականի կյանքում նշանավոր տարի է.—այս միտքը կարմիր թելի պես անցնում էր և՛ զեկուցման մեջ, և՛ պատգամավորների ելույթներում: Յոթնամյակի առաջին տարին նշանավորվեց քաղաքի տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառների ոչ միայն քանակական, այլև որակական զգալի առաջընթացով՝ մասսաների նոր, մինչև այժմ չտեսնված ստեղծագործական նախաձեռնության ծավալումով, շատ ու շատ շարքային մարդկանց կողմից նորի, առաջավորի զգացումի դրսևորմամբ:*

*Առաջին հայացքից փոքրիկ, սովորական կարող էր թվալ այն փաստը, որի մասին շատ խոսեցին պատգամավորները, բայց որքա՜ն մեծ իմաստ է թաքնված նրա մեջ: Խոսքը վերաբերում է Կիրովականի Երիտասարդ ռացիոնալիզատորների և գյուտարարների ինստիտուտին: Ի՞նչ է ներկայացնում իրենից այդ ինստիտուտը, որի մասին իմացավ ամբողջ երկիրը: Վերջին ժամանակներս շատ պատանիներ ու աղջիկներ դպրոցներն ավարտելով եկել են արտադրություն: Նրանք գործի են անցել երիտասարդությանը հատուկ եռանդով ու թափով և աշխատում են առանց ձեռքերը ծալելու: Բայց նրանք ցանկանում են ավելին անել, ավելի լավ աշխատել: Իսկ դրա համար հարկավոր են գիտելիքներ, մանավանդ՝ գործնական գիտելիքներ: Եվ ահա ծնունդ է առնում մի նոր բան՝ Երիտասարդ ռացիոնալիզատորների և գյուտարարների ինստիտուտը, մի երևույթ, որը մեր առաջընթացի, նորի արմատավորման ցայտուն վկայությունն է: Բայց ամենանշանակալիցն այն է, որ այդ ինստիտուտն ամբողջովին ստեղծված է հասարակական սկզբունքներով: Արտադրության լավագույն մասնագետներն ու նորարարները շաբաթական երկու անգամ կանոնավորապես դասախոսություններ են կարդում, գործնական պարապմունքներ են ունենում դազգահների մոտ, երիտասարդներին օգնում են ձեռք բերելու գործնական գիտելիքներ, նորանոր պրոֆեսիաներ: Իսկ այսօր կոնֆերանսում պատգամավորներն իմացան քաղաքի երիտասարդության մի նոր արժեքավոր նախաձեռնության մասին, այն է՝ սեփական ուժերով կառուցել ու կահավորել ինստիտուտի շենքը:*

*...Կոնֆերանսի մասնակիցները չէին կարող չնկատել, որ ի տարբերություն անցյալ տարիների՝ այս կոնֆերանսում քննադատությունը դարձել է ավելի սուր, բովանդակալից ու նպատակասլաց: Բայց դա ամենևին էլ ոչ այն*



*պատճառով, որ թերությունները շատացել են, այլ նրա համար, որ կոմունիստների մեջ ավելի շատ պատասխանատվության զգացում է երևան եկել, նրանք սկսել են ավելի մեծ պահանջկոտություն ցուցաբերել իրենց և ուրիշների նկատմամբ: Օրինակ՝ տարվա ընթացքում քաղաքում քիչ բան չի արված տեխնիկական պրոգրեսի բնագավառում: Բայց և այնպես հաշվետու զեկուցման մեջ, ինչպես և պատգամավորների ելույթներում տեխնիկական պրոգրեսի բնագավառում կատարված աշխատանքից անբավականություն էր զգացվում: Եվ ինչպես չանհանգստանալ, երբ նույնիսկ այնպիսի մի առաջավոր ձեռնարկությունում, ինչպիսին է քիմկոմբինատը, երկար ժամանակ է, ինչ չեն կարողանում լուծել առաջավոր ցեխերից մեկի կոմպլեքսային ավտոմատացման հարցը: Ի դեպ, դրանում բավական մեղք ունի նաև ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի Քիմիական արդյունաբերության վարչությունը: Մի՞թե տրիկոտաժի ֆաբրիկայի ղեկավարների (դիրեկտոր Գ. Հակոբյան, գլխավոր ինժեներ Վ. Մանուկյան)՝ տեխնիկական պրոգրեսի նկատմամբ ունեցած անտարբերությամբ չպետք է բացատրել այն աննորմալ երևույթը, որ տեղադրված 7 կոնվեյերից 5 ագրեգատ օգտագործվում է սոսկ որպես... սովորական սեղան, թեև այդ ղեկավարները լավ գիտեն, որ ամեն մի ագրեգատը կարող է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել մոտ 25 տոկոսով:*

*Խոսք չկա, տարվա ընթացքում քաղաքում շատ բան է արված արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական և այլ կազմակերպությունների գործունեության ընդհանուր մակարդակի բարձրացման ուղղությամբ: Բայց կոմունիստները, ինչպես և պետք էր սպասել, իրենց գլխավոր ուշադրությունը կենտրոնացրին չլուծված խնդիրների վրա, մասնավորապես այն հարցերի վրա, որոնք կապված են ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշման հետ: Քաղաքում դեռ կան ձեռնարկություններ, որոնք չեն կարողացել ապահովել արտադրական առաջադրանքների կատարումը բոլոր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով: Թեև պարտիայի քաղկոմը քիչ չի զբաղվել, օրինակ, կարի ֆաբրիկայի և ավտոնորոգման գործարանի գործերով, բայց և այնպես նրանք չեն կատարել այս տարվա 11 ամսվա համախառն ու ապրանքային արտադրանքի պլանը: Մի ուրիշ օրինակ: Կիրովականի մեքենաշինական գործարանը երկրի սննդարդյունաբերության ձեռնարկություններին մի շարք կարևոր իրեր է մատակարարում: Մեծ չափով նրա ճշգրիտ, ներդաշնակ աշխատանքից է կախված ուրիշ շատ գործարանների հաջող գործունեությունը: Գործարանի ղեկավարները շատ լավ իմանալով այս, դեռևս այնքան էլ հոգ չեն տանում իրենց արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ: Կոնֆերանսն առանձին արդյունաբերական ձեռնարկությունների լուրջ թերությունը համարեց գոյություն ունեցող անհամաչափությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման և աշխատավարձի ֆոնդի ծախսման միջև:*

*Հայտնի է, թե մեր ժողովրդական տնտեսության համար ինչպիսի կարևոր նշանակություն ունի արտադրանքի թողարկումն ըստ սահմանված ասորտիմենտների: Թեև տարվա ընթացքում այդ կարևոր պահանջն ապահովող ձեռնարկությունների թիվը քաղաքում ավելացել է, բայց ամբողջությամբ վերցրած՝ այդ գործն այնքան էլ բարեհաջող վիճակում չէ:*

— Ամեն անգամ, երբ քայլում եմ իմ հայրենի քաղաքի փողոցներով, գործարանների ու ֆաբրիկաների, գիտական հիմնարկությունների ու կուլտուրայի օջախների նոր, գեղեցիկ շենքերի, բազմաթիվ բնակելի տների մոտով, իմ սիրտը լցվում է մեծ ուրախությամբ ու հպարտությամբ մեր մարդկանց նկատմամբ։—Այսպես սկսեց իր ելույթը քաղաքի հին բնակիչ, պատգամավոր Էդուարդ Կզարթմյանը։—Այո, մեր Կիրովականում շատ նոր ու լավ բան է երևան եկել մեկ տարվա ընթացքում։ Եվ մեզ ամենից ավելի ուրախացնում է այն, որ այդ ժամանակամիջոցում անհամեմատ աճել են մեր մարդիկ։ Ավելացել է մեր ինտելիգենցիան՝ գիտնականները, մասնագետները, աճում ու ամրապնդվում են առաջավոր բանվորների շարքերը։ Եվ որքան ցավալի է, որ այն ամբողջ լավի կողքին, որին մենք հասել ենք, մեր քաղաքի կյանքում դեռ քիչ չեն անհաճո երևույթները, այսպես կոչված՝ «մանրուքները»։

Միանգամայն հասկանալի է, որ ընկ. Կզարթմյանի ելույթը կոնֆերանսի պատգամավորների ջերմ արձագանքին արժանացավ։ Իրոք, մի՞թե կարելի է հանդուրժել, որ փողոցներից, ասենք, քիմկոմբինատի կուլտուրայի տան շուրջունի գեղեցիկ ցանկապատի կողքից մի քանի օր շարունակ ասֆալտի աղբը չի սրբվում։ Կամ, ասենք՝ քաղաքում երկար ժամանակ մի շարք փողոցների շինարարությունը չի ավարտվում։

Կոնֆերանսում խոսվեց քաղաքային պարտիական կազմակերպության գործունեության մեջ եղած ուրիշ շատ թերությունների մասին։ Դրանցից ամենագլխավորը, նշում էին պատգամավորները, այն է, որ դեռևս թույլ աշխատանք է տարվում մարդկանց հետ։ Շատ կազմակերպություններում մասսաների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ անբավարար աշխատանք է կատարվում։ Դատելով ըստ կազմակերպված դասախոսությունների, զեկուցումների ու զանազան այլ միջոցառումների թվի, արտաքուստ կարող է թվալ, թե գործը բարեհաջող է դրված։ Այնինչ այդ միջոցառումներից շատերը չեն համապատասխանում աշխատավորների աճած պահանջներին և բնականաբար նպատակին չեն հասնում։

Ունենալով ինտելիգենցիայի և, մանավանդ, տեխնիկական ինտելիգենցիայի այնքան մեծ ջոկատ՝ քաղաքային կոմիտեն չի կարողացել նրան լրիվ օգտագործել իր ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքում, աշխատավորների շրջանում գիտության ու տեխնիկայի նվաճումների պրոպագանդման գործում։

Այս ամենը ցույց է տալիս, որ, ինչպես կոնֆերանսի աշխատանքն ամփոփելիս ընդգծեց ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Ս. Թումանյանը, չնայած անհերքելի տեղաշարժերին, Կիրովականի քաղաքային պարտիական կազմակերպությունն իր հնարավորությունից ցածր է աշխատել, չի կարողացել լրիվ չափով մոբիլիզացնել կոմունիստների ու բոլոր աշխատավորների ջանքերը՝ իր առջև դրված խնդիրների անշեղ իրականացման համար։ Միևնույն ժամանակ կոնֆերանսը ցույց տվեց, որ զարգացող քաղաքի պարտիական կազմակերպությունը, բոլոր կոմունիստները վստահ իրենց ուժերին, լի են յոթնամյակի երկրորդ տարում նորանոր բարձունքների հասնելու վճռականությամբ։

---

# ԲԵԿՄԱՆ ՍԿԻԶԲԸ

## Լ. ՂԱՐԻԲՅԱՆ

(Թղթակցի տպավորություններ)

Առաջին անգամը չէր, որ Միքայել Ցահրադյանը մասնակցելու էր շրջանային պարտիական կազմակերպության կոնֆերանսին։ Արդեն երրորդ տասնամյակն է բոլորում այն օրվանից, ինչ նա իր սրտի մոտ սկսեց կրել Լենինի պարտիայի անդամատոմսը։ Եվ ամեն անգամ, երբ կոմունիստները Միքայել Ցահրադյանին պատգամավոր են ընտրել, նրա սիրտը բաբախել է անհուն հուզմունքով։

Կոլտնտեսության պարտիական կազմակերպության բյուրոյի քարտուղար Խաչիկ Գյուլնազարյանը նկատեց, թե ինչպես, պատրաստվելով շրջանային կոնֆերանսին, Ցահրադյանը երկար միտք է անում իրենց երկուսի կազմած աղյուսակների յուրաքանչյուր թվի մասին, թե այդ րոպեներին ինչպես է փոխվում նրա մշտապես հանգիստ դեմքի արտահայտությունը։

— Մեր ցուցանիշները վատ չեն, ընկեր Ցահրադյան,—չցանկանալով ուղղակի ակնարկել նախագահի հուզմունքը՝ ասաց Գյուլնազարյանը։

Ցահրադյանը, ներողամտորեն ժպտալով, իր զննող հայացքը հառեց պարտկազմակերպության քարտուղարի դեմքին։ «Ինչպես որ դեռ շատ երիտասարդ է մեր նոր քարտուղարը, շուտ ոգևորվող»,—ասում էր այդ հայացքը։

— Իսկ ո՞ր ցուցանիշների հետ ես համեմատում,—նույն մեղմ ժպիտը դեմքին հարցրեց նա քարտուղարին։

Գյուլնազարյանը մեկեն զգաստացավ ու չիմացավ ինչ պատասխանել. իր հարցին պատասխանեց Ցահրադյանը։

— Անցյալ տարվա ցուցանիշների հետ, այնպես չէ՞։ Այդ դեպքում դու իրավացի ես։ Բայց ի՞նչ ես կարծում, դրանով մենք պետք է բավարարվե՞նք։ Կոնֆերանսում մեզ կհարցնեն, թե ինչու ենք մեկ հեկտարից 85 ցենտներ խաղող ստացել և ոչ թե, ասենք, 120—130։ Ինչու՞ մեկ կովի կաթնատվությունը եղել է 2000 լիտր և ոչ 3000 ու ավելի և այլն։ Ի՞նչ պատասխանենք. պարծենա՞նք, որ դա երկու-երեք անգամ ավելի է, քան անցյալ և նախորդ տարիներինը... Ահա թե ինչի մասին եմ մտածում ես։

Երկուսն էլ երկար լուռ էին, յուրաքանչյուրն իր մտքերով տարված։ Նորից խոսել սկսեց Ցահրադյանը։

— Հիշո՞ւմ ես մեր կազմակերպության հաշվետու ընտրական ժողովը։ Չէ՞ որ այնտեղ էլ այս նույն հարցերն էին առաջ քաշում կոմունիստները։ Ապա հիշիր Ռաֆիկ Ներսիսյանի խոսքերը. «Իմ օղակի ցուցանիշները թող ոչ ինձ հանգստացնեն, ոչ էլ մեր նորընտիր բյուրոյին։ Ոսկեվազի այգիների հեկտարը

ոչ թե հարյուր ցենտներ խաղող պիտի տա, այլ ավելի շատ»։ Ես այս ամենը քեզ վախեցնելու համար չեմ ասում, իհարկե,—ծխախոտը վառելով շարունակեց Ցահրադյանը։—Վախենալու ոչինչ չկա։ Ճիշտ է, երբ կոնֆերանս ես գնում պարտականությունները լրիվ չկատարած, սիրտդ շատ անհանգիստ է լինում։ Հեշտ չէ կշտամբանքներ լսել։ Կոնֆերանսում կամ համագումարում կարծես թե խոսում ես խղճիդ հետ։ Այնտեղ ոչինչ թաքցնել չես կարող և զգում ես, որ դրա կարիքն էլ չկա։ Ամեն ինչ պետք է ասես մինչև վերջ, անկեղծորեն։ Այնտեղ երեսիդ ասում են ճշմարտությունը, քրտնում ես դրանից, բայց տուն ես վերադառնում թեթև առած։ Այն խրթին հարցերը, որոնց վրա մտածելով գիշերներ ես լուսացրել, մեկից պարզ ու հստակ են դառնում, ուսերիդ մշտապես զգում ես պարտիայի ջերմացնող, ուղղություն տվող ձեռքը։

Երբ քեզ ծանոթացնում են Աշտարակ գյուղի կոլտնտեսության նախագահ Ավագ Պետրոսյանի հետ, առաջին միտքդ այն է լինում, թե չի՞ սխալվել արդյոք պարտիայի շրջանային կոմիտեն՝ այս երիտասարդին վստահելով այսպիսի խոշոր տնտեսություն։ Բայց երբ գործարար խոսակցության մեջ անցնում են առաջին րոպեները, դիմացդ տեսնում ես եռանդուն, իր արածով չբավարարվող, գործունյա մի մարդ։

Ավագ Պետրոսյանը կրթությամբ գյուղատնտես է և, մինչև Աշտարակ գալը, իր մասնագիտությամբ աշխատում էր Օշական գյուղի կոլտնտեսությունում։ Աշտարակ գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը մեկ տարի առաջ նրան ընդունեց իր շարքերը։

Շրջանի պարտիական կազմակերպության նախորդ կոնֆերանսին պարտիայի շրջկոմի տված զեկուցման մեջ նշված էր, որ Աշտարակ, Օշական, Ոսկեվազ և Փարպի գյուղերի կոլտնտեսությունների խաղողի այգիների մի զգալի մասը վեր է ածվել խոտհարքների, իսկ առանձին տարածությունների վրա՝ ուղղակի խոպանի։

Այլ է պատկերն այս տարի։ Աշտարակ գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության պատվիրակները շրջանային կոնֆերանս են գնում առաջին հաջողությունների մասին զեկուցելու։ Կոլտնտեսությունը 346 հեկտար խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացել է 75 ցենտներ խաղող՝ 2,5 անգամ ավելի, քան անցյալ տարի, կատարված են անասնաբուծական մթերքների արտադրության և վաճառքի բոլոր պլանները։ Մեկ տարվա ընթացքում եկամուտներն ավելացել են մեկ ու կես միլիոն ռուբլով, իսկ աշխօրի արժեքը 13 ռուբլուց հասել է 30-ի։

***

ՀԿՊ Աշտարակի շրջանային կազմակերպության կոնֆերանսում, պարտիայի շրջկոմի հաշվետու զեկուցման մեջ, շրջկոմի քարտուղար ընկ. Է. Գևորգյանն ասաց, որ բարձրացնելով քաղաքական և կազմակերպական աշխատանքի մակարդակը, պարտիայի շրջանային կոմիտեին վերջապես հաջողվեց տնտեսության մի շարք ճյուղերի գծով հաղթահարել շրջանի տևականորեն ետ մնալը և նրան դուրս բերել տնտեսական զարգացման վերելքի ճանապարհը։

Աշտարակի շրջանի տնտեսության գլխավոր ճյուղը այգեգործությունն է. սակայն անցած 18 տարիների ընթացքում խաղողի բերքը հեկտարից կազմել է ընդամենը 25—40 ցենտներ։ Զեկուցողը նշում է այն միջոցառումները, որ



վերջին երեք տարիներին կիրառվել են խաղողի այգիների բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Եվ ահա արդյունքը՝ այս տարի շրջանում յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 65 ցենտներ խաղող։ Պետությանը խաղող հանձնելու պլանը շրջանը կատարեց 153 տոկոսով։

Հատկապես բարձր էր ծխախոտի բերքը։ Հեկտարից ստացվեց 14 ցենտներ բերք։ Կատարվեց ոչ միայն բերքատվության պլանը, այլև շրջանի ստանձնած սոցիալիստական պարտավորությունը։

Այո՛, շրջանում կան որոշ հաջողություններ, բայց չէ՛ որ լավի հետ միասին կան նաև ստվերոտ կողմեր, չլուծված շատ խնդիրներ։ Զեկուցման մեջ նշվեց, որ անասնաբուծության և հացահատիկային տնտեսության բնագավառներում շրջանում դեռևս շոշափելի առաջընթաց չկա։ Մինչդեռ հնարավոր է տնտեսության այդ ճյուղերում ևս շեշտակի վերելք ստեղծել։

Վերցնենք անասնաբուծության զարգացման վճռական նախապայմաններից մեկը՝ կերի կայուն բազա ստեղծելու հարցը։ Շրջանի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունները, պարտշրջկոմը և շրջանային Սովետի գործկոմը այս տարի մոտիկից, գործարար կերպով զբաղվեցին այդ խնդրի լուծմամբ։ Եվ ահա կոնֆերանսում շրջկոմի զեկուցման մեջ նշվեց, որ շրջանում կերի անհրաժեշտ պաշարներ են կուտակված, անասունների ձմեռումը հաջող կընթանա. Նախադրյալներ են ստեղծված անասնաբուծական մթերքների արտադրության եկող տարվա պլանները կատարելու համար։

***

Կոնֆերանսում գերիշխում էր մի միահամուռ ցանկություն՝ դուրս գալ մեծ վերելքի ճանապարհը, քայլել ամբողջ երկրի հետ համընթաց։

— Ընկեր Գևորգյանն իր զեկուցման մեջ նշեց, որ մեր շրջանը յոթնամյակի առաջին տարում բեկում կատարեց տնտեսության բարձրացման բնագավառում,—ասաց պատգամավոր, գյուղատնտես Հ. Եղիազարյանը։—Խաղողագործության վերաբերյալ դա ճիշտ է։ Մեր խոշոր գյուղերի՝ Աշտարակի, Օշականի, Ոսկեվազի, Ուջանի կոլտնտեսություններն այս տարի հասան խաղողի բերքատվության այն մակարդակին, որը պլանավորված է 1964—1965 թվականների համար։ Ընկեր Գևորգյանը նշեց նաև, որ բերքատվության այդպիսի բարձրացումը արդյունք է այգիների լավ մշակման, անհրաժեշտ քանակությամբ պարարտանյութի օգտագործման։ Այդ նույնպես ճիշտ է։ Բայց ես հարցնում եմ՝ ինչո՞ւ այդ ամենը չեն կատարել նաև շրջանի մյուս կոլտնտեսությունները և ինչո՞ւ շրջանային կոմիտեն, շրջանային Սովետի գործկոմը ժամանակին այդ տնտեսությունների ղեկավարներին պատասխանատվության չեն կանչել և չեն հասել այն բանին, որպեսզի անխախտ կերպով կիրառվեն ագրոկանոնները։

Խաղողագործության և ծխախոտագործության բնագավառում շրջանի աշխատավորների առաջին հաջողությունները արժանի են գովասանքի և խրախուսանքի։ Բայց սպառվա՞ծ են արդյոք բոլոր հնարավորությունները. իհարկե ոչ։ Ռեսպուբլիկայի խաղողագործական մյուս շրջանները ավելի շատ բերք են ստանում։ Հենց Աշտարակի շրջանում կան խաղողի բարձր բերքի վարպետներ։ Որքա՞ն շատ բան կարող է սովորեցնել, օրինակ, Օշական գյուղի կոլտնտեսության՝ կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար

պայքարող բրիգադայի փորձը։ Այն ղեկավարում է անվանի այգեգործ, կոմունիստ Միհրան Գևորգյանը, որի մշակած այգիների յուրաքանչյուր հեկտարից այս տարի ստացվեց 130 ցենտներ խաղող։

Պատգամավոր Մ. Գևորգյանը կոնֆերանսում հայտնեց, որ այս տարի շրջանը կարող էր 25—30 տոկոսով ավելի խաղող ստանալ, եթե այգիները լինեին լիարժեք, այսինքն՝ հեկտարի վրա լիներ 2400—2600 վազ։

Շրջկոմի հաշվետու զեկուցման մեջ պատկերավոր կերպով ասված էր, որ շրջանի կոլտնտեսություններն այս տարի առաջին անգամ գինու գործարանին ստիպեցին աշխատել ոչ միայն լրիվ բեռնվածությամբ, այլև լարել իր ուժերը։

— Իսկ ինչպիսի՞ վիճակ կստեղծվի եկող և գալիք տարիներին, երբ կոլտնտեսություններն ավելի շատ խաղող կարտադրեն,—հարցնում էին պատգամավորները։—Շրջկոմը և շրջգործկոմը ինչպիսի՞ միջոցներ են ձեռնարկելու, որպեսզի ծառապտուղները մշակվեն և բերքը չփչանա, ինչպես այս տարի։

Այս տարի ստացվեց ծխախոտի բարձր բերք, բայց անբավարար է չորանոցային տնտեսության վիճակը։

Պատգամավոր Մինաս Ազատյանի՝ Ուջան գյուղի կոլտնտեսության նախագահի ելույթը կոնֆերանսը լսեց մեծ ուշադրությամբ։ Դրա գլխավոր պատճառն այն չէր, որ նրա ղեկավարած կոլտնտեսությունը շրջանում առաջավորներից է։ Ազատյանը առաջ քաշեց ինչպես իրենց կոլտնտեսության, այնպես էլ ամբողջ շրջանի էկոնոմիկայի հետագա զարգացման կենսական հարցեր։ —Ուջանում ոչ բոլոր բրիգադներն են առաջավոր,—ասաց նա։—Այդպես է վիճակը նաև մյուս կոլտնտեսություններում, որոնցից դեռևս ոչ բոլորն են դուրս եկել վերելքի ուղին։ Այժմ արդեն դժվար չէ ետ մնացողներին առաջավորներին հասցնելը։ Դա շրջանի պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից մեկը պետք է լինի։

Առաջիկա մեկ-երկու տարում շրջանը պետք է լիովին յուրացնի, մշակելի դարձնի Արզնի—Շամիրամ ջրանցքի տակ գտնվող նոր հողերը։ Պատգամավոր Մ. Ազատյանը նշում է շրջանը ոռոգելի ջրով ապահովելու նաև այլ հնարավորություններ։ Պետք է ստեղծել ջրամբարներ՝ հեղեղատների ջրերը կուտակելու և օգտագործելու համար, պետք է արտեզյան ջրհորներ փորել։

Զեկուցման մեջ նշվեց, որ առանձին կոլտնտեսություններում վատ են խնամում, պահպանում և օգտագործում մեքենաներն ու գյուղգործիքները։ Հացահատիկի ցածր բերք ստանալու գլխավոր պատճառներից մեկն էլ հենց դա է։ Չի կարելի միայն ջրի պակասությամբ բացատրել հացահատիկի ցածր բերքը, քանի որ Աշտարակ, Ոսկեվազ, Օշական գյուղերում ջրովի տարածություններից 15—16 ցենտներից ավելի բերք չեն ստանում, երբ հարևան շրջաններում 28—30 ցենտները սովորական երևույթ է։

Աշտարակի շրջանի էկոնոմիկայի զարգացման համար որոշող նշանակություն ունի մայրաքաղաքին մոտիկ գտնվելը, սակայն այդ հանգամանքն իր արտացոլումը չգտավ ընկ. Գևորգյանի զեկուցման մեջ։ ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի քարտուղար ընկ. Մ. Ադոնցն իր ելույթում հանգամանորեն խոսեց այդ մասին։

— Աշտարակի շրջանը,— ասաց նա,— մայրաքաղաքին մեծ քանակությամբ թարմ մրգեր ու բանջարեղեն պետք է մատակարարի, մինչդեռ շրջանի կոլտնտեսություններում բանջարաբուծությունը դեռևս հարկ եղած զարգացումը չի ստացել։



Ընկ. Ադոնցը բերում է հետևյալ բնորոշ օրինակը. ռեսպուբլիկայում վաղահաս կարտոֆիլ կարելի է աճեցնել միայն Աշտարակի շրջանի մի քանի գյուղերում, սակայն այդ կուլտուրան մշակում են միայն անհատ մարդիկ, իրենց տնամերձ հողակտորներում։ Կոլտնտեսությունները մեծ եկամուտներ կարող են ստանալ վաղահաս կարտոֆիլից, քանի որ պետությունը այն վերցնում է շատ բարձր գներով։

— Բոլորիս համար էլ բերկրալի է խոսել ձեռք բերած հաջողությունների մասին,—շարունակեց ընկ. Ադոնցը,—բայց այսօր մեր ուշադրությունը դրա վրա չէ, որ պետք է կենտրոնացնենք, առավել ևս՝ պարծենանք, թե մենք շրջանի էկոնոմիկան բարձրացրել ենք։ Շրջանի էկոնոմիկայի երկու խոշոր ճյուղեր՝ անասնաբուծությունը և հացահատիկային տնտեսությունը, դեռևս ետ են մնում մեր ռեսպուբլիկայում ձեռք բերված նույնիսկ միջին մակարդակից։

Այնուհետև ընկ. Ադոնցը կոնկրետ թվերով ու հաշվարկումներով ցույց է տալիս, թե շրջանը 100 հեկտար հողատարածության դիմաց որքան քիչ միս, կաթ, բուրդ և ձու է արտադրում, որի պատճառով էլ շատ բարձր է դրանց ինքնարժեքը։ Վերջին տարիներին շրջանում մշակելի հողատարածությունները ոչ թե ավելացել, այլ նվազել են։ Շրջանը ոչ միայն պետք է լրիվ չափով մշակի այդ հողատարածությունները, այլև յուրացնի Արզնի—Շամիրամ ջրանցքի տակ գտնվող 3500 հեկտար խամ ու խոպան հողերը։

— Աշտարակի շրջանը մայրաքաղաքի աշխատավորներին պետք է մատակարարի ոչ միայն միս, կաթ, բանջարեղեն, միրգ, այլև մեծ քանակությամբ ձու և թռչունի միս,—ասաց այնուհետև ընկ. Ադոնցը։—Սակայն շրջանի կոլտնտեսությունների թռչնաբուծական ֆերմաներից յուրաքանչյուրն ունի ընդամենը մի քանի հարյուր հավ։ Մինչդեռ հարևան էջմիածնի շրջանի Աղավնատուն գյուղի կոլտնտեսությունը ստեղծել է մեքենայացված թռչնաբուծական ֆերմա, որտեղ աշխատում է ընդամենը չորս մարդ։ Ֆերման եկող տարի արտադրելու է մեկ միլիոն ձու։ Ահա այսպիսին պետք է լինեն մեր այսօրվա տեմպերը։ Ժամանակը չէ՞ արդյոք հրաժարվել գաճաճ, ոչ արդյունավետ ֆերմաներից և շրջանում ստեղծել մի շարք միջկոլտնտեսային խոշոր թռչնաբուծական մեքենայացված տնտեսություններ։

***

Կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող բրիգադա... որքա՜ն խոր իմաստ, որքա՜ն վեհություն կա այս մի քանի բառի մեջ։ Դրանք բնորոշում են մեր ժամանակի ամենակենսունակ, ամենաառաջավոր շարժումը. մարդիկ ուզում են ոչ միայն աշխատել, այլև ապրել կոմունիստաբար։ Այդ շարժումը լայնորեն ծավալվում է նաև Աշտարակի շրջանի մի շարք կոլտնտեսություններում։

Եվ այսպես, Աշտարակի շրջանի աշխատավորները տնտեսության զարգացման բնագավառում առայժմ գրավել են առաջին բնագիծը։ Իսկական հաղթանակը դեռևս առջևումն է։ ՍՄԿՊ XXI համագումարը նշել է դրան հասնելու ուղիները։ Այդ ուղիով ընթանալով, պարտիայի Աշտարակի շրջկոմը հետևողականորեն պետք է լուծի շրջանային կոնֆերանսի և ՀԿՊ առաջիկա XXI համագումարի առաջադրած խնդիրները, և հաղթանակն ապահովված կլինի։

---

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



## ՀԱՆՐԱՅԻՆ ԿԱՌՈՒՅՑՈՒՄՆԵՐԸ ԿԱՄՈՅԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Փոխվել ու գեղեցկացել են մեր ռեսպուբլիկայի Կամոյի անվան շրջանի գյուղերն ու շրջանային կենտրոնը՝ Կամո քաղաքը: Նրբեմնի հետամնաց ու անբարեկարգ, մանր առևտրականների հին՝ Նոր Բայազեդ գյուղաքաղաքն այժմ վերածվել է գեղեցիկ ու կուլտուրական փոքրիկ քաղաքի՝ իր ասֆալտապատ փողոցներով, գեղեցիկ ու մի քանի հարկանի շենքերով, ծառուղիներով, այգիներով ու պուրակներով:

Կամո քաղաքում ու շրջանի գյուղերում հանրային կառուցումները մեծ թափ ստացան հատկապես վերջին տարիներին: 1954—1958 թվականների ընթացքում դրանց ընդհանուր արժեքը կազմեց շուրջ 47 միլիոն, այդ թվում Կամո քաղաքում՝ 22 միլիոն ռուբլի:

Կամոյի շրջանում կապիտալ շինարարության կառուցումներից ամենակարևորը շրջանի էլեկտրիֆիկացումն է. այն դարձավ հիմնական բազա հետագա շինարարական աշխատանքների ծավալման, ինչպես նաև տնտեսական ու կուլտուրական շատ միջոցառումների իրականացման համար: 1955 թվականի վերջերին և 1956 թվականի սկզբներին ավարտվեց Սևան-Կամո բարձր լարման գծի կառուցումը՝ 36 կիլոմետրի վրա, ինչպես և Կամո քաղաքի կենտրոնական կայանի ու ենթակայանների կառուցումը: 1956 թվականից Կամոյի շրջանը Սևանգէսից ստանում է 2000 կվտ ժամ էներգիա, որից 100 կվտ-ը սպառում է քաղաքը, իսկ մնացածը՝ գյուղերը:

1956—1957 թվականներին շրջանի 11 գյուղերում լայն շինարարություն ծավալվեց բարձր և ցածր լարման գծերի կառուցման համար: Կամո քաղաքից դեպի գյուղերը կառուցվեցին շուրջ 48 կիլոմետր երկարության բարձր լարման գծեր, իսկ ցածր լարման գծեր գյուղերում մինչև այժմ կառուցված են շուրջ 52 կիլոմետր երկարությամբ: Այսպիսով, 1956—1957 թվականներին էլեկտրիֆիկացիայի ենթարկվեցին նաև շրջանի մնացած բոլոր գյուղերը, և շրջանը դարձավ համատարած էլեկտրիֆիկացիայի շրջան:

Առատ էլեկտրաէներգիան լայնորեն օգտագործվում է կենցաղային կարիքների համար: Բարելավվել են ռադիոյի, կինոյի, հեռախոսի աշխատանքները: 1956—1957 թվականներին կառուցվեց և շահագործման հանձնվեց քաղաքի ավտոմատ հեռախոսային կայանը՝ 400 կետով: Եթե մինչև այդ շրջանում կար մոտ 180 հեռախոսային կետ, ապա այժմ հեռախոսային կետերի թիվը հասնում է 410-ի, ընդ որում ավտոմատ հեռախոսային կետերինը՝ 375-ի: Ավտոմատ հեռախոսներ ունեն նաև շրջանի Սարուխան, Հացառատ, Բատիկյան, Ծաղկաշեն, Կարմիր, Արծվաքար և Նորադուզ գյուղերը: Շրջանում



ռադիո-կետերի թիվը հասնում է 3200-ի, իսկ ռադիոընդունիչներինը՝ 800-ի:

Էլեկտրաէներգիան ներդրվել է գյուղատնտեսության մեջ: Այժմ շրջանի գյուղերում և սովխոզում էլեկտրաէներգիայով են աշխատում 99 շարժիչ, կամ յուրաքանչյուր տնտեսությունում՝ միջին հաշվով յոթ շարժիչ, «Վիմ», «Տրիեր» սերմազտիչները, սիլոսահատ մեքենաները, խուզի ագրեգատները, կոլտնտեսությունների ու սովխոզի 16 սղոցարան, 10 էլեկտրաղաց և այլն: Սակայն որոշ կոլտնտեսություններում արտադրության մեջ դեռևս անբավարար է օգտագործվում էլեկտրաէներգիան: Կարմիր, Արծվաքար, Բատիկյան, Նորադուզ գյուղերում քամհարները դեռևս աշխատում են ձեռքի ուժով, մինչդեռ շատ տնտեսություններում դրանք հաջողությամբ աշխատում են էլեկտրաէներգիայով:

Էլեկտրաէներգիան օգտագործվում է նաև նախկինում բացառապես ձեռքի աշխատանքով գործող փայտամշակման արտելում (որը ներկայումս վերածվել է կոմբինատի), կարի ֆաբրիկայում, տրիկոտաժի ֆաբրիկայում, ավտովերանորոգման արհեստանոցում և այլն:

Վերջին տարիներին շրջանում ծավալվել է ջրաշինարարական աշխատանքը: 1954—1958 թվականներին ջրմուղ է կառուցվել Կամո քաղաքում և շրջանի 11 գյուղերում: Կառուցված ջրմուղի մագիստրալային և ներքին ցանցի ընդհանուր երկարությունը մոտ 52 կիլոմետր է, որի համար պետական միջոցներից ծախսվել է 850 հազար ռուբլի, իսկ կոլտնտեսությունների միջոցներից՝ մեկ միլիոն 686 հազար ռուբլի: 1958 թվականի սկզբներին քաղաքը ջուր ստացավ Հացառատ գյուղի սառնորակ աղբյուրներից:

1956 թվականին Կարմիր գյուղի բնակչությունն ավարտեց չորս կիլոմետր երկարությամբ ջրմուղի կառուցումը, որի շնորհիվ գյուղն ստացավ սառնորակ ջուր: Ջրմուղի կառուցման վրա կոլտնտեսությունը ծախսեց 341 հազար ռուբլի:

1956 թվականին լեռնային աղբյուրի սառնորակ ջուր ստացան ինչպես Սևանի շրջանի մի շարք գյուղեր, այնպես էլ Կամոյի շրջանի չորս գյուղերը:

Իրականացված մի շարք միջոցառումների շնորհիվ այժմ շրջանի բոլոր գյուղերը (բացի Ծաղկաշենից) ապահովված են խմելու ջրով: Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության նախագծային բյուրոն արդեն կազմել է նախագիծը և շուտով կսկսվի ջրմուղի կառուցումը նաև Ծաղկաշենում:

Վերջին հինգ տարիների ընթացքում Կամո քաղաքում կառուցվեցին տրիկոտաժի, կահույքի, կարի ֆաբրիկաների, տպարանի, կոշիկի արտելի արտադրական շենքերը, իսկ Կարմիր և Սարուխան գյուղերում՝ գորգագործական արտելի շենքերը: Արտադրական նոր շենքերի կառուցման միջոցով զգալիորեն ավելացան արտադրական տարածությունները, որի շնորհիվ 1959 թվականին շրջանի արդյունաբերական ապրանքների արտադրանքը կազմում է շուրջ 40 միլիոն ռուբլի: Նոր պայմաններ են ստեղծում յոթնամյակում ավելացնելու արդյունաբերական ապրանքների արտադրության ծավալը: Կամո քաղաքում արդեն սկսվել է գորգագործական արտելի և հացի գործարանի նոր շենքերի կառուցումը, որի շնորհիվ ավելի քան երկու անգամ կավելանա այդ ձեռնարկությունների արտադրական կարողությունը:

Վերջին հինգ տարիներին Կամո քաղաքում կառուցվել և շահագործման են հանձնվել չորս բնակելի շենքեր՝ շուրջ 60 բնակարանով, 1960 թվականի սկզբներին շահագործման կհանձնվի բնակելի նոր շենք՝ 27 բնակարանով,

արդեն շահագործվում է միջնակարգ դպրոցի շենքը՝ Բատիկյան գյուղում: Նույնպիսի շենք է կառուցվում Սարուխան գյուղում, ծննդատան շենք՝ Կամո քաղաքում: 1955 թվականից սկսած քաղաքում կառուցված բոլոր հանրային շենքերն ունեն կենտրոնացված ջեռուցման սիստեմ:

Կամոյի շրջանում ծավալված շինարարական աշխատանքներին լուրջ օգնություն են ցույց տալիս և անհրաժեշտ միջոցներ հատկացնում Հայկական ՍՍՌ Տեղական տնտեսության, Առողջապահության, Լուսավորության և Կապի մինիստրությունները, Հայարդխորհրդի և Հայկոոպի վարչությունները:

Առողջապահության մինիստրությունը կառուցելով հիվանդանոցի, ծննդատան նոր ու հարմարավետ շենքեր, դրանով զգալիորեն բարելավել է շրջանի բնակչության բուժսպասարկումը և աշխատանքի նորմալ պայմաններ են ստեղծվել շրջանում աշխատող 29 բժշկի և 103 միջին բուժանձնակազմի համար:

Հայկոոպի վարչությունը 1955—1959 թվականներին նոր, մեծ ու բարեկարգ խանութներ է կառուցել շրջանի 13 գյուղերում, Կամոյում՝ վեց խանութ և կարտոֆիլի հատուկ պահեստ, որը հնարավորություն է տալիս վաղ գարնան ամիսներին Երևան քաղաքի բնակիչներին մատակարարել մոտ 800 տոննա կարտոֆիլ. հացի փուռ՝ Սարուխան և Լճափ գյուղերում, ճաշարան՝ Սարուխանում և այլն: Հայկոոպի և Բատիկյան գյուղի կոլտնտեսության միացյալ ուժերով այս տարի Բատիկյանում սկսվել է ակումբի շենքի կառուցումը, որն ունի 400 տեղանոց դահլիճ:

Շրջանի երիտասարդության ուժերով ու միջոցներով Կամո քաղաքում սկսվել է պիոներների պալատի կառուցումը, որի նախագիծը շեֆական կարգով կազմել են Երևանի Կարլ Մարքսի անվան Պոլիտեխնիկական ինստիտուտի ուսանողները:

Վերջին տարիներին լայն թափ է ստացել նաև անհատական բնակարանային շինարարությունը: 1954—1958 թվականների ընթացքում շրջանի բանվորներն ու կոլտնտեսականներն իրենց միջոցներով կառուցել են 2074 նոր, լուսավոր անհատական բնակարաններ, որոնց մի մասը երկու հարկանի է:

Սարուխան գյուղի շարքային կոլտնտեսական Բախշո Ոսկանյանը կառուցել է երեք սենյականոց թիթեղածածկ բնակարան՝ նկուղային հարկով ու մեծ պատշգամբով: Կամո քաղաքի շինարար բանվոր Միշա Միրաքյանը նույնպես կառուցել է երեք սենյականոց բնակարան՝ նկուղային հարկով ու 12 մետր երկարությամբ գեղեցիկ պատշգամբով: Բնակարանն ունի բոլոր անհրաժեշտ հարմարությունները: Սովխոզի կթվորուհի Արաքսյա Սարգսյանը կառուցել է երկու սենյականոց բնակարան, նկուղային հարկով: Նրա բնակարանի բնակելի տարածությունը 58 քառակուսի մետր է: Բանվորների ու կոլտնտեսականների բարեկեցիկ կյանքի մասին վկայող այսպիսի օրինակներ կարելի է շատ բերել:

Զգալի աշխատանք է կատարվել քաղաքի բարեկարգման ուղղությամբ. ասֆալտապատվել են բոլոր հիմնական փողոցները. միայն վերջին հինգ տարում ասֆալտապատվել է 65 հազար քմ փողոց և ասֆալտապատ տարածությունը հասել է 110 հազար քառակուսի մետրի: Կառուցվել են ֆուտբոլի քաղաքային ստադիոն, վոլեյբոլի և բասկետբոլի հրապարակներ, տնկված է 30 հազար դեկորատիվ ու պտղատու ծառ: Կամո քաղաքի աշխատավորները սոցիալիստական մրցության մեջ մտնելով Գորիս քաղաքի աշխատավորների հետ,



ամեն ինչ անում են իրենց փոքրիկ քաղաքը ավելի գեղեցիկ ու բարեկարգ դարձնելու համար:

Կամո քաղաքում վեր է խոյանում Վ. Ի. Լենինի բրոնզյա արձանը, որը գրանիտից պատրաստված պատվանդանի հետ միասին ունի ութ և կես մետր բարձրություն (կերտել է քանդակագործ Արա Սարգսյանը):

Կամո քաղաքում դրվեցին նաև մայիսյան ապստամբության ակտիվ կազմակերպիչներ ու մասնակիցներ Հ. Սարուխանյանի, Բ. Բատիկյանի, Սարուխան գյուղում՝ Ս. Մակարյանի, իսկ Նորադուզում՝ Գ. Դատիկյանի կիսանդրիները:

Շրջանում կատարված շինարարության մեջ որոշակի տեղ են գրավում կոլտնտեսություններում ու սովխոզում կառուցված արտադրական շենքերը: Վերջին հինգ տարում կառուցվել է 46 անասնագոմ, այդ թվում՝ 10 կովանոց, 6 հորթանոց, 13 ոչխարանոց, 12 խոզանոց և 5 թռչնանոց: Կառուցվել են նաև ծխախոտի 32 աչք չորանոց, երեք պահեստ և սիլոսի խրամատներ՝ 21 հազար տոննա տարողությամբ, ինչպես և 10 էլեկտրաղաց: Այս տարի շրջանում կառուցվում և մինչև տարեվերջը շահագործման կհանձնվեն 31 անասնագոմ, որից՝ 13 կովանոց, 4 հորթանոց, 5 ոչխարանոց, 3 խոզանոց, 6 թռչնանոց: Կավարտվի նաև սերմնակայանի, ծխախոտի 21 աչք չորանոցի և 2000 տոննա տարողությամբ սիլոսային խրամատի կառուցումը:

Կապիտալ ներդրումները և հանրային կառուցումները ավելի քան լայն ծավալ ստացան Նորադուզի, Հացառատի, Սարուխանի, Բատիկյանի, Կարմիր գյուղի կոլտնտեսություններում, ինչպես նաև Կամոյի սովխոզում: Նորադուզի կոլտնտեսությունում 1954—1958 թվականներին կապիտալ ներդրումները կազմեցին 3 միլիոն 512 հազար, Հացառատում՝ 2 միլիոն 688 հազար, Կարմիրում՝ 1 միլիոն 985 հազար, Սարուխանում՝ 1 միլիոն 673 հազար, Բատիկյանում՝ 1 միլիոն 383 հազար ռուբլի և այլն: Նորադուզի կոլտնտեսությունը վերջին հինգ տարում կառուցել է երկու կովանոց, մեկ հորթանոց, չորս ոչխարանոց, երեք խոզանոց, մեկ սերմնակայան, ծխախոտի 16 աչք չորանոց և 2800 տոննա տարողությամբ սիլոսային խրամատ: Միայն այս տարի Նորադուզի կոլտնտեսությունը կառուցել է երկու թռչնանոց, մեկ կովանոց, մեկ հորթանոց և ավարտել է ինկուբատորային կայանի շինարարությունը, որում տեղադրվում են սարքավորումները: Ինկուբատորի կարողությունը մեկ հերթում կազմում է 39 հազար ճուտ: Այս կայանը ճտերով կբավարարի շրջանի կոլտնտեսություններին ու սովխոզին և ամենայն հավանականությամբ հնարավորություն կունենա որոշ քանակությամբ ճտեր տալ նաև հարևան շրջաններին: Կոլտնտեսությունը արոտավայրերում կառուցել է երկաթ-բետոնե կոնստրուկցիաներով հարմարավետ գոմեր, որը հնարավորություն է տալիս երկարացնելու անասունների արոտային շրջանը և իջեցնելու անասնաբուծական մթերքների ինքնարժեքը: Կոլտնտեսականների համար յայլաղում կառուցվել է 24 բնակարան՝ երկաթ-բետոնե ծածկով:

Կոլտնտեսությունները կապիտալ ներդրումներ են կատարում նաև կուլտուր-լուսավորական, առողջապահական օբյեկտների շինարարության համար: Նորադուզի կոլտնտեսությունը կառուցել և մոտ օրերս շահագործման կհանձնի 10 մահճակալանոց հիվանդանոցի շենքը, Արծվաքարինը՝ ծննդատան շենքը, Բատիկյանինը՝ հիվանդանոցի շենքը և այլն: Նորադուզի, Կարմիրի, Հացառա-

տի, Մուխանի կոլտնտեսություններում, Կամո քաղաքում ու դեպի Նորադուզ տանող ճանապարհի վրա կառուցվել են աղբյուր-հուշարձաններ։

Կապիտալ ներդրումների և հանրային կառուցումների ծավալը մեծ չափով կավելանա ընթացիկ յոթնամյակում։ Շրջանում կապիտալ ներդրումները կկազմեն 132 միլիոն 386 հազար ռուբլի, այդ թվում կոլտնտեսությունների միջոցներից՝ 63 միլիոն 203 հազար։ Կոլտնտեսություններում մեծ թափ կըստանա արտադրական ու կուլտուր-լուսավորական օբյեկտների կառուցումը։ Կոլտնտեսություններում արտադրական օբյեկտների կառուցման ծավալը, ամենից առաջ, կապված է անասունների գլխաքանակի ավելացման հետ։ Դրան համապատասխան շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզը նախատեսել են յոթնամյակում կառուցել 58 կովանոց, 30 հորթանոց, 25 խոզանոց, 39 ոչխարանոց, 35 թռչնանոց և 6 սերմնակայան։ Ծրագրվում է կառուցել նաև 8 պահեստ, 20 գարաժ՝ ավտոմեքենաների և գյուղատնտեսական մեքենաների համար, երկու արհեստանոց և այլն։

Յոթնամյակում լայն ծավալ կստանա նաև կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը կոլտնտեսությունների միջոցներով. նախատեսվում է կառուցել 12 բաղնիք, 6 ակումբ, մեկ դպրոց, 4 հիվանդանոց-ծննդատուն, 12 մանկամսուր-մանկապարտեզ։ Կոլտնտեսությունները կձեռնարկեն նաև միջկոլտնտեսային շինարարական աշխատանքներ։ 1960 թվականից կոլ-տնտեսությունների ուժերով կսկսվի Կամո-Սարուխան-Լանջաղբյուր և Կամո-Նորադուզ խճուղային ճանապարհների ասֆալտապատումը, որոնց նախագծե-րի կազմումը կավարտվի այս տարվա վերջին, կամ եկող տարվա սկզբին։ Այդ երկու ճանապարհների երկարությունը 18 կիլոմետր է։

Մեծ ծավալ կստանա նաև կոոպերատիվ ու պետական միջոցներով կապիտալ շինարարությունը։ Ոչ լրիվ տվյալներով, պետական միջոցներով կառուցումների ընդհանուր արժեքը կկազմի մոտ 50 միլիոն ռուբլի, իսկ սպառո-ղական և արտադրական կոոպերացիայի միջոցներով կառուցումները՝ 13 մի-լիոն ռուբլի։ Յոթնամյակում կապիտալ շինարարության մեծ պլան ունի Կամո քաղաքի կաթնա-անասնապահական սովխոզը։ Այստեղ կառուցվող միայն ար-տադրական շենքերի արժեքը կհասնի 19 միլիոն ռուբլու։ Այս ամենը անհրա-ժեշտ բազա կստեղծեն սովխոզի հնարավորությունները լրիվ օգտագործելու և անասնաբուծական մթերքների արտադրության շեշտակի վերելքն ապահովե-լու մասին Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի 1959 թվականի ապրիլի 15-ի որոշումը կատարելու համար։

Յոթնամյա պլանով նախատեսվում է դպրոցական, բնակարանային, ար-տադրական, կոմունալ և առևտրական կազմակերպությունների նոր շենքերի կառուցում Կամո քաղաքում և շրջանի գյուղերում։

Պետք է նշել, որ Կամոյի շրջանում հանրային կառուցումների գործում միանգամայն քիչ բան են անում ռեսպուբլիկայի մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ։ Դա առանձնապես վերաբերում է Կուլտուրայի, Գյու-ղատնտեսության, Ավտոտրանսպորտի մինիստրություններին և Ժողտնտխոր-հի Մսի ու կաթի արդյունաբերության վարչությանը։ Կուլտուրայի մինիս-տրության մի շարք օբյեկտներ (միջշրջանային դրամատիկական թատրոնը, երաժշտական դպրոցը) տեղավորված են միանգամայն անհարմար շենքերում. ցանկալի է, որ Կուլտուրայի մինիստրությունը մտահոգվի այդ հարցով և ան-հրաժեշտ միջոցներ ձեռնարկի յոթնամյակում միջշրջանային թատրոնի և



երաժշտական դպրոցի շենքեր կառուցելու համար։ Գյուղատնտեսության մինիստրության Կամոյի անասնապահական-անասնաբուժական տեխնիկումը և ուսանողական հանրակացարանը գտնվում են հին, ուսումնական գործի կազմակերպման տեսակետից բոլորովին աննպատակահարմար շենքերում։ Գյուղատնտեսության մինիստրությունը պետք է մտածի այդ մասին և գոնե տեխնիկումի ուսումնական շենք կառուցի։ Ժողտնտխորհի Կաթի և մսի արդյունաբերության Կամոյի պանրի-յուղի փոքրիկ գործարանը 1959 թվականի ձմռանը կաթի ընդունման ու մշակման գործում մեծ դժվարությունների առաջ կանգնեց, երբ կոլտնտեսություններից ու սովխոզից կաթի ընդունումն ու մշակումը չանցավ 23 հազար ցենտներից։ Ապա ի՞նչ կարող է անել այդ գործարանը յոթնամյակում, երբ միայն սովխոզից պետք է ընդունի և մշակի շուրջ 35—40 հազար ցենտներ կաթ։ Ժողտնտխորհի Կաթի և մսի արդյունաբերության վարչությունը պետք է մտածի այդ մասին ու միջոցներ տրամադրի յոթնամյակի առաջին տարիներին Կամո քաղաքում պանրի ու յուղի մշակման անհամեմատ ավելի մեծ կարողություն ունեցող գործարան կառուցելու։

Կամոյի շրջանի ավտոգրասենյակը, որը շուրջ 13 տարի գոյություն ունի, գտնվում է միանգամայն անհարմար շենքում. չկա որևէ հարմարություն մեքենաների վերանորոգման ու պահպանման համար։ Ժամանակն է, որ Ավտոտրանսպորտի մինիստրությունը մտածի Կամո քաղաքում ավտոպարկի կառուցման մասին։ Ժողտնտխորհի Սննդի արդյունաբերության վարչությունը պետք է զգալիորեն ընդլայնի Կամո քաղաքի հանքային ջրի արտադրությունը, որն արդեն լայն ընդունելություն է գտնում սպառողների կողմից։

Յոթնամյակում նախատեսվող հանրային նոր կառուցումները պահանջում են ուժերի նոր լարում և աշխատանքի նոր թափ։ Յոթնամյակի նորակառույցներն է՛լ ավելի կգեղեցկացնեն Կամո քաղաքն ու նրա շրջանի գյուղերը, նրանք կունենան ավելի բարեկարգ ու կուլտուրական տեսք։

Վ. ԾԱՂԻԿՅԱՆ

ՀԿՊ Կամոյի շրջկոմի քարտուղար

## ԱԶԱՏ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՐԴԻԿ

Իջևանից դեպի հյուսիս-արևմուտք վեր են խոյանում հսկա ժայռեր ու անտառներով։ Ան-բարձունքներ՝ շրջապատված խիտ թավուտներով ու թավ ծանոթին թվում է, որ այնտեղ, բացի անտառի բնակիչներից, ուրիշ ոչինչ լինել չի կարող։ Բայց ահա ավտոմեքենաները մեջընդմեջ ուղղություն են վերցնում դեպի բարձունքները։ Վեր բարձրացող ոլորապտույտ խճուղին հասցնում է սարալանջին թիկնած Ենոքավան (անցյալում Քրդևան) գյուղը։

Մեծ չէ այն, ունի ընդամենը հարյուր տնտեսություն և 1117 հեկտար հողատարածություն։

Մեկ ու կես հարյուրամյակ առաջ հիմնադրված այս գյուղի բնակիչներն իրենց համեստ վաստակն ունեն Հայաստանում Սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարում։ Մարտական ուղի են անցել նրանք։

Ցարիզմի և դաշնակցության դեմ մղած պայքարում ենոքավանցիների բարձր մարտունակությունը Սովետական իշխանության օրերին փոխվեց ուժեղ ու հարուստ կոլտնտեսություն ստեղծելու աշխատանքային էնտուզիազմի, որի

*շնորհիվ կոլտնտեսությունն այնպիսի անհամեմատելի վերելք է ապրել, որ հատուկ է միայն ազատ աշխատանքի կոլեկտիվին:*

*Այս վերելքի ճանապարհին Ենոքավանի կոլտնտեսությունը տարեցտարի աճել է, ամրապնդվել, դարձել ունևոր տնտեսություն:*

## ԼԵՌՆԱՀՈՎԻՏՆԵՐԻ ՈՒ ՍԱՐԵՐԻ ԱՐՔԱՆԵՐԸ

*Ենոքավանից հեռո՜ւ, շա՜տ հեռու ձգվում են «Պստիկ» ու «Քամուտ» սարերը: Նրանց շրջափակում են լայնարձակ հովիտներ, լեռնագոգեր ու անտառներ: Ձմռան սառնամանիքներն ու հաստաշերտ ձյունը մարտի վերջերին չքվում են այդ վայրերից՝ իրենց տեղը զիջելով բազմերանգ ծաղիկներին, սիզավետ խոտին:*

*Ոչ հեռու անցյալում այս վայրերը անմատչելի էին մարդուն. բնությունն իր այդ հարուստ ու գեղեցիկ պուրակները լեռներով ու անանցանելի անտառներով պարսպել էր մարդուց: Մեր օրերում նա բացեց իր դարպասները նոր կյանք կառուցող մարդու առջև: Որտեղից հետիոտնը չէր կարող անցնել, այժմ սլանում են կոլտնտեսության ավտոմեքենաները՝ փոխադրելով մարդկանց լեռնային կյանքի համար անհրաժեշտ պարագաներ:*

*Շրջում է հայացքդ... ցանկանում ես տեսնել այդ տնտեսությունը ղեկավարող մարդուն: Ահա նա՝ Ենոքավանի կոլտնտեսության նախագահ Արամ Ջիբուխչյանը. միջին տարիքի, զննող հայացքով, վճռական ու հաստատակամ շարժումներով մարդ է: Հաճախակի է նա լինում անասնապահների մոտ, ամեն ինչ զննում, ցուցմունքներ տալիս նրանց:*

*1955 թվականից ստանձնելով Ենոքավանի կոլտնտեսության նախագահի պատասխանատու պոստը, Ջիբուխչյանը պարտիական կազմակերպության օգնությամբ կարողացել է արտելը հասցնել մի նոր բարձրության: Իր լավագույն աշխատանքի համար նա ընտրվել է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ: Ժողովրդի ծառայի այդ մեծ պարտականությունը Ջիբուխչյանը կատարում է ամենայն բարեխղճությամբ:*

*Արևի վերջին ճառագայթները վետվետում են ու թաքնվում լեռների հետևում: Ամառանոց են գալիս ոչխարի ու գառների հոտերը, կովերի նախիրը: Երևում են ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Եփրեմ Մկրտումյանը, բազմամյա հովիվ Արշակ Ջիբուխչյանը, կովաբուծական ֆերմայի վարիչ Հովհաննես Համբարձումյանը, ուրիշ հովիվներ, կթվորուհիներ, նախրապաններ:*

*— Ահա՛ այս լեռնահովիտների ու սարերի արքաները,—մեծ հրճվանքով ասում է նախագահը,—բնությունն այստեղ գլուխ է խոնարհում նրանց առջև, իսկ նրանք հոգատար են նրա նկատմամբ:*

*Այս կոլտնտեսության հոտը 1958 թվականին ուներ 1598 գլուխ ոչխար: Ֆերմայի անձնակազմի լավագույն աշխատանքի շնորհիվ 1959 թվականին ոչխարների գլխաքանակը հասավ 2254-ի, իսկ յոթնամյակի վերջին կհասնի 2400-ի:*

*— Յոթնամյակի վերջում մենք երևի կխնամենք 3000 գլուխ ոչխար, եթե ավելին չասեմ,—ասում է Արշակ Ջիբուխչյանը:—Արդեն 30 տարի է հովիվ եմ, ոտք եմ դրել կյանքիս աշունը, ու այսպիսի աճ առաջին անգամն եմ տեսնում: Մեր գործն էլ դժվար է, բայց գաղտնիքներ չունի. հոգատար եղիր անասունի նկատմամբ, ժամանակին տար արոտի, ջրելու, մաքուր պահիր նրա*



*փարախը, ժամանակին խուզիր, մի մրսեցրու, հասկացիր նրա «լեզուն»... Եվ ցանկացածդ արդյունքին կհասնես:*

*Մեր հովվի ասածը հաստատում են կոլտնտեսականները: Ջիբուխչյանն իր խնամած յուրաքանչյուր ոչխարից 1958 թվականին ստացել է 2,8 կիլոգրամ բուրդ, պլանով նախատեսված 2,3-ի դիմաց, 1959 թվականին՝ 3,4 կիլոգրամ, նախատեսված 2,6-ի դիմաց: Իսկ կոլտնտեսությունում ոչխարի միջին բրդատվությունը կազմում է 2,8 կիլոգրամ: Պլանավորված է 1965 թվականին յուրաքանչյուր ոչխարից ստանալ 3,2 կիլոգրամ բուրդ: Կոլտնտեսությունը հարյուր մայր ոչխարից այս տարի ստացել է 95, իսկ Արշակ Ջիբուխչյանի բրիգադան՝ 100 գառ:*

*Պետք է այնտեղ լինել ոչխարների խուզի ժամանակ. հովիվները էլեկտրական խուզիչների միջոցով խուզում ու կուտակում են բուրդը, իսկ ավտոմեքենաները պատրաստ կանգնած են՝ այն պահեստ տեղափոխելու համար:*

*Ենոքավանցիները 1958 թվականին 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել են 327,4 կիլոգրամ բուրդ, նախատեսված 280-ի փոխարեն, 1959 թվականին՝ 395 կիլոգրամ, 357-ի փոխարեն. նրանք պարտավորություն են ստանձնել 1965 թվականին 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 400 կիլոգրամ բուրդ: 1958 թվականին կոլտնտեսությունը ոչխարաբուծությունից ստացել է 276 993, 1959 թվականին՝ 287 506 ռուբլու դրամական եկամուտ:*

*Կոլտնտեսությունն այսպիսի հաջողության է հասել միայն ամբողջ ուժերը միավորելու, համառ ու քրտնաջան աշխատանքի շնորհիվ:*

*— Մենակ մարդը ոչինչ անել չի կարող,— ասում է ֆերմայի վարիչ Ե. Մկրտումյանը,—միայն կոլեկտիվի, նրա միավորված ջանքերի շնորհիվ է, որ մենք հասել ենք այսպիսի հաջողությունների: Ոչխարաբուծական ֆերմայում չէ, որ գործերը լավ են. գնացեք կովաբուծական ֆերման, կտեսնեք, որ նրանք ոչնչով ետ չեն մնում մեզնից:*

*Ահա կթվորուհի Գեղեցիկ Օհանյանը՝ մեծ դույլը ձեռքին, մոտենում է կովերին: Սկսվում է կիթը: Կարծես աշնան զեփյուռի մեղմ շրշյուն է տարածվել ամբողջ ամառանոցում: Գ. Օհանյանը միայն «Մարալ» կովից տարեկան ստանում է 2500 կիլոգրամ կաթ, իսկ իր խնամած մյուս կովերի միջին կաթնատվությունը հասնում է 1780 կիլոգրամի: Այստեղ է նաև հայտնի կթվորուհի, Իջևանի շրջանում սոցիալիստական մրցության առաջավոր, կոմերիտուհի Է. Բաղալյանը: Նա խնամում է 14 կով և յուրաքանչյուրից ստանում է 2041 կիլոգրամ կաթ: Նրանց հետ մեծածավալ ընդհանուր կաթսան կաթով լցնում են կոմերիտուհի կթվորներ՝ Ա. Գաբրիելյանը, Ժ. Բեջանյանը, Ռ. Մարգարյանը, Մ. Փաշինյանը և ուրիշներ: Նրանք միշտ գերակատարում են իրենց պլանը: Այս տարի յուրաքանչյուր կովից կոլտնտեսությունն ստացել է 1805 կիլոգրամ կաթ, պլանով նախատեսած 1750 կիլոգրամի դիմաց:*

*Կթի ընթացքին հանգիստ ու գոհ հայացքով հետևում է կովաբուծական ֆերմայի վարիչ Հովհաննես Համբարձումյանը: Նրա գործիմացությունն ու անդուլ աշխատանքը վարակում են ֆերմայի մարդկանց ու մեծ չափով նպաստում գործի հաջողությանը: 1955 թվականին կոլտնտեսությունն ուներ 431 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, որից 126-ը կովեր էին: Ենոքավանցիները պարտավորվեցին 1958 թվականին անասունների գլխաքանակը հասցնել 480-ի, որից կովերի թիվը՝ 160-ի: Առաջադրանքը գերակատարվեց. անցյալ*

տարի անասունների թիվը հասավ 519-ի, որից կովերինը՝ 160-ի։ Այս տարի կոլտնտեսությունն ունի 575 գլուխ խոշոր եղջերավոր անասուն (որից կովեր 173), մինչդեռ յոթնամյակի վերջին տարվա համար նրանք պլանավորել էին ունենալ 525 գլուխ։

Առատ է կաթը կոլտնտեսությունում, 1958 թվականին ստացվել է 2652 ցենտներ կաթ, իսկ այս տարի 3081։ Պլանավորված է յոթնամյակի վերջում ստանալ 4140 ցենտներ կաթ։

Գնալով պակասում է կովերի ստերջության տոկոսը, և հորթերի թիվն արդեն հավասարվում է կովերի թվին։ Բայց հորթերի թվի մասին խոսելիս Հովհաննես Համբարձումյանի դեմքին կարծես ամպ է իջնում, որովհետև անցյալ տարի ֆերման մի քանի մատղաշների կորուստ էր տվել, որի համար պարտկազմակերպությունն ու կոլտնտեսականները նրան լավ քննադատել էին։ Չէ՛ որ ամեն ինչ արվում է տնտեսության այս ճյուղն ավելի զարգացնելու և ավելի մեծ արդյունքների հասնելու համար։ Առատ է կերը։ Կոլտնտեսությունը յուրաքանչյուր կովի համար կուտակել է 11 ցենտներ խոտ, 60 ցենտներ սիլոս, 350 կիլոգրամ խտացրած կեր, մեկ ցենտներ կարտոֆիլ։ Այսպիսի առատ կեր է պատրաստվել և ոչխարների համար։ Մնում է աշխատանքը ճիշտ կազմակերպել, մատղաշները հոգատարությամբ, լավ խնամել։

Ֆերմաներում աշխատողները մեծ մասամբ էնտուզիաստ երիտասարդներ են, իսկ ֆերմաների վարիչները ավարտել են եռամյա անասնաբուժական դասընթացը և այժմ իրենց ամբողջ գիտելիքներն ու էներգիան գործադրում են հանրային անասունների խնամքի ճիշտ կազմակերպման վրա։

Վերջին տարիներս կոլտնտեսությունում զգալի գործ է կատարված խոզաբուծությունը զարգացնելու ուղղությամբ։ Այժմ խոզաբուծական ֆերման ունի 140 գլուխ խոզ, որից 15-ը մերուններ են։ Յուրաքանչյուր մերունից տարեկան ստացվում է 10—12 խոճկոր։

1959 թվականին 100 հեկտար հողատարածության դիմաց արտելն արտադրել է 54 ցենտներ միս (1955 թվականի 17,9 ցենտների դիմաց)։ Կոլտնտեսությունը պարտավորվել է 1965 թվականին արտադրել 80 ցենտներ միս։

Ավելի մեծ հաջողություններ ու զարգացման լայն հեռանկարներ ունի թռչնաբուծությունը։ Թռչնապահուհի Աշխեն Օրդինյանը, նախատեսված 600 թև հավի փոխարեն այս տարի աճեցրել է 957 հավ։ Մեկ ածան հավից 75-ի փոխարեն 1958 թվականին նա ստացել է 123 ձու, իսկ այս տարի՝ 140 ձու։ Կոլտնտեսությունը 1958 թվականի 18923 ձվի դիմաց 1959 թվականին ստացել է 32144 ձու։ Յոթնամյակի վերջում այդ թիվը հասնելու է 66000-ի։ Թռչնաբուծությունից այս տարի կոլտնտեսությունն ստացել է 26 660 ռուբլու դրամական եկամուտ, 1958 թվականի 18 304 ռուբլու դիմաց։

Անասնաբուծությունը Ենոքավանի կոլտնտեսության ամենաեկամտաբեր ճյուղն է. դրանից ստացվում է ընդհանուր դրամական եկամտի կեսից ավելին՝ 791 700 ռուբլի։ Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման շնորհիվ այս տարի պլանից դուրս պետությանը վաճառվել է 193,5 ցենտներ միս, 175 ցենտներ կաթ, 13,1 ցենտներ բուրդ և այլ մթերքներ։

Ենոքավանի կոլտնտեսության անասնաբուծության բնագավառի մարդիկ օրեցօր բազմապատկում են իրենց ջանքերը անասնաբուծական մթերքների արտադրանքը կրկնապատկելու համար։ Նրանք գերակատարել են յոթնամյակի առաջին տարվա ստանձնած պարտավորությունները (բացի մսից)։



Բայց, հարգելի ենոքավանցիներ, արդյոք ավելին չի՞ ասվում ձեր հաջողությունների մասին։ Լավ է, որ դուք հավակնություն ունեք 1965 թվականին 2400 գլուխ ոչխար և 230 գլուխ կով ունենալու։ Իսկ պե՞տք է մտածել նաև բրդի ու կաթի արտադրանքն ավելացնելու մասին։ Չնայած միշտ ձեզ մոտ է ՀԿՊ Իջևանի շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, բայց ի՞նչ բան է 3 կգ. բուրդը՝ մեկ ոչխարից, կամ 1800 կգ. կաթը՝ մեկ կովից... Դա դեռ քիչ է, չի բավարարում այսօրվա պահանջը։ Ձեզ մոտ անբավարար է անասունների ցեղի բարելավումը, քիչ է կովերի քանակը նախրի մեջ։ Ձեզ մոտ բոլոր հնարավորությունները կան յոթնամյակի ընթացքում ավելի շատ անասնաբուծական մթերքներ արտադրելու, քան նախատեսված է պլանով։

Ստանձնած պարտավորությունների արագ կատարման մեջ էլ արժե ձեզ մի փոքր կշտամբել։ Մեծ հնարավորությունների առկայության դեպքում դուք շատ ցածր պարտավորություններ եք վերցրել, իսկ դա, անկասկած, չի խթանի տնտեսության արտադրողականության բարձրացմանը։ Բարձր նպատակադրումը ավելի մեծ խիզախումների է մղում մարդուն, նրան ստիպում՝ նոր միջոցներ գտնելու, ավելի մեծ ջանքեր թափելու նպատակին հասնելու համար։ Այո, անշուշտ, կստիպեր ձեզ բարելավել անասունների ցեղը, բրդի որակը։

## ՄԱՐԴԸ ԲՆՈՒԹՅԱՆ ԱՐՀԱՎԻՐՔՆԵՐԻ ԴԵՄ

Ամեն տարի հողի աշխատավորը մեծ ժրաջանությամբ Ենոքավանի շուրջը վարում ու ցանում է 162 հեկտար հողատարածություն և մեծ ակնկալությամբ սպասում ամռան՝ իր թափած քրտինքի արդյունքը վայելելու համար։ Աշնան ու գարնան օրերին քուն ու հանգիստ չունի Սպարտակ Բաբայանը։ Նրա տրակտորը գիշեր ու ցերեկ հնդում է կոլտնտեսության դաշտերում և հերկում ամբողջ վարելահողը։

Բայց հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը դեռևս չի բավարարում կոլտնտեսության պահանջը։ Հեկտարից ստացվում է միայն 10—11 ցենտներ բերք, պլանով նախատեսված 12 ցենտների փոխարեն։

Ենոքավանցիները մշակում են և այլ կուլտուրաներ, որոնց մեջ իր ուրույն տեղն ունի եգիպտացորենը։ Այն հմտորեն է մշակվում և անջրդի պայմաններում միշտ տալիս է սպասածից ավելի բերք։ 1955 թվականին հեկտարից ստացվել է 19,3 ցենտներ, իսկ 1959 թվականին՝ 42,9 ցենտներ հատիկ։

Էլ ավելի եկամտաբեր ճյուղ է ծխախոտագործությունը։ Ծխախոտը նույնպես այստեղ աճում է անջրդի պայմաններում, բայց նրա մշակումն ու խնամքը այնքան լավ ու ժամանակին են կատարվում, որ ջրի պակասություն համարյա չի զգացվում և մշակվող 20 հեկտար ծխախոտի պլանտացիայից միշտ ստացվում է գերազանց բերք։

— Մեր բնական պայմաններն այնպիսին են,— ասում է ծխախոտագործուհի Շախենիկ Բաբայանը,— որ մի փոքր ուշացար, աշխատանքդ արդյունք չի տա։ Անձրևի ամենափոքր դադարի ժամանակ անգամ պետք է պատրաստ լինել՝ տասնապատկված ուժով բերքը հավաքելու։

— Այլ կերպ չի կարելի,— ասում է Պարգևը,— այս գործը մեզ են վստահել պարտիական ու ԼԿԵՄ կազմակերպությունները, մեր կոլտնտեսու-

*թյան ողջ կոլեկտիվը, իսկ մեր մեջ կան և՛ կոմունիստներ, և՛ կոմերիտականներ. մենք չենք կարող այդ վստահությունը չարդարացնել։*

*Ջանասեր կոլտնտեսականների աշխատանքը միշտ բարձր արդյունքներ է տվել. Շ. Բաբայանը 1959 թվականին հեկտարից 13,5 ցենտների փոխարեն ստացել է 18,66 ցենտներ ծխախոտի հումք, իսկ ծխախոտի միջին բերքատվությունը կոլտնտեսությունում կազմել է 15,72 ցենտներ։ Ծխախոտագործները այս տարի պետությանը հանձնեցին 314,4 ցենտներ ծխախոտի բարձրորակ հումք, որի դիմաց կոլտնտեսությունը ստացավ 425000 ռուբլու դրամական եկամուտ։*

*Պետք է տեսնել, թե ինչպիսի ջանասիրությամբ են աշխատում Ենոքավանի մեխանիզատորները բերքահավաքի օրերին։ Ամբողջ ամռանն ու աշնանը կոլտնտեսության երեք բեռնատար մեքենաները աշխատում են օրն ի բուն, պահեստ տեղափոխելով հացահատիկ, անասնաբուծական մթերքներ, կարտոֆիլ, անասնակեր և այլն։ Մեքենավարներ Փաշո Ջիբուխչյանին, Երվանդ Ճաղարյանին, Ջիադին Գաբրիելյանին կոլտնտեսականներն իրավացիորեն անվանում են լեռնային արծիվներ։ Նրանց մեքենաները լրիվ բեռնավորված այնպիսի վայրէջքներ ու վերելքներ են կատարում, որտեղից հետիոտն մարդը դժվարությամբ է անցնում։ Լարված ու անխափան են աշխատում նաև կոլտնտեսության ինքնաթափ և սիլոսացման մեքենաները, կոմբայնը, սերմացանը և այլն։ Մեխանիզատորները հպարտանում են, որ տնտեսության աշխատանքների ծանրության մի պատկառելի մասը կրում են իրենց ուսերին ու հաճույքով են տանում այդ ծանրությունը։*

*Ենոքավանում բանջարեղենը (պոմիդորը, վարունգը, սոխը, կաղամբը) երկրորդ տարին է, որ մշակվում է երկու հեկտարի վրա։ Դրանից առաջ նրանք շատ են փորձել բանջարեղեն աճեցնել, բայց ոչինչ չի ստացվել, որովհետև հողն անջրդի էր։ Երկու տարի առաջ 5 կմ. հեռավորությունից կոլտնտեսականները ջուր հասցրին գյուղ։ Այժմ ջրով ապահովված են բնակիչները. բավարար քանակությամբ ջուր է հասնում անասնագոմերին, բանջարեղենին և տնկիներին։*

*Ջուր չունենալու պատճառով Ենոքավանում մինչև վերջերս էլ չեն եղել այգիներ։ Կրկնվող փորձերը արդյունք չեն տվել, տնկիները չորացել են։ Այժմ 6 հեկտար հողատարածության վրա աճում են խնձորենու և տանձենու տնկիներ, որոնք արդեն երկու տարեկան են։ Կանցնի մի քանի տարի, ու ենոքավանցիները առատ միրգ կունենան։*

*Այսպես, բնության դեմ համառ պայքար մղելով կոլտնտեսականները հաղթահարում են բոլոր դժվարությունները ու ստանում այն, ինչի մասին իրենց պապերն ու հայրերը չեն էլ երազել։*

*— Մեր արտելը տարեցտարի հարստանում է, միշտ հետևում թողնելով անցած տարիների եկամուտների ցուցանիշները,— ասում է կոլտնտեսության հաշվապահ Միհրան Մկրտումյանը։— Նույնիսկ ամենամոտիկ անցյալի՝ 1955 թվականի համեմատությամբ կոլտնտեսության եկամուտները աճել են ավելի քան երկու անգամ, իսկ այս տարի, չնայած կլիմայական պայմանների շատ անբարենպաստ լինելուն, գերազանցել ենք 1958 թվականի արտադրական ցուցանիշները։ 1955 թվականին մեր արտելն ունեցել է 744 219 ռուբլու դրամական եկամուտ, 1958 թվականին այն հասել է 1 541 020 ռուբլու, իսկ այս տարի՝ 1 548 500 ռուբլու։ Եթե 1955 թվականին անբաժանելի ֆոնդին հատկացվել է 111300, 1958 թվականին՝ 277000 ռուբլի, ապա 1959 թվականին հատկացվել է մոտ 300000 ռուբլի։ Այս ցուցանիշները հետագա տարիներին անընդհատ կաճեն, ու մեր արտելը յոթնամյակի վերջում կդառնա ռեսպուբլիկայի բազմաճյուղ ու հարուստ կոլտնտեսություններից մեկը։*



*Կարծես առարկել չի կարելի, ակնառու է կոլտնտեսության որոշակի առաջընթացը։ Բայց եթե անդրադառնանք արտելի տնտեսական առանձին ճյուղերին, նկատելի կդառնա մի ցավալի երևույթ. կարտոֆիլի արտադրության բնագավառում ենոքավանցիները ո՛չ միայն չեն կատարել ստանձնած սոցիալիստական պարտավորությունը, այլև 1958 թվականից էլ ցածր բերք են ստացել։ Մի՞թե դրա պատճառը միայն կլիմայական պայմաններն են։ Այդ, իհարկե, ունեցել է իր բացասական ազդեցությունը, բայց փաստ է և այն, որ գյուղի պարտիական կազմակերպությունն ու կոլտնտեսության վարչությունը աչքաթող են արել այդ կուլտուրայի բերքահավաքի գործը, և նրա մի մասը փչացել է դաշտում։*

*Իսկ ինչո՞վ պատճառաբանել մսի արտադրանքի բնագավառում ստանձնած սոցիալիստական պարտավորության չկատարելը։ Կոլտնտեսությունը 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել է 54 ցենտներ միս, պլանով նախատեսված 76,5 ցենտների դիմաց։ Մի՞թե դարձյալ կլիմայական պայմաններն են մեղավոր։ Ո՛չ, այստեղ էլ որոշակի դեր է խաղացել անպատասխանատվությունը դեպի վերցրած պարտավորությունը։*

*Ենոքավանցիների համար պետք է պարզ լինի, որ ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումը ամեն ժամ, ամեն օր մեզ մոտեցնում է կոմունիզմին։ Միշտ գերազանցել ընդունած պլանների կատարումը, սա է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի պահանջը։ Ենոքավանցիները կոլտնտեսային արտադրության բոլոր ճյուղերում պետք է հասնեն դրան։*

## ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ԱՇԽԱՏԱՆՔՆ Է ԾՆՈՒՄ ԲԱՐԻՔՆԵՐ

*— Վաղուց է, որ մեր կոլտնտեսությունում վերացել է աշխատանքից խույս տալու երևույթը,— ասում է պարտկազմակերպության քարտուղար Ազատ Ճաղարյանը։ Դրա դեմ, իհարկե, պայքարը կարճատև չի եղել, տարիներ են անցել, մինչև գյուղի աշխատավորությունը համախմբվել ու դարձել է հարուստ տնտեսության տեր։*

*Կոլտնտեսության կազմակերպման հենց առաջին օրերից կոմունիստներն իրենց ձեռքն են վերցրել հանրային տնտեսության աշխատանքների ղեկավարությունը։ Կոմունիստին հատուկ համառությամբ նրանք մարդկանց մեջ կարգապահություն ու սեր են պատվաստել դեպի աշխատանքը, վերափոխել նրանց և աշխատանքը դարձրել հաճելի ու պատվի գործ։ Ենոքավանում կոմունիստների թիվը այժմ հասնում է 39-ի, որոնցից արտադրության մեջ աշխատում են 30-ը։ Նրանք բոլորը առաջավորներ են ու աշխատում են տնտեսության տարբեր ճյուղերում։ Բոլոր բրիգադավարները, օղակավարները, ֆերմաների վարիչները, ինքը՝ կոլտնտեսության նախագահը պարտկազմակերպությանն ու կոլեկտիվին հաշիվ են ներկայացնում իրենց բնագավառի աշխատանքի վիճակի մասին։ Այսպես ավելի հեշտ է նկատվում թերությունը և կոլեկտիվ ուժերով վերացվում է այն։*

*Կոլտնտեսությունում լայնորեն տարածված է սոցիալիստական մրցությունը: Աշխատում են ու մրցում բոլորը—կոլտնտեսականը՝ կոլտնտեսականի, օղակը՝ օղակի, բրիգադան՝ բրիգադայի հետ, մրցում են նույնիսկ փոքրիկ դպրոցականները, երբ սկսվում է ծխախոտի տերևաքաղը. իսկ կոլտնտեսությունը մրցում է հարևան Խաշթառակ գյուղի կոլտնտեսության հետ:*

*Աշխատանքի կազմակերպման մեջ մեծ տեղ է տրվում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացմանը: Պլանից ավելի ստացած մթերքների 10—20 տոկոսի արժեքը որպես պարգև տրվում է կոլտնտեսականներին: Դա մեծ չափով նպաստում է արտադրանքի ավելացմանը: Պատահական չէ, որ այստեղ աշխատանքի երաշխավորված մինիմումը տարեսկզբի յոթ ռուբլուց տարեվերջին հասնում է 12—13 ռուբլու:*

*Աշխատանքի աշխօրային վարձատրությունը դրամական վարձատրությամբ փոխարինելը բարձրացրել է կոլտնտեսականների աշխատանքային և նյութական շահագրգռվածությունը: Այժմ նրանք ավելի բարձր վարձատրություն են ստանում, քան նախկինում: Հ. Նիազյանը, Մ. Ճաղարյանը, Հ. Գաբրիելյանը և ուրիշներ 1958 և 1959 թվականներին աշխօրի դիմաց ստացել են 25—30 հազար ռուբլի, իսկ Սամսոն Բաբայանի ընտանիքը այս տարի ստացել է 37650 ռուբլի: Բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, կրկնապատկվել արտելի եկամուտը, բազմապատկվել է անբաժանելի ֆոնդին հատկացվող գումարը, իջել արտադրանքի ինքնարժեքը:*

*Գյուղում բարելավվել են նաև բնակչության կենցաղային պայմանները, բարձրացել է նրա կուլտուրական մակարդակը:*

*— Երբ տուն եմ մտնում,— ասում է Սամսոն Բաբայանը,— ու տեսնում գորգեր, փայլուն մահճակալներ, հրաշալի պահարան, ռադիոընդունիչ և տնային այլ կարասիներ, լավ հագնված երեխաներ, ակամայից հրճվում է հոգիս, և ուզում եմ աշխատել ոչ թե մեկի, այլ տասնի փոխարեն: Չէ՛ որ այս ամենը կոլտնտեսային կյանքն է տվել ինձ:*

*— Շա՛տ ճիշտ է ասում Սամսոն քեռին,— միաբերան գոչում են կոլտնտեսականները: Ապա նրանք հիշում են իրենց պապերին ու ծնողներին, որ «տարին տասներկու ամիս աշխատում էին, բայց էլի էն սոված ու տկլորն էին»:*

*Նրանց աշխատանքային վերելքին նպաստում են նաև օրվա հուզող հարցերի մասին կարդացվող զեկուցումները, զրույցները, կինոնկարները, ինքնագործ խմբակների ելույթները, թերթերի ընթերցանությունը և այլն:—Դրանք հաճելի են դարձնում աշխատանքը, մոռացնել տալիս հոգնածությունը,— ասում են կոլտնտեսականները. եթե մեր ղեկավար ընկերները, երիտասարդությունը հաճախակի կազմակերպեն այսպիսի միջոցառումներ, ավելի լավ օգնած կլինեն մեր կոլտնտեսության յոթնամյա պլանի կատարմանը:*

*Ահա և նրանց գրադարանի ընթերցողների ցուցակը. այնտեղ գրանցված են 145 ընթերցողներ, որոնք լարված աշխատանքի հետ տարեկան 10—12 կտոր քաղաքական ու գեղարվեստական գիրք են կարդում, կազմակերպում են ընթերցած գրքերի քննարկումներ: Գյուղում ստացվում են 150 օրինակ թերթ ու ամսագիր:*

*— Այս բոլորը լավ է, օգնում է կոլտնտեսականների քաղաքական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը,— ասում է հին բոլշևիկ Արմենակ Փաշինյանը,— բայց լավ կլինի, եթե մեզ մոտ երևան նաև արտիստներ, արվեստի աշխատողներ. ախար մենք շնորհքով արտիստի, երգչի, ասմունքի վարպետի, արվեստագետի երես քիչ ենք տեսնում մեր այս հրաշալի բարձունքի վրա:*



*Այժմ ենոքավանցիները մեկ ձգտում ունեն—յոթնամյա պլանը կատարել վեց տարում. բայց նրանք ունենք ավելի մեծ հնարավորություններ և հեշտությամբ կարող են անասնաբուծական և գյուղատնտեսական որոշ մթերքների արտադրության բնագավառում շատ ավելի հեռուն գնալ, քան վերցրած պարտավորություններն են:*

*Ենոքավանի արտելի աշխատասեր ու միահամուռ կոլեկտիվը յոթնամյակի առաջավորների շարքում կարող է նվաճել պատվավոր տեղ:*

Ա. ԱՍՐՅԱՆ

## ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի Հունիսյան պլենումի որոշումներում նշվեցին նաև քիմիական արդյունաբերության տեխնիկական հետագա վերազինման, ժամանակակից բարձր արտադրողական ապարատների և մեքենաների, բոլոր աշխատատար և օժանդակ պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն արմատավորելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղիները, որպեսզի յոթնամյակի ընթացքում հնարավորին չափ կրճատվի ձեռքի ծանր աշխատանքը:*

*Հայաստանի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները որոշակի աշխատանք են կատարել այդ ուղղությամբ:*

*Արտադրության ավտոմատացման և մեքենայացման գործին օգնում են ռացիոնալիզատորներն ու գյուտարարները: Օգոստոսի 5-ից մինչև սեպտեմբերի 5-ը անցկացված տեխնիկական պրոգրեսի հասարակական ստուգատեսի միամսյակը արդյունաբերական աշխատողների ստեղծագործական հզոր մտքի ցուցադրումն էր: Միամսյակի արդյունքները ըստ քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների բնութագրվում են հետևյալ թվերով: Մշակվեց 140 միջոցառում և տրվեց 110 ռացիոնալիզատորական առաջարկություն՝ մոտավորապես 10 300 000 ռուբլու պայմանական տնտեսական օգուտով: Այդ նույն ժամանակամիջոցում արտադրության մեջ ներդրվել է 28 խոշոր միջոցառում՝ 1 միլիոն 160 հազար ռուբլու տնտեսական օգուտով:*

*Բավական է նշել, որ միայն 3 գործարանում (Ս. Մ. Կիրովի անվան, ավտոդողերի և պոլիվինիլացետատ). 1958 թվականին արմատավորվել է 1524 ռացիոնալիզատորական առաջարկություն՝ 10 380 հազար ռուբլու պայմանական տնտեսական օգուտով: Առանձնապես արժեքավոր է Կիրովի անվան գործարանի մի խումբ աշխատակիցների առաջարկությունը՝ քլորոպրենի պոլիմերիզացման ջերմային ռեժիմի ավտոմատ կարգավորման մեթոդի վերաբերյալ: Արտադրության մեջ ներդրված այդ առաջարկությունը գործարանին տվեց 700 հազար ռուբլու տնտեսական օգուտ: Ջերմային ռեժիմը ճիշտ վարելու շնորհիվ լավացել է նաիրիտի որակը (ըստ միասեռության և պլաստիկության), վերացել է գերտաքացումը, որի շնորհիվ քլորոպրենը ցեխում չի գոլորշիանում. պակասել են գազակուտակումները, բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը:*

Ուշադրության արժանի է ռացիոնալիզատոր ընկ. Ա. Մարտիրոսյանի առաջարկությունը. նա ստեղծել է մի ավտոմատ, որը կարբիտի ցեխում կարգավորում է էլեկտրաաղեղային վառարանի էլեկտրական պարամետրերը։ Մինչև այժմ կարբիտի ցեխում տեղակայված էին «ХЭМЗ» մարկայի ավտոմատներ, որոնք պահանջում էին մշտական խնամք և կոնտակտների պարբերական փոփոխում։ Աշխատանքում «ХЭМЗ» ավտոմատներն այնքան էլ հուսալի չեն, ավտոմատի տեխնիկական անկատարելիության հետևանքով հաճախ ավտոմատները շեղվում են սահմանված պարամետրերից։ Ընկ. Ա. Մարտիրոսյանի ավտոմատը երկրորդային շղթայում կոնտակտներ չունի, որի շնորհիվ այրուքների հետևանքով խանգարումներ տեղի չեն ունենում. այս սխեման թույլ է տալիս սահմանել անզգայնության ցանկացած գոտի, անձնակազմին ազատում է մշտապես հսկելու, սպասարկելու պարտականությունից։

Մինչև 1956 թվականը Կիրովի անվան գործարանի կրի ուածխի պահեստում աշխատանքները ձեռքով էին կատարվում։ Դրանով զբաղվում էր մոտ 52 մարդ։ Ձեռքի աշխատանքը միշտ չէր ապահովում կրակիզիչ վառարանների նորմալ լցումը։ Դա գործարանի ամենածանր տեղամասերից մեկն էր։ Էստակադ և գրեյֆ ունեցող կամրջակռունկի տեղակայումից հետո պահեստում բանվորների թիվը կրճատվեց 30—35 մարդով. պայմաններ ստեղծվեցին երկհերթ աշխատանքի համար, լիկվիդացվեցին վառարանների լցման խախտումները։

Այդ նույն գործարանում կարբիտի վառարաններին հումքը մատակարարվում էր բեռնող ապարատների միջոցով, որոնք այն տեղափոխում էին 30—40 մետր հեռավորությունից։ Հումքի մատակարարման հնացած մեթոդը չէր ապահովում արտադրության աճը։ Մարդիկ (այդ աշխատանքում զբաղված էին 25 հոգի) և բեռնող ապարատները աշխատում էին լցման հրապարակներում, որոնք նեղ էին, փոշոտ. այնտեղ անտանելի շոգ էր, որն ազդում էր բանվորների առողջության, ինչպես նաև տեխնոլոգիական ռեժիմի կիրառման վրա։

Կարբիտի վառարանների սնուցման հնացած մեթոդը փոխվեց։ Այժմ ամեն մի վառարանի վրա մոնտաժված է ծախսող բունկեր՝ խողովակագծով։ Այդ միջոցառումը հնարավորություն տվեց ֆիզիկական ծանր աշխատանքից ազատել 20 բանվորի և պայմաններ ստեղծեց՝ տեխնոլոգիական ռեժիմը լավ կատարելու և աշխատանքի արտադրողականությունը 10—12 տոկոսով բարձրացնելու համար։

Երևանի ավտոդողերի գործարանում ամենադժվարը ավտոդող հավաքելն էր, որովհետև բոլոր պրոցեսները իրականացվում էին ձեռքի միջոցով։ Ներկայումս գործարանում հավաքող հաստոցների վրա դրված է ինժեներ Պիլեգինի ստեղծած հարմարանքը, որը հնարավորություն է տալիս մեքենայացնելու ավտոդողերի հավաքման աշխատանքների մեծ մասը։ Ընդ որում խիստ բարձրացել է հավաքման որակը, անհամեմատ թեթևացել բանվորների աշխատանքը։ Այդ միջոցառման արմատավորումը աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 15 տոկոսով, իսկ տնտեսական օգուտը հասցրել տարեկան 600 000 ռուբլու։

Ավտոդողերի գործարանում պատասխանատու և աշխատատար պրոցեսներից մեկը, որից հիմնականում կախված է արտադրանքի որակը, վուլկանիզացիան է (եփումը)։ Այն կատարվում է մի քանի ստադիաներով, տարբեր ջերմաստիճաններում և գերճնշված ջրի ճնշման տակ։ Ավտոկլավները, որոնցում կատարվում է վուլկանիզացիան, հսկայածավալ են, կոմունիկացիաները՝ բարդ։ Շատ դժվար է վուլկանիզացիայի կատարումը ձեռքի միջոցով, իսկ տեխնոլոգիական ռեժիմը պահպանելը՝ համարյա անհնար։ Ավտոմատ կարգավորումը վուլկանիզացման պրոցեսում ստեղծել է հստակություն և ճշտություն, բավականաչափ հեշտացրել և կրճատել է բանվորների աշխատանքը։ Ավտոդողերի վուլկանիզացման պրոցեսների ավտոմատ կարգավորումից ստացված տարեկան խնայողությունը կազմում է 180 000 ռ.։



Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության գործարաններում ավտոմատացված են առանձին պրոցեսներ և արվում են առանձին ցեխերի ավտոմատացման առաջին քայլերը։ Մոտիկ ապագայում կստեղծվեն ավտոմատացված ցեխեր, ցեխերի խմբեր և ամբողջ գործարաններ։

Պոլիվինիլացետատ գործարանի մի խումբ աշխատողներ առաջարկեցին քացախաթթվի արտադրության մեջ ավտոմատացնել օքսիդացման աշտարակի աշխատանքի հիմնական պարամետրերը։ Այժմ աբսորբցիոն գազերի ճնշումը, աշտարակի ցարգաների ջերմաստիճանը, ընդարձակիչի մակարդակը կարգավորվում են ավտոմատ կերպով, առանց մարդու միջամտության։ Ավտոդողերի գործարանի ռացիոնալիզատորները մեքենայացրել են ցեխերի ներսում կիսաֆաբրիկատի տեղափոխման մի շարք աշխատանքներ, ստեղծել հաստոցների ճիշտ հոսքային դասավորություն արտադրության պրոցեսում, մեքենայացված է կաուչուկի կտրումը և այլն։

Ընկ. Վ. Առուստամյանի առաջարկությամբ ռետինե խառնուրդի փոխադրիչ տեղակայելու միջոցով իրագործված է ուղիղ հոսք՝ նախապատրաստման ցեխից դեպի կալանդրինները կորդի ռետինապատման համար։ Այս միջոցառումը վերացրեց ներցեխային փոխադրումների մի մասը, որը գործարանի նեղ տեղամասերից մեկն էր։

Ընկ. Կարաքեշյանը առաջարկել է կաուչուկը կտրելու նոր մեխանիզմ։ Առաջ այդ աշխատանքը կատարում էին ձեռքով՝ դանակի օգնությամբ։ Առաջարկված մեխանիզմը մեծ չափով հեշտացնում է բանվորի աշխատանքը և արագացնում կտրելու գործողությունը։

Ավտոմատացման և մեքենայացման հարցերը լայն արձագանք են գտնում ռեսպուբլիկայի գործարանների կոլեկտիվներում։ Բանվորները դառնում են արտադրության տեխնիկական առաջադիմության ակտիվ նախաձեռնողներ։ Ավտոմատացման և մեքենայացման ամեն մի դեպք ուրախությամբ է ընդունվում տեղամասի բանվորների կողմից և արագ յուրացվում է։

Սակայն դեռ կան դեպքեր, երբ գործարանների ղեկավարները առանց պատճառի ձգձգում են ավտոմատացման սխեմաների կենսագործումը, պասիվ վերաբերմունք են ցուցաբերում ուրիշ գործարանների նվաճումները իրենց մոտ արմատավորելու ուղղությամբ։

Տեխնիկական միջոցառումների պլանով նախատեսված էր Կիրովականի քիմկոմբինատում 1958 թվականի երրորդ և չորրորդ եռամսյակներում ավտոմատացնել թույլ ազոտաթթվի և ամոնիակի սելիտրայի արտադրությունը։ Դրա համար «Ավտոմատիկա» ինստիտուտը ժամանակին մշակեց սխեմա և կոմբինատի հետ միասին ձեռք բերեց սարքերի և նյութերի զգալի մասը։ Սակայն կոմբինատի տեխնիկական ղեկավարությունը միայն 1959 թվականի երրորդ եռամսյակում ձեռնամուխ եղավ այդ աշխատանքին։ Նախնական ֆինանսական հաշիվների համաձայն ազոտաթթվի արտադրության ավտոմատա-

ցումից ստացվելիք տնտեսական օգուտը տարեկան կկազմի 675 հազար ռուբլի, իսկ ամոնիակի սելիտրայինը՝ 182 հազար ռուբլի։ Դրա համար անհրաժեշտ է անհապաղ ավտոմատացնել այդ ցեխերի աշխատանքները։ Այլևս չենք խոսում այն մասին, որ ժամանակն է թեթևացնելու ազոտաթթվի արտադրության մեջ աշխատող բանվորների աշխատանքը։

Կիրովի անվան գործարանում դեռևս 1954—1955 թվականներին կոնստրուկտոր Պ. Մնացականյանը վերակառուցեց կարբիտի վառարանի սեղմիչ օղակը, որը հնարավորություն տվեց մասամբ մեքենայացնելու էլեկտրոդի տարաթողումը. այդ զգալի չափով թեթևացնում է բանվորների աշխատանքը։ Մոտավորապես նույն ժամանակամիջոցում Կարագանդայի կարբիտի գործարանում մշակվեց նոր կոնստրուկցիայի կոնտակտային սալ, որի պատրաստումը անհամեմատ ավելի պարզ է, տալիս է դեֆիցիտային գունավոր մետաղի խնայողություն և լավացնում կոնտակտը. էլեկտրոդ-սալը ավելի էլեկտրադիմացկուն է դառնում։

Թվում էր, թե Կիրովի անվան գործարանի ցեխի և Կարագանդայի կարբիտի գործարանի նվաճումները պետք է հետաքրքրեին Կիրովականի քիմկոմբինատի ղեկավարությանը, սակայն բոլորովին անտեսվեցին դրանք։

Թերություններից պետք է նշել հատկապես այն, որ արտադրության տեխնիկական առաջադիմության բնագավառում գործարանները սահմանված ժամկետին չեն կատարում նշված միջոցառումները, որի հետևանքով չկատարված գործերը մտցվում են հաջորդ տարիների պլանների մեջ։ Բերենք հետևյալ փաստը. ազոտաթթվի և ամոնիակի սելիտրայի արտադրության պրոցեսների ավտոմատացումը Կիրովականի քիմկոմբինատում պետք է իրականացվեր 1958 թվականին։ Սակայն այդ միջոցառումները ժամանակին չկատարվեցին և մտան 1959 թվականի պլանի մեջ։ Սա հետևանք է նաև այն բանի, որ ժամանակին չի կազմվում տեխնիկական դոկումենտացիան և գործարանները չեն ապահովվում անհրաժեշտ սարքավորումներով։ Այնպիսի միջոցառում, ինչպիսին է ազաղթթվի արտադրության ավտոմատացումը, ժամանակին չի կատարվել տեխնիկական դոկումենտացիա չլինելու պատճառով, կրկնարագային ռետինախառնում չի կատարվել սարքավորումներ չլինելու պատճառով։

Նոր տեխնիկայի արմատավորման պլանը չի կատարվում նաև այն պատճառով, որ ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները դեռևս անհրաժեշտ չափով խորամուխ չեն լինում գործարանների բաժինների աշխատանքի էության մեջ, քիչ են զբաղվում պլանավորման, մատակարարման, ինչպես նաև ընդունված որոշումների կատարումն ապահովելու հարցերով։ Հաճախ հաշտվողական վերաբերմունք են հանդես բերում իրենց աշխատանքներում թերացող կազմակերպիչների նկատմամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում է ուշադրությունը կենտրոնացնել տեխնիկական առաջադիմության բնագավառի պրակտիկ խնդիրների կենսագործման վրա, որպես յոթնամյա պլանի կատարման վճռական պայման։

Պարտիական կազմակերպությունների առաջ ծառանում են կազմակերպական, արտադրական և դաստիարակչական բնույթի բազմապիսի խնդիրներ, որոնց ճիշտ լուծումից է կախված յոթնամյա պլանի կատարումը։ Նրանք



կոչված են ամեն կերպ պրոպագանդելու գիտության ու տեխնիկայի նվաճումները, գլխավորելու տեխնիկական առաջադիմության համար մղվող պայքարը, անդուլ կերպով վերահսկելու կոմպլեքսային մեքենայացմանն ու պրոցեսների ավտոմատացմանը։

Մ. ՄԱՐԴՈՅԱՆ

## ԼԱՅՆ ՃԱՆԱՊԱՐՀ ԻՆՔՆԱԳՈՐԾ ԱՐՎԵՍՏԻՆ

Մեր ռեսպուբլիկայում գործում են 35000-ից ավելի մասնակիցներ ունեցող տարբեր ժանրերի մոտ 2000 գեղարվեստական ինքնագործ խմբեր, որոնք շնորհակալ աշխատանք են կատարում աշխատավորության կուլտուրական սպասարկման գործում։ Ամեն տարի նրանք կազմակերպում են մոտ 20000 համերգ, ներկայացում, որոնց ներկա են լինում ավելի քան երեք և կես միլիոն հանդիսական։ Այս թվերը մի քանի անգամ գերազանցում են պրոֆեսիոնալ խմբերի տված համերգների ու ներկայացումների թվից։

Այստեղից էլ անհրաժեշտ է, որ պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունները և Կուլտուրայի մինիստրությունը ավելի լրջորեն զբաղվեն ինքնագործ արվեստի հարցով, քանի որ մեր աշխատավորության կուլտուրական սպասարկման հարցերը սերտորեն կապված են գեղարվեստական ինքնագործունեության զարգացման հեռանկարների հետ։

Մեզ մոտ, իհարկե, այդ ուղղությամբ արդեն որոշակի քայլեր են կատարվում։ Երաժշտական, թատերական և այլ ժանրերի ինքնագործունեության բազայի վրա ստեղծվում են ինքնագործ արվեստի նոր, բարձր աստիճան հանդիսացող «ժողովրդական թատրոններ» և «ժողովրդական ինքնագործունեության թատրոններ»։

1957 թվականի ռեսպուբլիկական և համամիութենական առաջին ու համաշխարհային երիտասարդության 6-րդ ֆեստիվալների արդյունքները վկայում են այն մասին, որ ռեսպուբլիկայում գեղարվեստական ինքնագործունեությունն աշխատավորության և մասնավորապես երիտասարդության մեջ մեծ մասսայականություն է վայելում։

1957 թվականի երիտասարդական առաջին ռեսպուբլիկական ֆեստիվալի կոնկուրսներին մասնակցող 30 երգչախմբեր, 30 երգի-պարի անսամբլներ, 12 էստրադային, 15 պարային և այլ խմբեր իրենց կատարողական արվեստով գերազանց էին։ Իսկ Հայէլեկտրո գործարանի երգչախումբը (գեղարվեստական ղեկավար Ն. Սնգրյան) և Թալինի շրջանի Աշնակ գյուղի պարի խումբը (գեղարվեստական ղեկավար Վ. Արիստակեսյան) համամիութենական և համաշխարհային ֆեստիվալների կոնկուրսներում շահեցին երկու ֆեստիվալների լաուրեատի պատվավոր կոչումը։ Այդ խմբերը իրենց կատարման արվեստով տչնչով չեն զիջում պրոֆեսիոնալ խմբերին։

Տարիներ շարունակ Վեդիի շրջանի գեղարվեստական ինքնագործունեությունը անմխիթար վիճակում էր գտնվում։ Սակայն այսօր նրանց թատերական ինքնագործ խումբը, ստուգատեսին շահելով երկրորդ մրցանակը, շարունակում է իր գործունեությունը, նոր բեմադրություններով սպասարկում շրջանի աշխատավորությանը։ Առանձին ուշադրությամբ են շրջապատված Ստեփանավանի, Արթիկի, Մարտունու, Աղինի և մի շարք այլ շրջանների գեղարվեստական ինքնագործ խմբերը։

Սակայն նույնը չի կարելի ասել Բասարգեչարի, Ախուրյանի, Կամոյի և

*այլ շրջանների մասին։ Այդ շրջանների ինչպես պարտիական, այնպես էլ սովետական կազմակերպությունները անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում գեղարվեստական ինքնագործունեության հարցերին, որի հետևանքով և այդ շրջաններում գեղարվեստական ինքնագործունեությունը ցածր մակարդակի վրա է գտնվում։*

*Ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում գեղարվեստական ինքնագործ խմբերը, որ լուրջ հաջողությունների են հասել, ունեն արվեստին գիտակ, բանիմաց, որակյալ ղեկավարներ, որոնք ջանք չեն խնայել և խոշոր դեր են խաղացել այդ խմբերի գեղարվեստական որակը բարձրացնելու գործում։*

*Ռեսպուբլիկայում գեղարվեստական ինքնագործունեության հետագա զարգացման խնդիրը սերտորեն կապվում է այդ բնագավառի կադրերի, ինչպես նաև արվեստի ու կուլտուր-լուսավորական ցանցի ուսումնական հաստատություններում կադրերի պատրաստման հետ։ Հարց է ծագում, մի՞թե Կոմիտասի անվան կոնսերվատորիայի, Երևանի, Լենինականի, Կիրովականի երաժշտական ուսումնարանների շրջանավարտները չեն կարող բավարարել այդ բնագավառի պահանջը։ Իհարկե, կարող են։ Բայց շրջանավարտների զգալի մասը չի մեկնում շրջանները, իսկ մեկնող կադրերը այնքան են ծանրաբեռնվում երաժշտական դպրոցներում, որ չեն համաձայնվում ինքնագործ խմբեր ղեկավարել։*

*Բացի այդ, շրջանավարտները, որոնք անգամ համաձայնում են շրջան մեկնել, այնպիսի պահանջներ են ներկայացնում, որպիսիք շրջանային կազմակերպությունները չեն կարող բավարարել։ Ինչո՞ւ Բժշկական, Պոլիտեխնիկական, Գյուղատնտեսական, Մանկավարժական ինստիտուտների շրջանավարտները կարող են 600—800 ռուբլի աշխատավարձով շրջան մեկնել և իրենց պարտքը կատարել, իսկ երաժշտական, թատերական ուսումնական հաստատությունների շրջանավարտները՝ ոչ։ Չենք ասում այլևս այն մասին, որ այդ կադրերը իրենց մեթոդական պատրաստականությամբ դեռևս շատ հեռու են գեղարվեստական ինքնագործ խումբ ղեկավարելուց։*

*Այս կարևոր հարցի լուծումը մեծ մասամբ կախված է Կուլտուրայի մինիստրությունից և Արվեստի գործերի վարչությունից։ Մեր կարծիքով արվեստի ուսումնական հաստատությունները պետք է ընդունեն շրջանների, գյուղերի այն երիտասարդներին, որոնք ուսումն ավարտելուց հետո կվերադառնան իրենց բնակավայրը և հասարակական հանրօգուտ աշխատանք կկատարեն։*

*1958—1959 թթ. ուսումնական տարվա նախօրյակին ժողովրդական ստեղծագործության ռեսպուբլիկական տունը Մեղրիից, Շամշադինից, Բասարգեչարից և Եղեգնաձորից եկած տասնամյա կրթությամբ յոթ ընդունակ երիտասարդների ներկայացրեց Երևանի երաժշտական ուսումնարան ընդունվելու համար։ Նրանցից միայն մեկը լավ գնահատական ստացավ, մյուսները երաժշտական տվյալներով արժանացան գերազանց գնահատականի։ Սակայն մեկը պատմությունից, մյուսները ռուսաց լեզվից կտրվելու կամ սոլֆեջոյից տարրական գաղափար չունենալու պատճառով չընդունվեցին երաժշտական ուսումնարան։*

*Ավելի վատ է վիճակը ակումբա-գրադարանային տեխնիկումում, որի ակումբային բաժնի շրջանավարտները պետք է ունենան արվեստի որևէ ճյուղի մասնագիտություն և ղեկավարեն որևէ ժանրի ինքնագործ խումբ։ Սակայն տարիներ շարունակ այդ տեխնիկումը չի տվել գեթ մի շրջանավարտ,*



*որը կարողանար միաժամանակ ղեկավարել գեղարվեստական որևէ ինքնագործ խումբ։*

*Մեր ռեսպուբլիկայի համարյա բոլոր շրջկենտրոններում, հարյուրավոր գյուղերում կառուցվել են հիանալի կուլտուրայի տներ, ակումբներ, իրենց հանդիսասրահներով, փորձասենյակներով և այլ հարմարություններով։ Մեր աշխատավորությունը ցանկանում է այդ գեղեցիկ շենքերում վայելել իր կուլտուրական հանգիստը։ Բայց կադրերի պակասը հաճախ հնարավորություն չի տալիս բավարարելու նրանց այդ ցանկությունը։*

*Կադրերի պատրաստման խնդիրը, ինչպես նշեցինք վերևում, վճռական նշանակություն ունի գեղարվեստական ինքնագործունեության զարգացման համար։ Կուլտուրայի մինիստրությունը պետք է ամենակարճ ժամանակամիջոցում լուծի այս խնդիրը։*

*Մյուս կարևոր խնդիրը ժողովրդական գործիքների արտադրության և այդ գործիքների վրա նվագել սովորեցնելու գործի կազմակերպումն է։ Երաժշտական գործիքների արտադրության մասին մամուլում բազմիցս հոդվածներ են եղել, քննադատության է ենթարկվել Հայարդխորհրդի «Կենցաղ» արտելի՝ թառերի, քյամանչաների, դհոլների արտադրանքը։ Սակայն, ըստ երևույթին, Հայարդխորհուրդը դրան նշանակություն չի տալիս։ Դրա հետևանքով էլ արտադրվում են 140 ռ. արժողությամբ անորակ թառեր, քյամանչաներ, որոնք համարյա չեն օգտագործվում։ «Կենցաղ» արտելը «ընդառաջելով» գնորդների պահանջին, այս անգամ թողարկեց 390 ռուբլու արժողությամբ թառեր, քյամանչաներ, որոնք իրենց որակով նախկիններից համարյա չեն տարբերվում։ Էլ չենք ասում արտադրության կատարյալ տնայնագործական ձևի և այն մասին, որ թողարկվում են միայն թառ ու քյամանչա. չկան դուդուկներ, քանոններ, թութակներ, որոնք իրենց հնչողական առանձնահատկություններով կհարստացնեն ժողգործիքների անսամբլները։ Մեզ թվում է, որ Հայարդխորհուրդը կարող է և պետք է լուծի այդ հարցը։*

*Ժողգործիքների անսամբլների հարցը միայն գործիքներ ունենալով չի սպառվում. անհրաժեշտ է սովորեցնել այդ գործիքների վրա նվագել։*

*Ճիշտ է, ժողստեղծագործության ռեսպուբլիկական տունը զբաղվում է այդ հարցով, սակայն այդ շատ քիչ է։ Նա հնարավորություն ունի իր երկամսյա կուրսերում տարեկան միայն 20—25 հոգի ընդգրկելու, սակայն այս քանակը չի ապահովում այդ բնագավառի պահանջները։ Անհրաժեշտ է ժողովրդական գործիքների վրա մասսայական ուսուցումը կազմակերպել ոչ թե «սազանդարային» սկզբունքներով, այլ երաժշտական կուլտուրայի ընդհանուր ճանաչում գտած ձևերով, երաժշտական գրագիտության սկզբունքներով։ Պետք է օգտագործել Ուկրաինայի օրինակելի փորձը։ Այնտեղ վերադաս մարմինների միջամտության շնորհիվ կոլտնտեսությունների և այլ կազմակերպությունների նյութական միջոցներով ժողովրդական ստեղծագործության կենտրոնական տունը կազմակերպում է բայանի և այլ ժողովրդական գործիքների վրա նվագողների վերապատրաստման 6-ամսյա կուրսեր։ Այդ նպատակով յուրաքանչյուր կազմակերպություն ամեն մի ուսանողի հատկացնում է 3600 ռուբլի։ Մի՞թե հնարավոր չէ մեզ մոտ ևս այդ գործը նույն ձևով կազմակերպել։*

*Մասսաների երաժշտական-գեղարվեստական դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունեն ինքնագործ երգչախմբերը։ Սակայն շր-*

*ջաններում կազմակերպված այդ խմբերը կադրերի պակասի հետևանքով դադարեցրել են իրենց գործունեությունը։*

*Լավ չէ վիճակը նաև փողային նվագախմբերում, որոնց նկատմամբ այն թյուր կարծիքը կա, որ իբր թե նրանք անհրաժեշտ են միայն շքերթների, հանդիսավոր նիստերի և պար-երեկոների համար։ Անտեսվում է այն, որ փողային նվագախմբերը մյուս երաժշտական խմբերի նման ունեն գեղարվեստական մեծ նշանակություն և որ իրենց ռեպերտուարով կարող են համերգների մասնակցել։ Երևանում գործող 60 փողային նվագախմբերից միայն Կիրովի անվան գործարանի և Հայէլեկտրո գործարանի նվագախմբերն են, որ ունեն պատշաճ գեղարվեստական ռեպերտուար։ Մնացածները զբաղված են քայլերգեր և մի քանի վալսեր նվագելով։ Ավելին, հաճախ այդ նվագախմբերը ղեկավարում են այնպիսի մարդիկ, որոնք իրենց որակով միանգամայն ցածր մակարդակի վրա են կանգնած։*

*Որոշ շրջանների ինքնագործ խմբերի որակի ցածր լինելը բացատրվում է լավորակ կադրերի բացակայությամբ։ Իսկ ինչո՞վ բացատրել այն, որ Երևանի, Լենինականի, Կիրովականի ինքնագործ շատ խմբեր նույնպես ցածր մակարդակի վրա են գտնվում։ Մի՞թե հնարավոր չէ քաղաքային խմբերը ապահովել լավ մասնագետներով։ Իհարկե, հնարավոր է, սակայն շատ մասնագետներ խուսափում են ինքնագործ խմբերում աշխատելուց։*

*Հարց է ծագում, ինչո՞ւ մեր ավագ սերնդի երաժիշտները՝ Կոմիտասը, Կարա-Մուրզան, Ս. Մելիքյանը, Ռ. Մելիքյանը և շատ ուրիշներ իրենց երաժշտական-մանկավարժական գործունեությունը զուգակցել են հասարակական գործունեության հետ, երգչախմբային արվեստի պրոպագանդիստներ են եղել ոչ միայն խոսքով, այլև գործնական դեր են կատարել երգչախմբերի կազմակերպման, ղեկավարման գործում։ Չէ որ այժմ մենք ունենք երիտասարդ կոմպոզիտորների մի բանակ։ Ինչո՞ւ նրանցից յուրաքանչյուրը չեֆության կարգով շաբաթական 4 ժամ չի տրամադրում ղեկավարելու գործարանային երգչախմբերը։ Ինչո՞ւ մեր Նկարիչների միությունը, որ հարյուրավոր անդամներ ունի, չի կարող օգնել գյուղական ակումբներին՝ ձևավորելու, հարստացնելու ցուցադրական ագիտացիոն նյութերը, ձևավորելու ինքնագործ թատերախմբերի ներկայացումները։*

*Այս և շատ հարցեր պահանջում են իրենց լուծումը։ Ժամանակն է, որպեսզի պարտիական կազմակերպությունները, Կուլտուրայի մինիստրությունը, ՀԱՄԽ-ը, ստեղծագործական կազմակերպությունները հանգամանորեն զբաղվեն այդ հարցով և ամեն կերպ նպաստեն գեղարվեստական ինքնագործունեության հետագա զարգացմանը։*

*Մ. ՔՐԻՇՋՅԱՆ*

Արվեստի վաստակավոր գործիչ, ժողովրդական ստեղծագործության ռեսպուբլիկական տան դիրեկտոր

---

# ԲՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ՄԵՆՔ ՀԱՄԱՁԱՅՆ ՉԵՆՔ

*Շ. Ամիրխանյանի «Հայաստանում մայիսյան ապստամբության (1920 թ.) բնույթի մասին» հոդվածում * շարադրված մտքերը շփոթ են և տրամաբանությունից զուրկ, եզրակացությունները մայիսյան ապստամբության պարտության պատճառների մասին՝ սխալ։*

*Աշխատենք վերլուծել վերոհիշյալ հոդվածը և ճիշտ գնահատական տալ Շ. Ամիրխանյանի եզրակացություններին։*

*Շ. Ամիրխանյանը գրում է. «Հայ գեղջուկը, որ դեռ 1917 թվականի գարնանն ու ամռանը իր մեծամասնությամբ դաշնակների ու խաների ազդեցության տակ էր և նրանց օգտին էր քվեարկում, իսկ մի շարք շրջաններում հակառևոլյուցիոն պրովոկացիաներով մոլորության մեջ գցված լինելով՝ բոլշևիկների մասին նույնիսկ լսել չէր ուզում։ 1919 թվականի աշնանը և 1920 թվականի ձմեռը այդ նույն գեղջուկն արդեն վերջնականապես բոլշևիկ էր դարձել և ո՛չ դաշնակների, ոչ էլ որևէ այլ պարտիայի մասին լսել չէր ուզում բացի բոլշևիկների պարտիայից»։ Այս մեջբերման առաջին մասը սխալ է։ Ճիշտ չէ և այն, որ իբրև թե մի շարք շրջաններում գյուղացիությունը նույնիսկ լսել չէր ուզում բոլշևիկների մասին։ Պատմությունից մեզ հայտնի չէ որևէ մի փաստ, որ աշխատավոր գյուղացին չցանկանա լսել բոլշևիկներին և հեռացնի բոլշևիկ ագիտատորներին իրենց գյուղերից։ Փաստորեն խաները գյուղերում չեն ունեցել ոչ մի ազդեցություն, իսկ դաշնակների ազդեցությունը եղել է միայն կուլակների և գյուղացիության փոքրաթիվ, դեռևս ոչ գիտակից խավերի վրա։*

*Շ. Ամիրխանյանի հետևությունը, որ հայ գեղջուկը 1919 թվականի աշնանը վերջնականապես բոլշևիկ էր դարձել, հիմնովին հերքում է իր իսկ այն սխալ թեզը, որ բոլշևիկները թերագնահատել են աշխատանքը գյուղում, որի հետևանքով գյուղացիության մեջ տատանումներ են եղել։ Հարց է ծագում, թե ինչպե՞ս գեղջուկը վերջնականապես բոլշևիկ դարձավ ու այլևս չէր ուզում լսել բացի բոլշևիկներից ուրիշ այլ պարտիաների մասին. եթե բոլշևիկյան կազմակերպություններն անբավարար աշխատանք էին ծավալել գյուղում, ի՞նչն էր պատճառը, որ բոլշևիկ դարձած գեղջուկը օգնության չէր գնում ապստամբներին։ Արդյոք դա հակասություն չէ՞ Շ. Ամիրխանյանի հոդվածում։*

*Ինչպես հայտնի է, 1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիայից անմիջապես հետո Վ. Ի. Լենինի գաղափարները սոցիալիստական ռևոլյուցիայի մասին մեծ արագությամբ ծավալվեցին լայնատարած Ռուսաստանի բոլոր ծայրերում։ Բանվորա-գյուղացիական մասսաները ամենուրեք խանդավառու-*

---

* *Տես «Լենինյան ուղիով», 1959 թ., № 7*

թյամբ էին արձագանքում Լենինի, բոլշևիկների պարտիայի լոզունգներին, հավանություն տալիս նրա քաղաքական գծին։ Հայաստանի աշխատավորությունը ևս խանդավառությամբ էր արձագանքում Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժմանը։ Նա համախմբվում էր բոլշևիկյան կազմակերպությունների շուրջը և պայքարի ելնում հանուն Լենինի գաղափարների և քաղաքական գծի հաղթանակի։

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները եռանդուն աշխատանք ծավալեցին Ղափանի, Ալավերդու և Ալեքսանդրոպոլի բանվորության մեջ, բարձրացրին նրա դասակարգային գիտակցականությունը և հաջողությամբ ղեկավարեցին նրա պայքարը գիշատիչ ձեռնարկատերերի դեմ։ Ոչ դաշնակների, ոչ մենշևիկների և ոչ էլ էսեռների կոչերը՝ համախմբվել ժամանակավոր կառավարության շուրջը հանուն արտաքին թշնամու վերջնական ջախջախման, չշեղեցին բանվորությանը դասակարգային պայքարի ճիշտ ուղուց։ Բոլշևիկյան կազմակերպությունների պայքարի մեծ հաջողությունները երևում են հետևյալ փաստերից. Ղափանի բանվորական Սովետը կազմակերպվեց և ղեկավարվեց բոլշևիկների կողմից. Ալեքսանդրոպոլի և Կաղզվանի բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետներում բոլշևիկների ազդեցությունն այնքան ուժեղ էր, որ այդ Սովետները որոշեցին պատգամավոր ուղարկել Սովետների II համագումարին։ Ղարսի, Սարիղամիշի և մյուս քաղաքների Սովետներում ևս բոլշևիկները եռանդուն աշխատանք էին ծավալում Սովետները բոլշևիկացնելու համար։ Այս փաստերը ցույց են տալիս, որ դեռ 1917 թվականին Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները եռանդուն աշխատանք էին տանում մասսաների մեջ և նրանց պայքարի հանում հանուն Սովետական իշխանության հաստատման, հանուն Լենինի գաղափարների հաղթանակի։ Բոլշևիկները մերկացնում էին դաշնակների, մենշևիկների և էսեռների կործանարար քաղաքականությունը և այդ գործում ձեռք բերում մեծ հաջողություն։ Ալեքսանդրոպոլի, Ղափանի և Ալավերդու բանվորությունն իր ճնշող մեծամասնությամբ գնում էր բոլշևիկների հետևից։

Շ. Ամիրխանյանը կարծում է, որ գյուղացիության մեծամասնությունը քվեարկում էր դաշնակցության օգտին։ Այս կարծիքը միամտության արդյունք է։ Ո՞վ չգիտե, որ դաշնակներն իրենց ձեռքում ունենալով ընտրական ապարատը, կեղծում էին տվյալները։ Օրինակ, Սահմանադիր ժողովի ընտրությունների ժամանակ նրանք բաց էին անում քվեատուփերը և ոչնչացնում բոլշևիկների օգտին տրված ձայները, ընտրողների ձեռքից խլում բոլշևիկների № 5 ցուցակի բյուլետենները և ստիպում էին քվեարկել իրենց ցուցակի օգտին։ Պարզ չէ՞ արդյոք, որ ընտրությունների հրապարակված արդյունքները չէին արտացոլում մասսաների կամքը։

Սակայն Հոկտեմբերյան ռևոլյուցիայի թշնամիներին հաջողվեց իմպերիալիստների օժանդակությամբ Անդրկովկասը ժամանակավորապես անջատել Սովետական Ռուսաստանից։ Անդրկովկասյան կոմիսարիատի դավաճանական գործունեության հետևանքով ահեղ վտանգ էր ստեղծվել Անդրկովկասի ժողովուրդների համար Թուրքիայի և Գերմանիայի կողմից։ Բոլշևիկները մերկացնում էին դավաճաններին։ Ալեքսանդրոպոլի բոլշևիկները՝ հանձին իրենց ղեկավար Բ. Ղարիբջանյանի, մատնանշում էին այդ վտանգը։ 1917 թվականի նոյեմբերի 21-ին նա Ալեքսանդրոպոլի քաղաքային դումայի նիստում առաջարկում է չընդունել Անդրկովկասյան կոմիսարիատի իշխանու-



թյունը, որը դեմ է Սովետական Ռուսաստանին։ Նա մատնանշում էր, որ ռազմաճակատը մերկացվում է, որի ամբողջ պատասխանատվությունն ընկնում է Անդրկովկասյան պառակտողական կոմիսարիատի վրա, որը կենտրոնական իշխանությունից անկախ զինադադար է կնքել (ֆոնդ 30, գործ 4, էջ 20, 22)։

Ինչպես հայտնի է, Թուրքիան օգտվեց պառակտիչների դավաճանական քաղաքականությունից։ Թուրքիան, որն առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ ռուսական զորքերից ջախջախիչ հարված էր ստացել և ետ շպրտվել երկրի խորքը, հանկարծ մերկացած տեսավ ռազմաճակատը և ներս խուժեց Հայաստանի սահմանները, չտեսնված ավերածություն ու կոտորած բերելով հայ ժողովրդին։

Ապիկար դաշնակցությունը չկարողացավ քիչ թե շատ լուրջ դիմադրություն ցույց տալ ներխուժող թշնամուն և արժանացավ ժողովրդի անսահման ատելությանը։ Թուրքիայի կողմից գրաված վայրերում բոլշևիկյան կազմակերպությունները դադարեցին գործելուց. Թուրքիայի ներխուժումը կասեցրեց Սովետական իշխանություն հաստատելու համար բոլշևիկների մղած պայքարը։ Եթե սովետական կարգերը Հայաստանում հաստատվեին Հոկտեմբերյան ռևոլյուցիայից անմիջապես հետո, հայ ժողովուրդը կփրկվեր կոտորածներից, փախուստից, սովից ու ավերածություններից։ Այս հանգամանքը գիտակցում էին աշխատավորական մասսաները և անիծում դաշնակցությանը։

Այս փաստերի լույսի տակ միանգամայն տարօրինակ է Շ. Ամիրխանյանի պնդումը, որ մինչև 1919 թվականի աշնանը (անհասկանալի ժամկետ) գյուղացիությունը պաշտպանում էր դաշնակցությանը և դեմ էր բոլշևիկներին։

Շ. Ամիրխանյանը մեջբերելով Լենինի ու ԲԿ(բ)Պ Կենտկոմի գնահատականը 1917 թվականի հուլիսի 3—4-ի դեպքերի առթիվ, գտնում է, որ մայիսյան ապստամբությունը տարերային բնույթ էր կրում և այդ պատճառով պետք է պարտություն կրեր։ Նա գրում է. «տեղի ունեցավ այն, ինչ չէին թույլատրել բոլշևիկյան պարտիայի Կենտկոմն ու Լենինը 1917 թվականի հուլիսի 3—4-ին Պետրոգրադում»։

Նախ՝ անհրաժեշտ է մատնանշել, որ բոլշևիկների Կենտկոմը և Լենինը չդատապարտեցին հուլիսի 3—4-ի դեպքերի կազմակերպիչներին, չարգելեցին բոլշևիկների մասնակցությունը այդ դեմոնստրացիային, այլ, ընդհակառակը, պարտադիր համարեցին նրանց մասնակցությունը, թեև այն կատարվեց հակառակ պարտիայի որոշման։ Պայքարի վճռական մոմենտում, այդպես է ուսուցանում մարքսիզմ-լենինիզմը, պարտիան պետք է լինի իր դասակարգի հետ։

Լենինն իր «Մարքսիզմը և ապստամբությունը» հոդվածում գրել է. «Հուլիսի 3—4-ին կարելի էր, առանց ճշմարտության դեմ մեղանչելու, հարցն այսպես դնել՝ ավելի ճիշտ կլիներ իշխանությունը վերցնել, որովհետև այլապես թշնամիները, միևնույն է, կմեղադրեն մեզ ապստամբություն բարձրացնելու մեջ և դատաստան կտեսնեն մեզ հետ, որպես ապստամբների հետ։ Բայց դրանից չէր կարելի հետևություն անել իշխանությունն այն ժամանակ վերցնելու օգտին, որովհետև ապստամբության հաղթանակի համար օբյեկտիվ պայմաններ այն ժամանակ չկային» (Երկեր, հատ. 26, էջ 6)։

Արդյոք մայիսյան ապստամբության ժամանակ չկայի՞ն օբյեկտիվ պայմաններ հաղթանակի համար, ինչպես ձգտում է ապացուցել Շ. Ամիրխանյանը, մեջ բերելով Վ. Ի. Լենինի տեսակետը 1917 թվականի հուլիսի 3—4-ի

*դեմոնստրացիայի առթիվ։ Միանգամայն սխալ է Շ. Ամիրխանյանի համեմատությունը 1917 թվականի հուլիսի 3—4-ի դեպքերի և 1920 թ. մայիսյան ապստամբության օրերի իրադրության միջև։ Նա չի ընկալում այն մեծ տարբերությունը, որ գոյություն է ունեցել այդ երկու պատմական ժամանակաշրջանների միջև։*

*1917 թվականի նախահուլիսյան դեպքերի ժամանակ պարտիան դեռ չէր անցել Սովետների միջոցով խաղաղ ճանապարհով իշխանությունը գրավելու լոզունգից դեպի զինված ապստամբության լոզունգին։ Ինչպես Լենինն է ասում՝ «1) Դեռ մեր կողմը չէր ռևոլյուցիայի ավանգարդ հանդիսացող դասակարգը։ Դեռևս մենք մեծամասնություն չունեինք մայրաքաղաքների բանվորների և զինվորների մեջ։ Այժմ այն կա երկու Սովետներում էլ... 2) Այն ժամանակ չկար համաժողովրդական ռևոլյուցիոն վերելք։ Այժմ կոռնիլովշչինայից հետո այն կա» (Երկեր, հատ. 26, էջ 7) և այլն։*

*Մինչդեռ մայիսյան ապստամբության օրերին իրադրությունը 1917 թվականի հուլիսյան դեպքերի համեմատությամբ ներկայացնում էր միանգամայն այլ պատկեր։ Նախ՝ Հայաստանի ողջ բանվորությունը գնում էր բոլշևիկյան կազմակերպությունների հետևից, նրանց հետևից էր գնում նաև գյուղացիությունը (որը Ամիրխանյանի վկայությամբ ամբողջովին բոլշևիկ էր)։ Մեր կողմն էր նաև կանոնավոր զորամասերի ճնշող մեծամասնությունը։ Հայաստանի բոլշևիկյան կազմակերպություններն իրենց 1920 թվականի հունվարյան կոնֆերանսում բանաձև էին ընդունել՝ ապստամբությունը համարել բոլշևիկյան կազմակերպությունների առաջնակարգ խնդիրը։ Եվ, վերջապես, եղբայրական Ադրբեջանի ժողովուրդը իր երկրում արդեն հաստատել էր Սովետական իշխանություն։ Այս ամենը ցույց են տալիս, որ մայիսյան ապստամբությունն ուներ բոլոր շանսերը հաղթանակի համար, որ առկա էին ապստամբության օբյեկտիվ նախադրյալները։ Այն ժամանակ դաշնակցության հենարանը կազմում էին միայն գյուղի կուլակները, քաղաքի ունևոր տարրերը և մաուզերիստական բանդաները։ Աշխատենք փաստերով և ապստամբությանը ակտիվ մասնակցած ընկերների վկայություններով ապացուցել հիշված դրույթի ճշտությունը։*

*Շ. Ամիրխանյանը խոսելով մայիսյան ապստամբության, Ալեքսանդրոպոլի մայիսյան ցույցի մասին, ճշտորեն նշում է, որ «դաշնակցականներն աշխատում էին մասսաներին իրենց կողմը քաշել, բայց այդ չհաջողվեց, նրանց հետևից հարյուրներ էին գնում, բոլշևիկների հետևից հազարներ»։*

*Ալեքսանդրոպոլի գավառի բոլշևիկյան կազմակերպության ակտիվ անդամ Հ. Կուրղինյանն իր հիշողությունների մեջ գրում է. «Մայիսյան ապըստամբությունը Հայաստանում անհատների ավանտյուրա չէր, ինչպես ճգնում են ապացուցել կոմունիստական հեռանկարները կորցրած մարդիկ և մեր դասակարգային թշնամիները, այլ մայիսյան ապստամբությունը Մեծ Հոկտեմբերի անմիջական ծնունդն էր, Հայաստանի բանվորների և աշխատավոր գյուղացիության խորքում տարիների ընթացքում կուտակված բոլշևիկյան հեղափոխության ժայթքումը, որի նպատակն էր տապալել բուրժուական իշխանությունը և միանալ Խորհրդային Ռուսաստանին, որի անդուգական մասնիկն էր» (ֆոնդ 30, գործ 39, էջ 10)։*

*Նույն կազմակերպության անդամ Ս. Սուրենյանն իր հիշողությունների մեջ գրում է. «1920 թվականի մայիսյան հոյակապ շարժումը, որը ցնցեց դաշնակցության բուրժուա-խմբապետական պետականության հիմքերը, պատահական երևույթ չէր, այլ արդյունք էր Հոկտեմբերյան հեղափոխության, խորհրդային Հանրապետության և, հատկապես, Բաքվի պրոլետարիատի քաղաքական ազդեցության և այն ամենօրյա համառ աշխատանքի, որ տանում էին նորաստեղծ և հետզհետե ծավալվող ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպությունները գյուղացիության մեջ մինչև 1920 թ.» (տե՛ս ֆոնդ 30, գործ 9, էջ 1)։ Թ. Մանդալյանը գրել է. «Հայաստանի բոլոր քաղաքներում և մանավանդ, Լենինականում բանվորությունը և բանակը պարզ ու բացարձակ հայտարարեցին, որ այլևս չի կարելի հանդուրժել դաշնակցական կառավարությանը» (տե՛ս ֆոնդ 30, գործ 42, էջ 1)։*



*Ալեքսանդրոպոլի գավառի բոլշևիկյան կազմակերպությունների կողմից գյուղացիության մեջ տարվող աշխատանքի վկայություններից մեկը հանդիսանում է այն, որ «Շիրակի գյուղացիության կենտրոն»-ի և նրա օրգան «Գյուղացիական միության» ղեկավարությունը դաշնակների ձեռքից նվաճեցին բոլշևիկները և լայն աշխատանք ծավալեցին գյուղում։*

*Կոմունիստ Գուրգեն Շաղգամյանը իր հիշողությունների մեջ գրել է. «Արտեմ Աղամալյանի հետ մեկնեցինք 3-րդ և 5-րդ գավառամասերին կից գյուղերը կազմակերպչական աշխատանքներ տանելու համար... գյուղացիությունը խանդավառությամբ էր ընդունում մեզ և պատմում գյուղում կատարված դաշնակների վայրագությունների մասին... գյուղացիները պահանջում էին թոթափել դաշնակցության լուծը» (ֆոնդ 30, գործ 66, էջ 1)։*

*Սրանով հերքվում է Շ. Ամիրխանյանի այն թեզը, որ Ալեքսանդրոպոլի բոլշևիկյան կազմակերպությունը թերագնահատել է աշխատանքը գյուղում և չի նախապատրաստել գյուղացիությանը ապստամբությանը մասնակցելու։*

*Այսքանն էլ բավական է ապացուցելու, որ բանվորա-գյուղացիական մասսաները 1920 թվականի մայիսին գնում էին բոլշևիկների հետևից, հենց այդ հանգամանքը հաղթանակի գլխավոր գրավականն էր, եթե Հայաստանի ռևկոմը հասկանար և կիրառեր Մարքսի ուսմունքը՝ ապստամբությունը դիտեր որպես արվեստ և ղեկավարեր շարժումը։*

*Շ. Ամիրխանյանը պնդում է, թե Ալեքսանդրոպոլում ապստամբությունը տեղի ունեցավ տարերայնորեն, հակառակ բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարների կամքի։ Նա գրում է. «Մինչև 1920 թվականի մայիսի 2-ը ո՛չ Ալեքսանդրոպոլի կոմիտեն, ո՛չ Արմենկոմը չէին մտածում ապստամբության պրակտիկ կազմակերպման մասին, մինչ այդ նրանք զբաղվում էին Սովետական իշխանության համար ընդհանուր ագիտացիա մղելով, հակառակ հունվարյան կոնֆերենցիայի բանաձևին»։ Ապա նույն էջում նա գրում է. «1920 թ. հունվարյան կոնֆերանսում ընտրված Արմենկոմն իր մեծամասնությամբ, Կասյանի գլխավորությամբ ժխտում էր, թե կոնֆերանսն ընդունել է հիշյալ բանաձևը, և երկրորդ, իր քաղաքական ու պրակտիկ գործունեության ընթացքում ղեկավարվում էր ուրիշ տեսակետով», այն է՝ «նկատի ունենալով Հայաստանում խոշոր բուրժուազիայի և արդյունաբերական պրոլետարիատի բացակայությունը, ինչպես և հայ ժողովրդի համար թուրքական ահավոր վտանգի առկայությունը, Հայաստանում Սովետական իշխանություն կարող է և պետք է հաստատվի խաղաղ ճանապարհով, առանց քաղաքացիական պատերազմի»։*

*Այս մեջբերումներից պետք է եզրակացնել, որ Արմենկոմը ժխտում էր*

հունվարյան կոնֆերանսի բանաձևը ոչ թե այն պատճառով, որ այն գոյություն չի ունեցել, այլ նրա համար, որ ինքը համաձայն չի եղել այդ բանաձևին, որն ընդունվել է Ալեքսանդրոպոլի կոմիտեի ճնշման ներքո։ Հունվարյան կոնֆերանսի բանաձևում ասված է. «Քաղաքացիական պատերազմը Հայաստանի տիրապետող դասակարգերի դեմ այնպես, ինչպես Վրաստանում և Ադրբեջանում, և նրանց կազմակերպած «դաշնակցական» կառավարության դեմ, դաշնակցական իշխանության բռնի, ռևոլյուցիոն տապալումը Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջնակարգ խնդիրն է»։

Ով դիվանագիտությամբ չի զբաղվում, նրան պարզ և հասկանալի է բանաձևի իմաստը։ Բանաձևը առաջնակարգ խնդիր է դնում՝ բռնի, ռևոլյուցիոն ձևով տապալել դաշնակցությունը։ Ամիրխանյանը համաձայն չէ դրան. նա իր ուզածի պես է մեկնաբանում այդ բանաձևի իմաստը և այլ ուղիներ փնտրում Հայաստանում Սովետական իշխանություն հաստատելու համար։ Շ. Ամիրխանյանը Ս. Կասյանից հեռու չի գնում։ Կասյանը ժխտում է բանաձևի գոյությունը, Ամիրխանյանը ժխտում է բանաձևի պարզ և որոշակի իմաստը։

Եթե հիշյալ բանաձևի հեղինակներն իրոք եղել են Ալեքսանդրոպոլի բոլշևիկները, ապա դա նրանց պատիվ է բերում, որովհետև բռնակալ կառավարության տապալումը կարող էր տեղի ունենալ միայն բռնի ճանապարհով։ Այսպես է ուսուցանում մարքսիզմ-լենինիզմը։ Պարտիայի կամքն արտահայտված էր բանաձևում, մնում էր ապստամբությունը նախապատրաստել, վերաբերվելով դեպի այն ամենայն լրջությամբ։ Վ. Ի. Լենինը վերևում հիշված աշխատության մեջ գրել էր, որ չի կարելի ներկա մոմենտում մարքսիզմին հավատարիմ մնալ, չընդունելով ապստամբությունը որպես արվեստ։

Անհիմն է Շ. Ամիրխանյանի պնդումը, որ Ալեքսանդրոպոլի բոլշևիկյան կազմակերպության ղեկավարությունը, հակառակ հունվարյան կոնֆերանսի բանաձևին, գործնական աշխատանք չէր տարել ապստամբությունը նախապատրաստելու ուղղությամբ։ Եթե ճիշտ են ընկ. Ամիրխանյանի ասածները, որ հունվարյան կոնֆերանսում ապստամբության վերաբերյալ բանաձևը մշակել են Ալեքսանդրոպոլի բոլշևիկները և պայքարել նրա ընդունման համար, ապա անհեթեթություն է պնդել, որ նրանք չէին մտածում ապստամբությունը կազմակերպելու մասին։

Վերևում հիշված փաստերը, ինչպես և Շ. Ամիրխանյանի վկայությունները, որ «նրանք (Ալեքսանդրոպոլի ղեկավար ընկերները— Լ. Դ.) մինչև 1920 թվականի մայիսը համարյա իրենց ամբողջ աշխատանքը կենտրոնացրել էին բանվորների շրջանում և մեծ հաջողությունների էին հասել, որի համար նրանց պետք է պատշաճ հարգանք մատուցել», հերքում են հենց նրա եզրակացության ճշտությունը և ապացուցում, որ Ալեքսանդրոպոլի բոլշևիկները աշխատավորական մասսաների մեջ եռանդուն աշխատանք էին տանում, նախապատրաստելով նրանց ապստամբության համար։

Մայիսի մեկի ցույցը, որի ժամանակ Ալեքսանդրոպոլի բնակչության ճնշող մեծամասնությունը գնում էր բոլշևիկների հետևից, ապստամբության օգտին տրվող լոզունգները փայլուն ապացույց են, որ այդ փառավոր ցույցի կազմակերպիչները եղել են Ալեքսանդրոպոլի բոլշևիկները։

Շ. Ամիրխանյանը պաշտպանում է Արմենկոմի այն տեսակետը, որ ապստամբությունը պետք է սկսվեր Ղազախից (տարօրինակ տեսակետ։ Եթե Արմենկոմը ժխտում էր ապստամբության անհրաժեշտությունը, ապա էլ ին-



չո՞ւ էր մեջ բերում Ղազախը) և ոչ թե Ալեքսանդրոպոլից, այն պատճառով,
որ Ղազախի գյուղացիությունը ավելի ռևոլյուցիոն է և տոկուն, քան բան-
վորական Ալեքսանդրոպոլը (ի՞նչ ապացույց)։ Սա մի փայլուն ապացույց է
այն բանի, թե որքան սխալ է հասկանում Շ. Ամիրխանյանը մարքսիզմ-
լենինիզմի ուսմունքը ռևոլյուցիայի ավանգարդի մասին։
Լենինն իր «Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը» հոդվածում
գրում էր. «Հարցը չի վերաբերում ապստամբության «օրվան», նրա մոմեն-
տին՝ նեղ իմաստով։ Այդ կվճռի միայն նրանց ընդհանուր ձայնը, ովքեր
շփվում են բանվորների ու զինվորների հետ, մասսաների հետ...
Հարցն այն է, որ պարտիայի համար պարզ դարձնենք խնդիրը, օրակար-
գի հարց դարձնենք զինված ապստամբությունը Պիտերում և Մոսկվայում (իր
մարզի հետ), իշխանության նվաճումը և կառավարության տապալումը...
Հիշենք, խորհրդածության առարկա դարձնենք Մարքսի խոսքերն ապըս-
տամբության մասին՝ «ապստամբությունը արվեստ է» և այլն», (Երկեր, հատ.
26, էջ 3)։
Այստեղից պարզ երևում է, որ ապստամբությունը պետք է սկսել բանվո-
րական կենտրոններից, որտեղ և պետք է որոշվի ապստամբության ժամկետը։
Դժբախտաբար Լենինի այս ցուցումները Արմենկոմի կողմից հաշվի չեն առ-
նըվել։ Ալեքսանդրոպոլը Հայաստանի բանվորական կենտրոնն էր, երկաթու-
ղային հանգույցը։ Այնտեղ կար ապարատ, ուժեղ էր կոմունիստական կազ-
մակերպությունների կապը բանվորների և զինվորների հետ։ Այսքանը բավա-
կան չէ՞ր, որպեսզի ապստամբության վայր ընտրվեր Ալեքսանդրոպոլը։
Պատմական փաստերից երևում է, որ Ալեսանդրոպոլի բոլշևիկյան կոմի-
տեն ծավալուն աշխատանք է տարել ո՛չ միայն բանվորության շրջանում,
այլև ուսանողության միությունում և Շիրակի գյուղացիության միությունում,
որի արդյունքը եղավ այն, որ գյուղացիական միությունը, ինչպես վերևում է
ասվել, բոլշևիկյան դարձավ և լայն աշխատանք ծավալեց գավառի գյուղա-
ցիության մեջ։ Նրա ազդեցությունն ուժեղացավ նաև ուսանողական միությու-
նում։ Ինչ վերաբերում է պրոֆմիությունններին, ապա նրանցից շատերի ղե-
կավարությունը ևս անցավ բոլշևիկների ձեռքը։
Ընկ. Դադյանը իր հիշողություններում գրում է. «1918 թվականի հուն-
վարին Լենինականի բոլշևիկյան կազմակերպությունն առանց զորամասերի
100 անդամ ուներ (իսկ տվյալներով ավելի շատ), ղեկավար ակտիվի գլուխ էր
անցել դաշնակցականների կողմից հետագայում գնդակահարված Բ. Ղարիբ-
ջանյանը (կոմիտեի նախագահ, անդամներ էին Հանեսօղլյանը, Աղասի Վար-
դանյանը, Գրիգոր Գրիգորյանը, Լոզյանը)» (ֆոնդ 30, գործ 10, էջ 3—4)։
Ալեքսանդրոպոլի բոլշևիկները պայքարի փորձ ունեին դեռ 1917 թվականից
և դրանից էլ առաջ, նրանք լավ էին հասկանում 1920 թ. մայիսյան օրերում
ստեղծված ներքին և արտաքին դրությունը և ճիշտ էին դնում ապստամբու-
թյան անհետաձգելիության խնդիրը։
Ավիս Նուրիջանյանը (Հայաստանի Ռևկոմի նախագահ) իր զեկուցագրում
քննադատում է Արմենկոմին՝ սխալ դիրքորոշման համար. «Արմենկոմի որո-
շումը,— գրել է նա,— ապստամբությունը սկսել Ղազախից, իսկ Ալեքպոլը
դեռ սպասի—մեզ դնում է անել դրության մեջ... Մայիսի մեկի տոնակատա-
րության ժամանակ բոլշևիկների հետևից գնում էին 5000 հոգի, դաշնակների

հետևից՝ 200: Ամբողջ զորքը զրահապատի ղեկավարությամբ մեր ձեռքումն է» (ֆոնդ 30, գործ 23, էջ 2—3):

Ավիսը նախազգուշացնում է, որ եթե Արմենկոմը պահանջի չպատասխանել դաշնակների տեռորին, ձերբակալություններին և զրահապատի գրավմանը, ապա ամբողջ պատասխանատվությունը կընկնի Արմենկոմի վրա, կջախջախվի այն ակտիվ ուժը, որի վրա հենվում են Ալեքսանդրոպոլի բոլշևիկները (ֆոնդ 30, գործ 23):

Այստեղից երևում է ապստամբության անհաջողության գլխավոր պատճառը, որոնց մասին միանգամայն ճիշտ գրում է Գ. Ղարիբջանյանը իր «Коммунистические организации Армении в борьбе за победу Советской власти в Армении» աշխատության մեջ: Այնտեղ ասված է. «Այդ պայմաններում հարկավոր էր ցուցաբերել ճկունություն ու վճռականություն, ավելի համարձակ ղեկավարել մասսաների հերոսական պայքարը: Սակայն Արմենկոմը և Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն քաղաքական և ռազմա-ստրատեգիական լուրջ սխալներ թույլ տվին: Նրանք չկարողացան ամուր կապ ստեղծել տեղերի հետ, միավորել Հայաստանի տարբեր շրջանների ապստամբած ուժերը, ցուցաբերեցին անվճռականություն և անթույլատրելի բարեհոգություն թշնամիների նկատմամբ: Վճռական րոպեին երևան եկավ ճիշտ և բավականին փորձված ղեկավարության բացակայությունը» (էջ 253—254):

Արմենկոմը հաշվի չառավ Լենինի այն ցուցումը, որ ապստամբության ժամկետը որոշում են նրանք, ովքեր կապված են մասսաների և բանակի հետ, և ավելորդ ձգձգումներ ու անվճռականություն ցուցաբերեց:

Ավիս Նուրիջանյանը թեև ճիշտ էր քննադատում Արմենկոմին, սակայն գործնականում ինքը ևս կրկնում էր նույն կոպիտ սխալները: Օրինակ, Ղարսի ռևկոմը ապստամբության առաջին օրերին ուներ հսկայական գերակշռություն թշնամիների նկատմամբ, նրա կարգադրությունները արագ և հաջողությամբ էին կատարվում: Բայց երբ նա սկսեց կիրառել Հայաստանի ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի ցուցմունքները, այն է՝ թշնամիների նկատմամբ խիստ միջոցներ չգործադրել, չձերբակալել և ազատ արձակել դաշնակցության ղեկավարներին և զորքի հրամանատարներին, Ղարսի ռևկոմի դիրքերը թուլացան, թշնամին ուշքի եկավ ու ձեռնարկեց ակտիվ գործողություններ ապստամբների դեմ:

Ես, որպես Ղարսի մայիսյան ապստամբության մասնակից (իհարկե, ընկ. Ամիրխանյանի հոդվածում հիշված Լևոն Ղազարյանը ես չեմ), կատեգորիկ պնդում եմ, որ Ղարսի կայազորը բացառությամբ իրեն չեզոք հայտարարած պահակային վաշտից, անխոս ենթարկվում էր ռևկոմին և կատարում նրա կարգադրությունները: Իսկ այդ կայազորը փոքրաքանակ չէր: Եթե Ղարսի ռևկոմը զինված ուժի պակաս զգար, ապա չէր հրաժարվի գյուղացիների օգնությունից, որոնք մեծ քազմությամբ ռևկոմ եկան կարմիր դրոշակներով ու ռևոլյուցիոն լոզունգներով և առաջարկեցին իրենց զինված օգնությունը: Ռևկոմի նախագահ Ղուկաս Ղուկասյանը դեմոնստրանտներին հայտարարեց, որ ռևկոմը իր տրամադրության տակ ունի բավականին մեծ ուժ և որ ներկայումս օգնության կարիք չի զգում:

Այս փաստերը ցույց են տալիս, որ Գ. Բ. Ղարիբջանյանի եզրակացությունները մայիսյան ապստամբության պարտության պատճառների մասին ճիշտ են, իսկ ընկ. Ամիրխանյանի առարկությունները՝ անհիմն:



Շ. Ամիրխանյանը կանգ է առնում տարաձայնությունների վրա, որոնք
գոյություն են ունեցել Հայաստանի բոլշևիկյան կազմակերպության ներսում,
բայց նա չի քննադատում Արմենկոմի դիրքը, որն արգելակում էր տեղերի
ձեռներեցությունը: Ապստամբների շարքերում տարաձայնություններ չկա-
յին: Տեղական կազմակերպությունները միասնական էին ապստամբության
հարցում: Ընկ. Ամիրխանյանը միայն կանգ է առնում Ալեքսանդրոպոլի ռևկո-
մի ընդլայնված նիստի արձանագրության վրա և հիշատակում է Բ. Ղարիբ-
ջանյանի և Լևոն Ղազարյանի ելույթները այդ նիստում: Այդ արձանագրու-
թյան վերլուծությունը նրա կողմից օբյեկտիվ և անաչառ չէ: Ճիշտ է, որ Լևոն
Ղազարյանի ելույթը կապիտուլյանտական է: Նա իր ելույթում պահանջել է
քաղաքը հանձնել առանց դիմադրության, իսկ Բ. Ղարիբջանյանն ասել է՝
«Փարիզի կոմունան 8 շաբաթ դիմացավ, իսկ Ալեքսանդրոպոլինը 8 օր էլ
չունեց, մի՞թե սա ավանտյուրա չէ»: Բայց ինչո՞ւ են այդ ելույթները տեղի
ունեցել: Նրանց տոն տվողը եղել է Ս. Մուսայելյանի հոռետես զեկուցումը.
նա հայտարարում է, որ երկու օրից հետո լոբի էլ չի լինի ուտելու: Նրա զե-
կուցումը մոբիլիզացնող չէր: Մինչդեռ Բ. Ղարիբջանյանը քննադատելով
ռևկոմին նրա սխալների համար, միաժամանակ մերկացնում է Լևոն Ղազար-
յանի կապիտուլյանտական ելույթը, որը հավատում է դաշնակների խոստում-
ներին և հույսը դնում նրանց ողորմածության վրա, հաշվի չառնելով Փարիզյան
կոմունայի դասերը: Այնուհետև Բ. Ղարիբջանյանը հայտարարում է, «որ
դրությունը ծանր է, բայց անհուսալի չէ, հարկավոր է զինված դիմադրություն
կազմակերպել և գործը պատվով հասցնել մինչև վերջը»:

Հիշյալ արձանագրության մեջ ասված է, որ նիստի վերջում հարցը
քվեարկության է դրվում և Ավիսի կողմից առաջարկված բանաձևը պայքարը
շարունակելու մասին, ընդունվում է միաձայն, մեկի ձեռնպահությամբ (ըստ
երևույթին Մուսայելյանի ձեռնպահությամբ), թեև արձանագրության մեջ չի
հիշված ձեռնպահի ազգանունը:

Տարօրինակ և հանելուկային է այն հարցը, թե ինչո՞ւ ռևկոմի նախագահ
Ավիսի կողմից առաջարկված բանաձևի միաձայն ընդունումից մեկ ժամ հե-
տո ռևկոմը քաղաքն առանց դիմադրության հանձնում է թշնամուն:

Հարց է ծագում, թե ո՞րն է պարտության պատճառը՝ Բ. Ղարիբջանյանի
ելո՞ւյթը, թե՞ ռևկոմի անվճռականությունը և տատանումները, որը հակառակ
Բ. Ղարիբջանյանի պահանջին՝ կազմակերպել զինված դիմադրություն, փաս-
տորեն կատարում է կապիտուլյանտ Լևոն Ղազարյանի պահանջը՝ հանձնել
քաղաքն առանց դիմադրության: Պատմությունն արդարացրեց Բ. Ղարիբջան-
յանի նախազգուշացումը, որ թշնամին վերսալցիների նման անխնա կլինի
ապստամբների հանդեպ. դաշնակցականները ապստամբներին տանջեցին ու
գնդակահարեցին, չնայած որ ապստամբության ժամանակ, ինչպես վկայում
է Թ. Մանդալյանը, թշնամու մազին էլ չէին դիպել:

Թող ուշադիր ընթերցողը լրջությամբ վերլուծի պատմական փաստերը և
պարզ պատկերացում կազմի ընկ. Ամիրխանյանի հոդվածի օբյեկտիվության
և անաչառության ու նրա եզրակացությունների ճշտության մասին:

Իր հոդվածի վերջում Շ. Ամիրխանյանը գրում է. «Մայիսյան ապստամբու-
թյունը Հայաստանում վատ կազմակերպված ու կիսատարերային էր և պար-
տություն կրեց, որովհետև պարտիական ղեկավարությունը ժամանակին չէր

հասկացել Հայաստանի ռևոլյուցիոն շարժման բնույթը և ապստամբությունը կազմակերպորեն չէր նախապատրաստել»։

Ըստ Ամիրխանյանի Հայաստանի մայիսյան ապստամբությունը իր սոցիալ-քաղաքական իմաստով գյուղացիական ապստամբություն էր։

Ինչպիսի՞ իմաստ է պարունակում այս միտքը։ Եթե դա նշանակում է, որ Հայաստանի մայիսյան ապստամբությունը լինելով գյուղացիական, հետապնդում էր այլ նպատակ, քան Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան, ապա անիմաստ է դառնում այդ ապստամբության ղեկավարությունը կոմունիստների կողմից։ Ուրեմն, այդ ապստամբության ղեկավարները ոչ թե ՌԿ(բ)Պ-ի անդամներ էին, այլ ուտոպիստներ, եթե ոչ ավելի վատ։

Պատմությունից մեզ հայտնի է, որ բոլոր գյուղացիական պատերազմները ֆեոդալական կարգերի դեմ թե՛ Գերմանիայում և թե՛ Ռուսաստանում, պարտություն են կրել այն պատճառով, որ այն ժամանակ չի եղել այնպիսի դասակարգ, որը գլխավորեր գյուղացիության ռևոլյուցիոն շարժումը, իսկ գյուղացիությունը լինելով անջատված և ոչ միասնական (գյուղի ունևոր խավը, որն անցնում էր թշնամիների կողմը), անխուսափելիորեն պետք է պարտություն կրեր։ Պատմական գլխավոր դասը կայանում է նրանում, որ գյուղացիությունը կարող է ազատագրվել շահագործողների լծից միմիայն դաշնակցելով պրոլետարիատի հետ, ընդունելով վերջինիս դիկտատուրան։

Ինչ վերաբերում է Շ. Ամիրխանյանի կողմից Լենինից մեջ բերած ցիտատին (տես էջ 99), որով նա ձգտում է ապացուցել իր թեզը, ապա դա չի հաջողվի նրան, որովհետև այդ մեջբերման իմաստը հիմնովին հակասում է Ամիրխանյանի տեսակետին։ Այդ ցիտատում ասված է. «Այն, ինչ պատահեց Սիբիրի մուժիկի հետ, նրա ամբողջ անզարգացածության և քաղաքական տգիտության պայմանում, հենց նույնը տեղի ունեցավ այժմ ավելի լայն մասշտաբով, համաշխարհային-պատմական մասշտաբով բոլոր փոքրիկ ազգերի հետ» («Լենինյան ուղիով», էջ 99)։ Սիբիրի դեպքերը ավելորդ անգամ ապացուցում են Լենինի ուսմունքի ճշտությունը գյուղացիական հարցում։

Սովետների VII համագումարում Լենինը իր զեկուցման մեջ ասում էր, որ Սիբիրի գյուղացիությունը, որը սկզբից դեմ էր բոլշևիկներին, հետագայում, ապրելով Կոլչակի բուրժուական կառավարության դիկտատուրայի ներքո, վերջնականապես համոզվեց, որ իր ազատագրումը հնարավոր է պրոլետարիատի դիկտատուրայի շնորհիվ և ընտրություն կատարեց հօգուտ վերջինիս՝ ապստամբեց Կոլչակի դեմ։

Հայաստանի գյուղացիությունը առավել ևս նման ընտրություն էր կատարել հօգուտ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի, որովհետև ավելի խոր էր գիտակցել, որ դաշնակների դիկտատուրան անխուսափելիորեն տանում է նրան դեպի վերջնական կործանում։

Եթե Շ. Ամիրխանյանը հասկանար այս պատմական ճշմարտությունները, ապա նա չէր գրի իր՝ մտքերով շփոթ, անհետևողական, սխալ եզրակացություններով լի հոդվածը։

ԼևՎՈՆ ՂԱԶԱՐՅԱՆ
ՍՄԿՊ անդամ 1917 թ., մայիսյան
ապստամբության մասնակից

---

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆԵՐՈՒՄ

**ԳՖՌ**

## ԱՆԼԵԳԱԼ ՄԱՄՈՒԼԻ ՏԱՐԱԾՈՒՄԸ

Այս տարվա օգոստոսին, Գերմանիայի կոմպարտիայի արգելման երրորդ տարեդարձի օրը, լույս տեսավ նրա կենտրոնական օրգան «Ֆրեյես ֆոլկ»-ի 150-րդ համարը: Բոլոր այդ տարիներին, չնայած ոստիկանական հետապնդումներին, թերթը կանոնավոր կերպով տարածվել է բնակչության տարբեր խավերի շրջանում: Վերջին ժամանակներս կոմունիստական հրատարակությունների թիվը ավելանում է: Միայն այս տարի տպվում է 50 նոր անլեգալ թերթ, որից 28 գործարանային և 16 շրջանային: Մի շարք պարտիական կազմակերպություններ ձգտելով կոնտակտ հաստատել սոցիալ-դեմոկրատների հետ, նրանց համար հրատարակում են հատուկ թերթեր: Թերթերի տպաքանակները միշտ չէ, որ միատեսակ են, բայց բոլորն էլ աճի տենդենց ունեն: Հատկապես նրանք մեծ չափով ավելանում են քաղաքական մեծ կամպանիաների ժամանակ: Լանդտագի ընտրությունների ժամանակ Շլեզվիգ-Գոլշտեյնում տեղական կոմունիստական «Նորդդեյչես էխո» թերթը ավելացավ 30 հազար օրինակով:

Պարտիական կազմակերպությունները չեն բավարարվում կուտակված փորձով, նորանոր ձևեր են գտնում իրենց հրատարակությունները տարածելու համար: Ռեկլինգհաուզենում, պարտիայի արգելման տարեդարձի օրը շրջկոմի տպագրական օրգանի 3 հազար օրինակ տարածվեց հետևյալ կերպ. թերթի կապոցներն ամրացվում էին ծառերին և բանվորները դրանք ընտրում էին ոնց որ կիտրում: Ոստիկանությունը գլխի ընկավ շատ ուշ, երբ ծառերի վրա չէր մնացել և ոչ մի օրինակ: Ախենում մի շարք գործարաններում ատոմային սպառազինման դեմ թռուցիկներն անց էին կացվել ցցերի վրա, որոնք խփվել էին պատերին: Յուրաքանչյուրը կարող էր ինքը դրանցից վերցնել իր համար: «Ինքնասպասարկման» այդ յուրահատուկ մեթոդը շատ դուր եկավ բանվորներին: Գերմանիայի կոմունիստական պարտիան օգտագործում է բոլոր միջոցներն իր կապերը մասսաների հետ ուժեղացնելու համար:

**ԻՍՊԱՆԻԱ**

## ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ԱՃՈՒՄԸ

Դաժան ռեպրեսիաները, որոնց ենթարկվում են կոմունիստներն Իսպանիայում, չեն կոտրել նրանց կամքը: Դրանք ի վիճակի չեն խանգարելու Կոմունիստական պարտիայի հեղինակության և ազդեցության ուժեղացմանը: Այդ մասին են վկայում Կոմունիստական պարտիայի Կենտկոմի վերջին պլենումի որոշումները, որոնք գնահատելով պարտիայի հաջողությունները երկրի քաղաքական կյանքում, ուղիներ են նշում առաջիկա անելիքների վերաբերյալ: Կոմպարտիային մեծ ժողովրդականություն է բերել 1956 թվականին նրա հռչակած ազգային համաձայնության քաղաքականությունը: Քանի որ բնակչության ճնշող մեծամասնությունն այժմ հանդես է գալիս Ֆրանկոյի գլխավորած մոնոպոլիստական կապիտալի դիկտատուրայի դեմ, ապա կոմպարտիան գտնում է, որ օպոզիցիայի տարբեր հոսանքները կարող են միավորվել, խաղաղ ճանապարհով տապալել ֆաշիստական դիկտատուրան ու վերականգնել դեմոկրատիան: Այդ քաղաքականության հաջողության մասին են վկայում այնպիսի փաստեր, ինչպիսիք են գործադուլային շարժման աճը, 1958 թվականի մայիսի 5-ին հակաֆրանկոյական հսկա խաղաղ ցույցը, որին մասնակցեցին միլիոնավոր իսպանացիներ, 1959 թվականի հունիսի 18-ի ազգային գործադուլը, որի նախապատրաստմանը, բացի կոմունիստներից, մասնակցեցին նաև օպոզիցիայի քաղաքական մյուս հոսանքները:

Երկրի հիմնական կենտրոններում այդ մարտական հակաֆրանկոյական ելույթների ընթացքում կոմպարտիայի շարքերը մտան շատ նոր անդամներ և պարտկազմակերպությունների շուրջը համախմբվեց մեծաթիվ անպարտիական ակտիվ: ԻԿՊ-ի կենտկոմը գտնում է, որ այժմ պետք է պայքարել պարտիայի մեջ այդ ակտիվը ներգրավելու համար:

Հաշվի առնելով պարտիայի գործունեության առանձնահատուկ պայմանները, Կենտկոմը կիրառում է կազմակերպչական աշխատանքի ճկուն ձևեր, որոնք հնարավորություն են ընձեռում կուգործելու անլեգալ մեթոդները լեգալ ձևերի հետ: Այսպես, ֆաշիստական արհմիություններում աշխատող կոմունիստների գործունեությունը ղեկավարելու համար ԻԿՊ-ի Կենտկոմը առաջարկեց ստեղծել ըստ արդյունաբերական ճյուղերի համապատասխան կոմիտեներ: Այժմ պարտիական բջիջներ կան ինտելիգենցիայի շրջանում, կուլտուրական և սպորտային միավորումներում: Տեքստիլ և այլ ձեռնարկություններում, որտեղ մեծ թվով կանայք են աշխատում, ստեղծվում են կանանց պարտիական բջիջներ:

ԻԿՊ-ն հատուկ ուշադրություն է նվիրում երիտասարդության շրջանում տարվող աշխատանքին: Դա բացառիկ կարևոր նշանակություն ունի, եթե հաշվի առնենք, որ բանվոր-դասակարգի հիմնական զանգվածը կազմում են 18-ից 38 տարեկան մարդիկ, այսինքն՝ այն նոր սերունդը, որը չի մասնակցել 1936—1939 թվականների իրադարձություններին, չունի ռևոլյուցիոն կոփվածք և միայն այժմ է ակտիվ պայքարի ելնում ֆաշիզմի դեմ: Երիտասարդ այն բանվորները, որոնք դեռ պատրաստ չեն պարտիայի մեջ մտնելու համար, միավորվում են հատուկ խմբերի մեջ, որոնք աշխատում են պարտիական բջիջների ղեկավարությամբ: Այդ խմբերը պարտիայի կարևոր ռեզերվն են և կարող են ապագայում դառնալ երիտասարդական կոմունիստական կազմակերպության կըմախքը:

Իսպանական կոմունիստները հաղթահարելով բոլոր դժվարությունները, երիտասարդական ավյունով ընթանում են իսպանական ժողովրդի հակաֆաշիստական պայքարի ավանգարդում:

### ԴԱՆԻԱ

## ԸՆԴԴԵՄ ԵՐԿՐԻ ՄԻԼԻՏԱՐԻԶԱՑՄԱՆ

Կոմունիստական պարտիան ուժեղացնում է պայքարը Դանիայում հրթիռային բազաների և գերմանո-դանիական ռազմական ընդհանուր հրամանատարություն ստեղծելու դեմ: Պառլամենտի կոմունիստական ֆրակցիան դիմել է կառավարությանը, առաջարկելով հայտարարություն անել այն մասին, որ նա մերժում է երկրի տերիտորիայում օտարերկրյա ռազմական բազաների և պահեստների ստեղծումը և Արևմտյան Գերմանիայի հետ ռազմական համագործակցության ընդլայնման պլանները: Կոմպարտիան պահանջում է հավանություն տալ Կենտրոնական Եվրոպայում միջուկային զենքից զերծ գոտի ստեղծելու վերաբերյալ Ռապացկու պլանին: Կենտկոմի վերջերս տեղի ունեցած պլենումի բանաձևում ասվում է. «Ժողովուրդը պետք է որոշի երկրի ռազմական քաղաքականության ուղղությունը: Թող իր խոսքն ասի ժողովուրդը, թող լռեն գեներալները»: Կոմպարտիային արձագանքում են մեծ թվով հասարակական և արհմիութենական կազմակերպություններ:

Պայքարը երկրի միլիտարիզացման դեմ չի սահմանափակվում միայն կոչերով և բողոքներով: Կոմպարտիան կազմակերպել էր մեծ ցույց, որը վերջացավ մասսայական միտինգով: Դա ուղղված էր այն բանի դեմ, որ ամերիկյան կառավարությունը Դանիային էր հանձնել ատոմահրթիռային այն չորս հարթակներից մեկը, որոնք նախատեսված են Կոպենհագենի «պաշտպանության» համար: Միտինգի մասնակիցները բանաձև ընդունեցին, որտեղ ասված էր. «Մենք պահանջում ենք հրաժարվել հրթիռային բազաներ կառուցելու պլաններից: Բոլոր ռազմական կառուցվածքները պետք է վերացվեն մայրաքաղաքից: Կոպենհագենը պետք է բաց քաղաք լինի»: Դանիական հասարակայնությունը և, առաջին հերթին, բանվոր-դասակարգն ավելի ու ավելի ուժեղ է ընդդիմանում ՆԱՏՕ-ի հակաազգային քաղաքականությանը: Բողոքներն ավելանում են: Կոմունիստները ձգտում են այն բանին, որպեսզի ավելի հուժկու դառնա ազգային անկախության, ընդդեմ ՆԱՏՕ-ի դիկտատուրայի դանիական ժողովրդի պայքարը: Իսկ դանիական ժողովուրդը պահանջում է, որպեսզի Եվրոպայի հյուսիսը և Բալթիկ ծովի շրջանը վերածվեն կայուն խաղաղության, ատոմազերծ գոտու, որպեսզի Դանիան վարի իսկապես չեզոքության քաղաքականություն:



### ՃԱՊՈՆԻԱ

## ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ԹՎԱԿԱՆ ԿԱԶՄԻ ԱՎԵԼԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Իր վեցերորդ պլենումում քննարկելով խորհրդականների պալատի և տեղական օրգանների ընտրությունների արդյունքները, Ճապոնիայի Կոմպարտիայի Կենտկոմը բոլոր կոմունիստներին նամակ ուղղեց պարտիայի ամրապնդման և աճման մասին: Նամակում նշվում է սոցիալիստների և կոմունիստների համագործակցության, համատեղ գործողությունների, ձեռք բերված նվաճումների և թերությունների մասին: Ժողովրդի աճող պայքարում կոմպարտիան արդեն մի այնպիսի ուժ է ներկայացնում, որի հետ չի կարելի հաշվի չնստել: Սակայն, որպեսզի լիովին արդարանան աշխատավորների վստահությունը և հույսերը, պետք է աճեն պարտիական կազմակերպությունները և պետք է բարձրանա նրանց կազմակերպվածությունը:

Կենտկոմը խստորեն դատապարտում է այսպես կոչված «պարտիայի տարերային աճի թեորիան» և նշում է, որ պարտիայի ընդլայնման և ամրապնդման համար բավական չէ քաղաքական պարզ գիծ, գործողության ծրագիր և կանոնադրություն ունենալ, անհրաժեշտ է նաև ամբողջ պարտիայի և նրա յուրաքանչյուր անդամի սիստեմատիկ և լարված աշխատանք: Նամակում խնդիր է դրվում մինչև պարտիայի մյուս համագումարը կրկնապատկել կոմունիստների թիվը, ամրապնդել և ակտիվացնել պարտիական բոլոր բջիջների գործունեությունը, ընդլայնել պարտիական մամուլը և շեշտակիորեն բարձրացնել ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի մակարդակը:

Կենտկոմի 6-րդ պլենումի որոշումը և նամակը լայն արձագանք են գտել պարտիայի անդամների շրջանում: Այդ փաստաթղթերը քննարկվում են պարտիայի բոլոր կազմակերպություններում, պրակտիկ միջոցառումներ են մշակվում ուժեղացնելու համար աշխատանքը բնակչության բոլոր խավերի մեջ: Նոր բջիջներ են ստեղծվում ձեռնարկություններում և գյուղերում:

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏՆԵՐԸ ՀԱՄԱՏԵՂ ԵՆ ԳՈՐԾՈՒՄ

Պայքարը խաղաղության համար հիմք է հանդիսացել Ճապոնիայի կոմունիստական և սոցիալիստական պարտիաների համագործակցության համար: Այդ են վկայում այն մի շարք քաղաքական համատեղ ելույթները և պրակտիկ գործողությունները, որ վերջին շրջանում կատարվում են երկրում:

Համարյա բոլոր պրեֆեկտուրաներում դեմոկրատական ուժերը գործում են միասին: Շնորհիվ դրա հաջողվել է հասնել այն բանին, որ 40 քաղաքների մունիցիպալ խորհուրդներն իրենց շրջանները հայտարարել են ատոմազերծ գոտիներ՝ նրանցում արգելված է ջերմամիջուկային զենքի բազաների կառուցումը:

Կոմպարտիան ակտիվ կերպով պաշտպանեց Արհմիությունների գլխավոր խորհրդի (նրանում ղեկավար դերը պատկանում է սոցիալիստներին) առաջարկությունը՝ ամբողջ երկրում ժողովրդական ցույցեր, միտինգներ և գործադուլներ կազմակերպելու ընդդեմ ճապոնա-ամերիկյան «անվտանգության պայմանագրի» վերանայման: Այդ վերանայման նպատակն է Ճապոնիան է՛լ ավելի կապել ամերիկյան իմպերիալիզմի մարտակառքին: Պայքարի կոչ արվեց նաև ընդդեմ ոստիկանության լիազորությունների ընդլայնման մասին ռեակցիոն օրինագծի: Հսկայական է կոմունիստների և սոցիալիստների այդ համատեղ ելույթների նշանակությունը: Ավելի քան 4,5 միլիոն մարդ մասնակցեց բողոքի գործադուլներում և միտինգներում: 386 հասարակական կազմակերպություններ՝ բանվորական, գյուղացիական, կուլտուրական, կրոնական, խաղաղության կողմնակիցների, կանանց, ուսանողական և այլն, որոնց շարքերում 10 միլիոն մարդ է հաշվվում, կառավարության հասցեով բողոքի հայտարարություններ ուղարկեցին: Տոկիոյում, Իոկոհամայում, Նագոյայում, Օսակայում և այլ քաղաքներում, ինչպես նաև ամբողջ երկրի մասշտաբով ստեղծվեցին «անվտանգության պայմանագրի» դեմ պայքարի համատեղ կազմակերպություններ: Կիսիի կառավարությունն ստիպված էր նահանջել և քննարկումից հանել ոստիկանական ծառայության մասին օրինագիծը, ինչպես նաև ժամանակավորապես հետաձգել «անվտանգության պայմանագրի» վերանայման բանակցությունները:

Սոցիալիստական պարտիայի գլխավոր քարտուղար Ասանուման կոմպարտիայի գլխավոր քարտուղար Միյամոտոյի հետ հանդիպման ժամանակ հայտարարեց, որ սոցիալիստական պարտիան հանդես է գալիս հանուն ակտիվ չեզոքության քաղաքականության, Ճապոնիայի, Չինաստանի, ԱՄՆ-ի և Սովետական Միության մասնակցությամբ կոլեկտիվ անվտանգության սիստեմի ստեղծման, հանուն «ատոմազերծ խաղաղ գոտու» Ասիայի և Խաղաղ օվկիանոսի շրջանում:

Իհարկե, սոցիալիստական պարտիայում դեռևս

կան բավական ուժեղ խմբեր, որոնք հրաժարվում են խաղաղության և Ճապոնիայի ազգային անկախության համար ակտիվ պայքարելուց, կոչ են անում համագործակցել կառավարող լիբերալ-դեմոկրատական պարտիայի հետ, հանդես են գալիս կոմպարտիայի հետ գործողությունների միասնության դեմ և նույնիսկ պահանջում են փոխել սոցիալիստական պարտիայի ներկայիս ղեկավարությունը: Սակայն շարքային սոցիալիստների մեծամասնությունը հավանություն է տալիս խաղաղության քաղաքականությանը և ձգտում է հայրենասիրական ուժերի միասնության, կոմունիստների հետ միասնական պայքարի: Եվ դա տալիս է իր արդյունքները:

Երբ ամերիկյան ադմինիստրացիան Օկինավա կղզում քրեական կոդեքս հրատարակեց, ըստ որի մահապատիժ էր սահմանվում այն անձանց համար, որոնք «գործողություններ են կատարել Օկինավայի անվտանգության դեմ», ինչպես նաև բանտարկություն՝ «ամերիկյան ռազմական ադմինիստրացիայի հասցեին վրպարտիչ հայտարարությունների համար», թե՛ կոմպարտիան և թե՛ սոցիալիստական պարտիան հանդես եկան հայտարարություններով: Բողոքելով այդ կոդեքսի դեմ, կոմպարտիան հայտարարեց, որ Օկինավան հանդիսանում է Ճապոնիայի անբաժանելի մասը, և որ կղզու բնակիչները լրիվ իրավունք ունեն պահանջելու վերամիավորվել իրենց հայրենիքի հետ և պայքարելու Օկինավան ատոմային բազայի վերածելու դեմ: ԱՄՆ-ի գործողությունները գնահատելով որպես ֆաշիստական ռեպրեսիաներ ճապոնական ժողովրդի նկատմամբ, կոմպարտիայի կենտկոմը պահանջեց անմիջապես չեղյալ հայտարարել կոդեքսը: Սոցիալիստական պարտիայի հայտարարության մեջ ասվում էր, որ նոր կոդեքսի նպատակն է ճնշել Օկինավայի և Ճապոնիայի բնակչության դեմոկրատական շարժումը, որն ուղղված է իրենց կղզիներն ատոմային բայայի վերածելու քաղաքականության դեմ, հանուն իրենց հիմնական իրավունքների պաշտպանության, Ճապոնիայի հետ Օկինավայի վերամիավորման: Միանման հայտարարությամբ հանդես եկավ նաև Արհմիությունների գլխավոր խորհուրդը:

Կոմունիստների և սոցիալիստների համատեղ ելույթների համար մեծ նշանակություն ունեցան սոցիալիստների լիդեր՝ Ասանումայի հայտարարություններն այն մասին, որ ամերիկյան իմպերիալիզմը հանդիսանում է ճապոնական և չին ժողովուրդների ընդհանուր թշնամին, որ պետք է հայրենիք վերադառնան Ճապոնիայում գտնվող կորեական քաղաքացիները:

Հանուն դեմոկրատիայի, խաղաղության և ազգային անկախության պայքարում ավելի է աճում բանվորների դասակարգային ինքնագիտակցությունը, ամրապնդվում է դեմոկրատական և հայրենասիրական բոլոր ուժերի միասնությունը:

Նոյեմբերի 27-ը «Անվտանգության պայմանագրի վերանայման դեմ համատեղ գործողությունների» օրն էր: Տոկիոյի աշխատավորները փողոց դուրս եկան «Կորչի ամերիկա-ճապոնական դաշինքը», «Կփակենք պատերազմի ճանապարհը», «Դադարեցնել վերազինումը», «Հանուն խաղաղասեր, դեմոկրատական և չեզոք Ճապոնիայի» լոզունգներով: Ոստիկանների շղթաները ճեղքած և պառլամենտի արգելված տերիտորիան ներխուժած ցուցարարները գոչում էին՝ «Կորչի ամերիկյան դիկտատը», «Կեցցե՛ ազատությունն ու անկախությունը»: Երկրում ամենուրեք տեղի ունեցան միտինգներ, ցույցեր, որոնց մասնակցեցին ավելի քան 3 միլիոն մարդ: «Համատեղ գործողությունների օրը» ցուցադրեց Ճապոնիայի ռազմականացման դեմ, հանուն խաղաղության պայքարելու ճապոնական ժողովրդի անսահման վճռականությունը:

ԼԻԲԱՆԱՆ

## ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆ ՖԱՐԱՋՈԼԼԱ ՀԵԼՈՒԻՆ

Լիբանանի կոմպարտիայի Կենտկոմի կոչը՝ փրկելու Կենտկոմի քարտուղար Ֆարաջոլլա Հելուի կյանքը, որին ձերբակալել են Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի իշխանությունները Դամասկոսում, գտել է երկրի բնակչության ակտիվ պաշտպանությունը:

Ժողովրդական հարյուրավոր պատվիրակություններ, որոնցից շատերի թիվը հասնում է 200—400 մարդու, գալիս են Բեյրութ և պետիցիաներ հանձնում հայտարավոր մարդկանց անունից: Հելուին ազատելու համար ակտիվ կերպով հանդես են գալիս տեքստիլ ձեռնարկությունների, տպարանների բանվորները, ռեստորանների և հյուրանոցների ծառայողները: Ուժեղանում է շարժումը նաև գյուղում՝ գյուղատնտեսական բանվորների շրջանում: Բազմաթիվ պատվիրակություններ, պետիցիաներ և հեռագրեր է ուղարկում ինտելիգենցիան՝ բժիշկները, ճարտարապետները, փաստաբանները, պրոֆեսորները: Գիտական գործիչների պատվիրակությունն այցելեց ռեսպուբլիկայի պրեզիդենտին: Ավելի քան 60 երեխաներ՝ Հելուի փոքրիկ դուստրերի ընկերներն ու ընկերուհիները հեռագրով դիմեցին կառավարությանը խնդրելով օգնել՝ երեխաներին վերադարձնելու նրանց հորը:

Բոցաշունչ հայրենասերի ազատության համար ծավալված շարժումը դառնում է ամբողջ լիբանանյան ժողովրդի գործը: Ազգային կոնգրեսը, որը միավորում է քաղաքական տարբեր պարտիաների ներկայացուցիչներին, հանդես է եկել ընդդեմ Հելուի կամայական ձերբակալման (Հելուն Կոնգրեսի հիմնադիրներից մեկն է): Երկրում ստեղծվել է Հելուի ազատության համար պայքարի ազգային կոմիտե:



ՆԵՊԱԼ

## ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ՈՒԺԵՂԱՑՈՒՄԸ

Այս տարի լրացավ Նեպալի կոմպարտիայի հիմնադրման 10 տարին: Պարտիան դժվար, բայց փառավոր ուղի է անցել: Դեռ նոր էր կազմակերպվել, երբ 1952 թվականին ենթարկվեց դաժան ռեպրեսիաների: Բայց նա շարունակում էր աճել, ամրապնդել իր կապերը աշխատավորների հետ: 1956 թվականին պարտիան նորից լեգալ ճանաչվեց, իսկ մի տարի անց տեղի ունեցավ նրա երկրորդ համագումարը, որն ընդունեց իր ծրագիրը և կանոնադրությունը: Համագումարը նաև պահանջեց հրավիրել Հիմնադիր ժողով և մշակել կոնստիտուցիան:

Արդեն 8 տարի է, ինչ երկրում կոնստիտուցիոն միապետական կարգ է հաստատված: Փոխվել են մի քանի համարյա ամբողջապես նշանակովի «պառլամենտներ», կաբինետները հաջորդել են միմյանց: Բայց ոչ մի կառավարություն չի իրագործել ժողովրդի պահանջները: Ավելին, ժողովուրդն աստիճանաբար զրկվել է այն իրավունքներից, որ նա ստացել էր 1951 թվականի ապըստամբության շնորհիվ: Միջնադարյան հետամնացությունը դեռևս տիրապետում է 140 հազար քառակուսի կիլոմետր տարածություն և 8,5 միլիոն բնակչություն ունեցող Նեպալում: Բնակչության 97 տոկոսն անգրագետ է:

Կոմպարտիան ժողովրդին առաջարկել է երկրի առջև ծառացած հիմնական պրոբլեմների լուծման ուղիների և միջոցների ռեալ ծրագիր: Գլխավորը հողային ռեֆորմի իրականացումն է, ֆեոդալական հարաբերությունների բոլոր ձևերի վերացումը և հողի բաժանումը նրանց միջև, ովքեր այն մշակում են: Կոմպարտիայի ծրագիրն ագրարային վերափոխությունների հետ մեկտեղ անհրաժեշտ է համարում բոլոր միջոցներով արդյունաբերության զարգացումը, առանց որի երկիրը չի կարող հասնել իսկական անկախության և առաջադիմության: Կոմունիստները հանդես են գալիս հօգուտ էկոնոմիկայի պլանավորման, այն դեպքում, եթե արդյունաբերության հիմնական ճյուղերը լինեն պետության ձեռքում: Դրա հետ մեկտեղ նրանք գտնում են, որ պետք է խրախուսել ազգային բուրժուազիային, որը ձգտում է զարգացնել արդյունաբերությունը: Բանվորներին պետք է ապահովել աշխատավարձի երաշխավորված մինիմում:

Պարտիան պրակտիկ ուղիներ է նշում տրանսպորտի և կապի, արտաքին ու ներքին առևտրի զարգացման, լուսավորության, կուլտուրայի և արվեստի տարածման, առողջապահության բարելավման ուղղությամբ: Արտաքին քաղաքականության վերաբերյալ ծրագրում ասված է, որ Նեպալը պետք է վարի խաղաղության և ժողովուրդների միջև բարեկամության քաղաքականություն, դեմ դուրս գա ռազմական դաշինքներին:

Կոմպարտիան հաղթահարելով բոլոր խոչընդոտները ձգտում է իր կոչերը հասցնել ժողովրդի տարբեր խավերին: Երկրում ընդամենը մի քանի հազար ռադիոընդունիչ կա: Իսկ թերթերի ընդհանուր տպաքանակը հասնում է 5 հազարի: Բայց պրոպագանդայի այդ սահմանափակ միջոցներից էլ կոմպարտիան հնարավորություն չունի օգտվելու: Տեղի ունեցած ընտրությունների ժամանակ, որոնք առաջինն էին Նեպալի պատմության մեջ, կոմպարտիայի օգտին քվեարկեցին բոլոր ընտրողների 7,4 տոկոսը և նա պառլամենտում չորս տեղ ստացավ: Ներկա պայմաններում դա զգալի հաղթանակ է: Միավորելով իրենց ջանքերը բոլոր դեմոկրատական ուժերի հետ թե՛ պառլամենտում և թե նրանից դուրս, կոմունիստները շարունակում են պայքարել իրենց երկրի և ժողովրդի տնտեսական, սոցիալական և քաղաքական առաջադիմության համար:

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ ԱԿՏՈՒԱԼ ԹԵՄԱՅՈՎ

*Գյուղի և քաղաքի փոխհարաբերության հարցը մարդկային հասարակության զարգացման ամենախոշոր պրոբլեմներից մեկն է։ «Կապիտալ»-ի առաջին հատորում խոսելով քաղաքի ու գյուղի անջատման նշանակության մասին, Կ. Մարքսը նշել է, որ «կարելի է ասել, որ հասարակության ամբողջ տնտեսական պատմությունն ամփոփվում է այդ հակադրության շարժման մեջ» (էջ 371)։ Այդ պրոբլեմն ունի հրակայական նշանակություն նաև սոցիալիստական հասարակության, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար։ Քաղաքի և գյուղի փոխհարաբերության, նրանց միջև գոյություն ունեցած հակադրության վերացման, իսկ ներկա էտապում՝ էական տարբերության հաղթահարման հարցերը հանդիսացել և հանդիսանում են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ներքին քաղաքականության արմատական հարցերից մեկը։ Այդ կարևոր պրոբլեմին է նվիրված Ս. Բադալյանի աշխատությունը [1]։*

*Պետք է ասել, որ չնայած հարցի կարևորությանը, մեր գրականության մեջ այժմ չունենք տվյալ թեմային նվիրված ամբողջական և լուրջ ուսումնասիրություններ։ Անցյալում լույս են ընծայվել սոցիալիզմի պայմաններում քաղաքի և գյուղի փոխհարաբերության հարցերին վերաբերող մի շարք աշխատություններ։*

*Բացի այդ պարբերական մամուլում հրապարակվել են մի շարք հոդվածներ քաղաքի և գյուղի փոխհարաբերության, նրանց հակադրության և էական տարբերության վերացման մասին։ Սակայն այդ աշխատությունների մի մասը հնացել է և չի համապատասխանում մեր զարգացման ներկա էտապի պահանջներին, իսկ մյուսներում դիտվում են քաղաքի և գյուղի փոխհարաբերության միայն առանձին կողմեր։*

*Այս առումով էլ ուշադրության արժանի է Ս. Բադալյանի մենագրությունը, ուր քննության է առնվում քաղաքի և գյուղի փոխհարաբերության հարցն իր ամբողջության մեջ, ինչպես կապիտալիզմից սոցիալիզմին անցման ժամանակաշրջանում, այնպես էլ սոցիալիզմի պայմաններում։*

*Գրախոսվող աշխատությունը, բացի համառոտ ներածականից, բաղկացած է երեք գլխից։ «Քաղաքի և գյուղի փոխհարաբերությունների պրոբլեմը մինչկապիտալիստական անտագոնիստական ֆորմացիաներում և կապիտալիզմի ժամանակ» — այսպես է վերնագրված գրքի առաջին բաժինը։ Մեր կարծիքով, այդ վերնագիրը կարիք ունի ճշտման, քանի որ նման ձևակերպումից կարող է ստացվել այն տպավորությունը, թե կապիտալիզմը անտագոնիստական ֆորմացիա չէ։ Ավելի ճիշտ կլիներ այդ բաժինը վերնագրել «Քաղաքի և գյուղի փոխհարաբերությունների պրոբլեմը անտագոնիստական հասարակական ֆորմացիաներում»։*

*Աշխատության առաջին գլխում քննության են առնված քաղաքի և գյուղի հակադրության առաջացման և նրա հետագա խորացման հարցերը մանավանդ կապիտալիզմի պայմաններում և, հատկապես, նրա իմպերիալիստական ստադիայում։ Հեղինակը հենց սկզբից նշում է, որ քաղաքի և գյուղի փոխհարաբերության պրոբլեմն ունի դարավոր պատմություն և այն գոյություն ունի նաև ներկայումս։ Արձանագրելով այն փաստը, որ նախնադարյան համայնական հասարակության պայմաններում գոյություն չուներ հակադրություն քաղաքի և գյուղի միջև, Ս. Բադալյանը չի մեկնաբանում այդ երևույթը, չի նշում, որ դա հետևանք էր քաղաքների բացակայության։ Քաղաքի և գյուղի հակադրության պրոբլեմի ծագումը կապելով մասնավոր սեփականության առաջացման, փոխանակության զարգացման, աշխատանքի հասարակական բաժանման հետ, հեղինակն ի վերջո անում է հետևյալ եզրակացությունը.* «Հետևաբար, աշխատանքի հասարակական բաժանման զարգացման պատմական պրոցեսը պայմանավորեց գյուղերի և քաղաքների առաջացումը» *(էջ 11)։ Այս թեզում, իհարկե, անճշտություն կա։ Դա կայանում է նրանում, որ գյուղերի առաջացումը չէր կապված աշխատանքի հասարակական բաժանման հետ, գյուղերը գոյություն ունեին մինչև աշխատանքի հասարակական բաժանումը, մինչև քաղաքների առաջացումը։ Անցնելով սորկության ծագման պատճառներին, հեղինակը նշում է նրա երկու կողմը. ա) տնտեսական անհավասարության առաջ գալը՝ կապված մասնավոր սեփականության և փոխանակության առաջացման և զարգացման հետ, բ) պատերազմները որպես սորկության աղբյուր։ Ընդ որում սորկության հիմնական աղբյուրը նա համարում է առաջինը, միաժամանակ նշելով, որ «սորկության լուրջ աղբյուրը պատերազմներն էին, որոնք մղվում էին ունեցվածքի և մարդկանց զավթման համար» (էջ 12)։ Չժխտելով առաջին պատճառի նշանակությունը, մենք հիմք ունենք ասելու, որ, ինչպես ցույց է տալիս ստրկատիրական հասարակության պատմությունը, ստրկության հիմնական աղբյուրը եղել են պատերազմները։ Իհարկե, ստրկության առաջացման տնտեսական հիմքը արտադրողական ուժերի այնպիսի զարգացումն էր, որն արդեն հնարավորություն էր տալիս ստեղծելու հավելյալ արգյունք, և երբ ունևորները ստրուկի աշխատանքի կարիքն էին զգում։ Սակայն պետք է տարբերել ստրկության առաջացման տնտեսական հիմքը և աղբյուրն իրարից։*

*Համառոտակի կանգ առնելով ստրկատիրական և ֆեոդալական հասարակարգերում քաղաքի և գյուղի փոխհարաբերության հարցերի վրա, Ս. Բադալյանը ավելի մանրամասն է վերլուծում այդ պրոբլեմը կապիտալիզմի պայմաններում։ Հեղինակը նշում է, որ «կապիտալիստական արտադրաեղանակը վերջնականորեն անջատում է արդյունաբերությունը գյուղատնտեսությունից, քաղաքը գյուղից» (էջ 25)։*

*Ճիշտ է հեղինակը, երբ խոսելով քաղաքի կողմից գյուղի շահագործման մասին, ընդգծում է, որ «ոչ թե ընդհանրապես քաղաքն է շահագործում գյուղին, այլ կապիտալիստական քաղաքը, հանձինս բուրժուազիայի, հանդիսանում է գյուղացիներին շահագործողը» (էջ 33)։ Աշխատության մեջ ցույց են տրված կապիտալիզմի պայմաններում գյուղի՝ քաղաքից ետ մնալու տնտեսական արմատները, ինչպես և գյուղի չերտավորման պրոցեսը, գյուղատնտեսական արտադրության ցածր տեխնիկան և այլն։ Այդ բոլոր պրոցեսները և երևույթները հատկապես սրվում և խորանում են կապիտալիզմի բարձրագույն ստադիայի՝ իմպերիալիզմի էպոխայում։*

*Նշելով կապիտալիստական տնտեսության անհամաչափ զարգացման հետևանքով արդյունաբերությունից գյուղատնտեսության ետ մնալու փաստը, Ս. Բադալյանն ասում է, որ դա «ամբողջովին պայմանավորված է կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողությամբ» (էջ 72)։ Իհարկե, ընդհանուր առմամբ, դա ճիշտ է, սակայն «բուրժուական էկոնոմիկայի տարբեր ճյուղերի տարերային բաշխումը և անհամաչափ զարգացումը»* անմիջականորեն *չի բխում կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքից, այլ մյուս տնտեսական օրենքներից՝ արժեքի, կոնկուրենցիայի և տնտեսական անարխիայի օրենքներից։*

*Գրքում համարյա թե ոչինչ չի ասվում կապիտալիզմի պայմաններում գյուղատնտեսության տեխնիկական հետամնացության մասին, մինչդեռ դա քաղաքի և գյուղի միջև եղած հակադրության ամենակարևոր հարցերից մեկն է։ Վ. Ի. Լենինը «Ագրարային հարցը և «Մարքսի քննադատները»» աշխատության մեջ անում է այն եզրակացությունը, թե «արդի հողագործությունը — նրա տեխնիկայի և թերևս էկոնոմիկայի ընդհանուր մակարդակով ավելի մոտ է արդյունաբերության զարգացման այն աստիճանին, որ Մարքսը անվանել է «մանուֆակտուրա»» (Երկեր, հատ. 5, էջ 182)։ Այդ խոսքերը գրվել են ավելի քան կես դար առաջ. արդյո՞ք ներկայումս էլ կապիտալիստական գյուղատնտեսությունը տեխնիկապես (և տնտեսապես) գտնվում է մանուֆակտուրային ստադիայում։ Անկասկած, կապիտալիստական գյուղատնտեսությունը ընդհանրապես վերջին կես դարում լուրջ նվաճումներ է ձեռք բերել տեխնիկական զինվածության տեսակետից։ Այն ժամանակ, երբ Վ. Ի. Լենինը գրում էր իր վերոհիշյալ աշխատությունը, տրակտորը, որը գյուղատնտեսության տեխնիկական վերազինման գլխավոր միջոցն է, դեռ գոյություն չուներ։ Սակայն 1956 թվականին կապիտալիստական երկրներում արդեն կար 8 միլիոն 120 հազար տրակտոր, որի մոտ 57 տոկոսը գտնվում էր ԱՄՆ-ում և 22,1 տոկոսը՝ Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՌ-ում ու Կանադայում։ Սակայն այդ երկրներում գյուղատնտեսական բարդ տեխնիկան առաջին հերթին կենտրոնացված է խոշոր ֆերմերական տնտեսություններում, մինչդեռ մանր տնտեսությունների մեծ մասը զրկված է նրանից։ Բայց և այնպես պետք է ասել, որ, չնայած առանձին*

---

[1] С. А. Бадалян—„К проблеме взаимоотношений города и деревни в переходный период от капитализма к социализму и при социализме" Из-во Ереванского Госунта, 1959 г., 346 стр.

կապիտալիստական երկրների գյուղատնտեսությունն իր տեխնիկական արդի մակարդակով հիմնականում դուրս է եկել մանուֆակտուրային ստադիայից, այնուամենայնիվ, ամբողջությամբ վերցրած, Վ. Ի. Լենինի վերոհիշյալ թեզը մնում է ուժի մեջ կապիտալիստական աշխարհի գյուղատնտեսության մեծ մասի, հատկապես՝ Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների գյուղատնտեսության համար։

Ս. Բաղալյանի ուսումնասիրության հիմնական հարցը քաղաքի և գյուղի հակադրության վերացման խնդիրն է՝ սոցիալիզմի պայմաններում, որին և նվիրված են աշխատության II և III գլուխները (աշխատության 346 էջից՝ 312-ը)։ Այդ գլուխներում հանգամանորեն քննության են առնված այդ հակադրության վերացման էտապները կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում։ Հեղինակը իրավացիորեն նշում է, որ կապիտալիզմը «ստեղծում է նյութական նախադրյալներ այդ հակադրության վերացման համար» (էջ 77), որ տվյալ հարցի լուծումը հնարավոր է միայն իրագործել մարքսիզմ-լենինիզմի նշած ուղիով, այն է՝ պրոլետարական ռևոլյուցիայի և սոցիալիզմի հաղթանակի ուղիով. գրքում ընդգծվում է Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի վճռական դերը մեր երկրում քաղաքի և գյուղի հակադրության վերացման գործում։

Համառոտակի բնութագրելով գյուղացիության վիճակը նախասովետական Ռուսաստանում և Հայաստանում, հեղինակը ցույց է տվել, թե ինչպես էր սոցիալիստական շինարարության տարիներին զարգանում և ամրապնդվում բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հետ, պարզաբանում Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության կողմից իրագործվող տնտեսական միջոցառումները, որոնք ապահովեցին սոցիալիստական զարգացումը ո՛չ միայն քաղաքում, արդյունաբերության մեջ, այլև գյուղում, գյուղատնտեսության մեջ։ Աշխատության մեջ ցույց են տրված գյուղի շերտավորման առանձնահատկությունները կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում։ Սակայն չի կարելի համաձայնել հեղինակի այն թեզի հետ, որ «...ագրարային վերափոխումները գյուղում, որոնք գյուղացիությանը նյութական լուրջ օգուտներ բերեցին, ուժեղացրին տնտեսությունների մանրացման պրոցեսը...» (էջ 171)։ Որպես դրա ապացույց, հեղինակը նշում է այն փաստը, որ եթե 1924/25 թթ. գյուղացիական տնտեսությունների թիվը կազմում էր 22 միլիոն 740 հազար, ապա 1928 թվականին այն հասավ մինչև 25 միլիոն 585 հազարի։ Սակայն դա չի կարելի բացատրել միայն գյուղացիական տնտեսությունների մանրացմամբ։ Այստեղ անտեսվում է այդ երևույթի մյուս կողմը՝ պարտիայի և կառավարության քաղաքականության իրագործմամբ գյուղի միջակացման պրոցեսը, որի մասին նշում է նաև ինքը՝ հեղինակը։ Այդ նշանակում է, որ շերտավորման հետ միասին տեղի էր ունենում բատրակների և չքավոր գյուղացիների մի մասի տնտեսական բարձրացում ու, դրա հետևանքով, գյուղացիական նոր տնտեսությունների առաջացում։ Գյուղի շերտավորումը մեր պայմաններում տեղի էր ունենում ավելի դանդաղ, քան այն կատարվում է կապիտալիզմի պայմաններում։

Գրքում փաստական տվյալներով ցույց է տրված ՍՍՌՄ գյուղատնտեսության վերականգնման, սոցիալիստական ինդուստրացման քաղաքականության իրականացման ընթացքը՝ ծանր ինդուստրիայի առավել զարգացմամբ՝ որպես քաղաքի ն գյուղի հակադրության վերացման հիմք, գյուղատնտեսության կոլեկտիվացումը որպես քաղաքի և գյուղի միջև հակադրության վերացման վճռական էտապ։ «Արտադրության միջոցների հասարակական սոցիալիստական սեփականության հաստատումը գյուղում կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության ձևով և կուլակության լիկվիդացումը (որպես դասակարգ— Ս. Զ.), նշանակում է, որ քաղաքի և գյուղի, արդյունաբերության և գյուղատնտեսության միջև հակադրության գոյության հիմքը վերջնականապես վերացված է», եզրակացնում է հեղինակը (էջ 185)։ Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը ստեղծում է նոր արտադրահարաբերություններ, որոնք անհրաժեշտ պայմաններ են ստեղծում նրա արագ զարգացման համար։ Ս. Բաղալյանը փաստական տվյալների հիման վրա ցույց է տալիս կոլեկտիվ, հանրային տնտեսությունների առավելությունները անհատական տնտեսությունների նկատմամբ, գյուղատնտեսության տեխնիկական վերակառուցման և աշխատանքների մեքենայացման ընթացքը, մեքենա-տրակտորային կայանների դրական դերն այդ գործում։ Երկրորդ գլխի վերջում քննության են առնված կուլտուրական ռևոլյուցիայի հարցերը, մի ռևոլյուցիա, «...որը հսկայական նշանակություն ունեցավ քաղաքի և գյուղի միջև դարավոր հակադրության վերացման գործում» (էջ 233)։

Աշխատության վերջին գլուխը՝ «Քաղաքի և գյուղի փոխհարաբերությունների պրոբլեմը սոցիալիզմի ժամանակ» — ամենակարևորն ու ամենաակտուալն է. այստեղ քննության են առնված քաղաքի և գյուղի փոխհարաբերու-



թյան հարցերը ո՛չ միայն սոցիալիզմի պայմաններում, այլև սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում։

Գրքում նշվում է, որ սոցիալիզմի հաղթանակով վերացավ քաղաքի և գյուղի հակադրությունը ՍՍՌՄ-ում, որից հետո առաջացավ մի նոր պրոբլեմ՝ նրանց միջև եղած էական տարբերության վերացման խնդիրը։ Հեղինակը վերլուծման ենթարկելով պետական, համաժողովրդական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության ընդհանրության և տարբերության հարցը, նշում է, որ սոցիալիստական սեփականության այդ երկու ձևերն իրենց հիմքում նույնատիպ են, նրանց միջև եղած առանձնահատկությունները տարբերություններ են միասնության շրջանակներում, միևնույն, այսինքն՝ սոցիալիստական արտադրաեղանակի տարբեր ձևերն են (էջ 242)։ Պետական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության տարբերությունը հեղինակը, առաջին հերթին, տեսնում է նրանում, որ նրանք գտնվում են հանրայնացման տարբեր աստիճանների վրա։ Սակայն այդ հանրայնացումը կոլտնտեսություններում այստեղ նա դիտում է միակողմանի, որպես տնամերձ տնտեսությունների առկայության հետևանք (էջ 243)։ Մինչդեռ կոլտնտեսային արտադրության հանրայնացման մակարդակի բարձրացումը չի կապված միայն հետագայում տնամերձ տնտեսությունների վերացման հետ, այլև՝ կոլտնտեսությունների խոշորացման, նրանց արտադրամիջոցների, անբաժանելի ֆոնդերի աճի հետ։ Կոլտնտեսային սեփականության յուրահատկությունը կայանում է նրանում, ասում է հեղինակը, որ գյուղատնտեսության մեջ հիմնական արտադրամիջոցը՝ հողը, ոչ թե կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականություն է, այլ համաժողովրդական սեփականություն։ Նա գրում է. «...գլխավորը, որ կազմում է կոլտնտեսային արտադրության սպեցիֆիկ առանձնահատկությունը, կայանում է նրանում, որ կոլտնտեսությունն իր արտադրած արդյունքի սեփականատերն է, այն ժամանակ, երբ պետական ձեռնարկություններում արտադրվող արդյունքը ամբողջ հասարակության սեփականությունն է» (էջ 244)։ Այստեղ անտեսվում է այն, որ այդ առանձնահատկությունը բխում է կոլտնտեսային սեփականության բնույթից, նրանից, որ արտադրության միջոցները կամ կազմում են կոլտնտեսային սեփականություն, կամ գտնվում են կոլտնտեսությունների փաստական օգտագործման տակ (հողը)։ Չի կարելի հետևանքը շփոթել պատճառի հետ։ Ոչ ճիշտ պետք է համարել հեղինակի և այն թեզը, որ «...պետական համաժողովրդական սեփականությունը արտադրության մեջ մարդկանց հարաբերությունը հավասար է դարձնում ամբողջ հասարակության մասշտաբով», իսկ «կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականությունը՝ տվյալ կոլեկտիվի մասշտաբով» (էջ 245)։ Նման հարցադրումով փաստորեն խորացվում է սոցիալիստական սեփականության երկու ձևերի միջև եղած տարբերությունը, նրանք որոշ իմաստով դիտվում են մեկուսացված, մինչդեռ կոլտնտեսային արտադրության մեջ մարդկանց միջև հավասար հարաբերությունները չեն սահմանափակվում միայն կոլտնտեսային սեփականության շրջանակներում։ Դրանք հաղթանակած սոցիալիզմի ընդհանուր հավասար հարաբերություններ են ինչպես պետական համաժողովրդական, այնպես էլ կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության մեջ։

ՍՍՌՄ բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև եղած տարբերության վերացումը հեղինակը իրավացի կերպով կապում է կոլտնտեսային սեփականությունը պետական համաժողովրդական սեփականության մակարդակին հասցնելու պրոցեսի հետ. «...հանրային սեփականության երկու ձևերի միաձուլումը և դրա հետևանքով միասնական կոմունիստական սեփականության ստեղծումը,— գրում է նա,— կնշանակի քաղաքի (արդյունաբերության) և գյուղի (գյուղատնտեսության) էական տարբերության վերացում, հետևաբար, կհանդիսանա բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դասակարգային տարբերության վերջնական վերացման հիմքը» (էջ 254)։

Քաղաքի և գյուղի էական տարբերության կարևորագույն կողմերից մեկն էլ այն է, որ գյուղատնտեսության տեխնիկական մակարդակը դեռ զգալիորեն ետ է մնում արդյունաբերությունից, որ այստեղ մեքենաների կիրառումը այն աստիճանի չի հասել, ինչ արդյունաբերության մեջ։ Այդ առումով հեղինակը պարզաբանում է գյուղատնտեսության տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման, քաղաքի և գյուղի էական տարբերության հաղթահարման գործում արտադրամիջոցների առավել զարգացման, երկրի էլեկտրիֆիկացման նշանակությունը։ Աշխատության մեջ, հատուկ բաժնում, քննության են առնված նաև արդյունաբերության և գյուղատնտեսության միջև տնտեսական կապի ձևերի անընդհատ կատարելագործման հարցերը, ինչպես մեքենա-տրակտորային կայանների դերը, նրանց վերակառուցման նշանակությունը գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու գործում։

զարգացման մի շարք հարցերի, ինչպիսիք են՝ մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման, առաջավոր փորձի ընդհանրացման ու տարածման, տոհմաբուծության և անասունների ցեղի բարելավման մասին։

Թերթը դեռևս մարտ ամսին հրապարակել է անասնաբուծության զարգացման գծով շրջանի գյուղատնտեսության աշխատողների ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, սակայն այնուհետև քիչ է անդրադարձել այդ հարցին, չի ընդհանրացրել մրցության արդյունքները։ Իսկ այդ արդյունքները, դատելով ամփոփագրերից, այնքան էլ գոհացուցիչ չեն։ Ահա մի քանի բնորոշ օրինակներ։ Մրցությամբ պարտավորվել էին գյուղատնտեսական հողատարածության 100 հեկտարի դիմաց արտադրել 43,4 ցենտներ միս, այդ թվում՝ 10,6 ցենտներ խոզի միս։ Դեկտեմբերի 1-ի դրությամբ շրջանի կոլտնտեսություններում 100 հեկտարի հաշվով արտադրվել է ընդամենը 23,4 ցենտներ միս, որից խոզի միս՝ 3,25 ցենտներ։ Թվում էր, թե թերթը դրական աշխատանքը վերլուծելու հետ մեկտեղ լուրջ քննադատության կենթարկեր այն կոլտնտեսություններն ու նրանց ղեկավարներին, որոնք հավատարիմ չմնալով իրենց խոստմանը՝ ոչինչ չեն անում մսի արտադրության ավելացման համար։ Բայց այդպես չստացվեց, նա չփորձեց ջրի երես հանել այն մարդկանց, որոնց խոսքն ու գործը չի բռնում իրար։

Շրջանում ավելի վատ է կաթի արտադրության վիճակը։ 100 հեկտար հողատարածության հաշվով մինչև դեկտեմբերի 1-ը արտադրվել է 95,6 ցենտներ կաթ՝ մրցությամբ ստանձնած 140-ի դիմաց։ Կոլտնտեսություններում ո՛չ միայն էական առաջխաղացում չկա, այլև չի պահպանվել կաթի արտադրության անցյալ տարվա մակարդակը։ 1958 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ յուրաքանչյուր ֆուրաժային կովից պակաս է ստացվել 100 կիլոգրամ կաթ։ Չի կարելի ասել, թե «Աղինի կոլտնտեսական» թերթում այդ հարցի վերաբերյալ քիչ նյութեր են տպագրվել։ Հոդվածներն ու թղթակցություններն առատ են, բայց նրանցում պակասում է կարևորը՝ թերությունների հիմնավոր քննադատությունը, կաթնատվության ցածր լինելու գլխավոր պատճառների բացահայտումը, առաջընթացն ապահովող ուղիների ցուցադրումը։ Թերթը լռությամբ է անցել այնպիսի տնտեսության կողքով, ինչպիսին Բագրավան գյուղի կոլտնտեսությունն է, որը անցած 11 ամիսների ընթացքում յուրաքանչյուր կովից ստացել է ընդամենը 295 կիլոգրամ կաթ։ Մինչդեռ այդ նույն կոլտնտեսության ղեկավարները թերթի էջերում բազմիցս հանդես են եկել բարձր պարտավորություններով, խոստացել յուրաքանչյուր կովից ստանալ 1000 կիլոգրամ կաթ։

Դեռևս հունվարի 25-ի համարում թերթը տպագրել է Ջիթհանքովի կոլտնտեսության պարտավորությունները. «Արտելը ընթացիկ տարում յուրաքանչյուր ֆուրաժային կովից պետք է ստանա 1200 կիլոգրամ կաթ»։ Ջբավարարվելով դրանով, որոշ ժամանակ հետո թերթը տրիբունա էր հատկացրել արտելի վարչության նախագահին, որը դարձյալ թմբկահարել էր «իրենց բարձր պարտավորությունները»։ Իսկ դրանց արդյո՞ւնքը — միայն հանդըրստացուցիչ վիճակ։ Իրականում Ջիթհանքովի կոլտնտեսությունը 1200-ի դիմաց ստացել է 812 կիլոգրամ կաթ. 1958 թվականի համեմատությամբ ֆուրաժային կովի կաթնատվությունը պակասել է 139 կիլոգրամով։ Ահա թե ինչը պետք է քննադատվեր թերթի էջերում։

«Աղինի կոլտնտեսական»-ին շատ քիչ է զբաղեցրել այն հարցը, թե ինչու շրջանում 100 մայր կովից, մրցությամբ ստանձնած 92-ի դիմաց, ստացվել է 56 հորթ, 100 ոչխարից՝ 95-ի դիմաց 65 գառ։ Թերթը բավարարվել է միայն այդ մասին քննադատական մի երկտող զետեղելով «Գործի վերածենք մեր պարտավորությունները» առաջնորդողում։ Մինչդեռ կարելի էր խորամուխ լինել դրա պատճառների մեջ և սպառիչ պատասխան տալ բարձրացված հարցին։

Եգիպտացորենի մշակության համար լավ նախապայմաններ կան Աղինի շրջանի կոլտնտեսություններում, սակայն կերային այդ արժեքավոր կուլտուրան դժվարությամբ է արմատավորվում այնտեղ։ Անհրաժեշտ էր համոզիչ փաստարկումներով ցույց տալ եգիպտացորենի դերը անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում։ Բայց թերթը ո՛չ միայն քիչ տեղ է տվել դրան, այլև լռել է, երբ մի շարք կոլտնտեսություններ խիստ թերակատարել են եգիպտացորենի մշակության առաջադրանքները։

Թերթը հազվադեպ է արծարծում այնպիսի կարևոր մի հարց, ինչպիսին անասնաբուծական մթերքների արտադրանքի ինքնարժեքի իջեցումն է, աշխատանքի ու միջոցների ավելի նվազ ծախսումներով ավելի շատ արտադրանք տալը։ Նա քննադատության կրակը չի ուղղել այն կոլտնտեսությունների վրա, ուր պարզապես ոչինչ չի արվում արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու ուղղությամբ։ Իսկ շրջանում նման կոլտնտեսությունները քիչ չեն։ Օրինակ, 1958 թվականին Գուսանագյուղի կոլտնտեսությունում մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքը կազմել 1434 ռուբլի, իսկ Նորաբերդում մեկ ցենտներ բրդի ինքնարժեքը՝ 1595 ռուբլի։ Հայկաձորի կոլտնտեսությունը մեկ կիլոգրամ խոզի միս արտադրելու համար ծախսել է 41 ռուբլի, իսկ պետությանը վաճառել 8—10 ռուբլով։ Կոլտնտեսությունների մեծ մասում մեկ ձվի ինքնարժեքը կազմում է 2—3 ռուբլի, մեկ կիլոգրամ կաթինը՝ 3—4 ռուբլի։ Այդպիսին է վիճակը նաև այժմ։ Այս կարևոր հարցերը ըստ ամենայնի չեն արծարծվել թերթի էջերում։

Թերթը լռությամբ է անցել անասնաբուծության բնագավառի այնպիսի հրատապ պրոբլեմների կողքով, ինչպիսիք են՝ պայքարը անասունների ստերջության և անկումների դեմ, սեփական հոտի վերարտադրությամբ անասունների գլխաքանակի աճի ապահովումը, անասնապահների նյութական շահագրգռվածության բարձրացումը, ֆերմաներում աշխատանքի կազմակերպումն ու պլանավորումը, աշխատատար պրոցեսների մեքենայացումը։

Թերթին քիչ են հետաքրքրել թռչնաբուծության ու մեղվաբուծության զարգացման հարցերը։ Շրջանում թռչունների գլխաքանակի աճման պլանը կատարված է 16,8 տոկոսով։ Մինչդեռ այդ աննորմալ վիճակն արտացոլող հատուկենտ նյութերի կարելի է հանդիպել թերթի էջերում։ Եթե մի ժամանակ Խարկով գյուղի կոլտնտեսությունը տարեկան արտադրում էր 10—12 տոննա մեղր, ապա այժմ ստացված բերքով հազիվ կերակրում է մեղուներին։ Նման վիճակ գոյություն ունի նաև մյուս արտելներում։ Տպագիր խոսքը պետք է արթնացներ այդ տնտեսությունների նիրհող ղեկավարներին, առաջավորների օրինակով ցույց տար հանրային եկամուտներն ավելացնելու արդյունավետ ուղիները։

«Աղինի կոլտնտեսական»-ի էջերում ծավալուն կերպով չի պրոպագանդվել անասնապահության առաջավորների փորձը։ Այդ փոխարինվել է մակերեսային ինֆորմացիոն թղթակցություններով։ Ահա, օրինակ, Շիրակավանի կոլտնտեսության առաջավոր կթվորուհի Վարդ Գրիգորյանի մասին գրված հոդվածը։ Այնտեղ ոչ մի խոսք չի ասված այն մասին, թե կթվորուհին ինչ ճանապարհով է հասել կովերի բարձր կաթնատվության։ Առաջավոր շատ անասնապահներ ունի Իսահակյան գյուղի կոլտնտեսությունը։ Եվ ահա թերթը ուզեցել է պատկերել նրանցից մեկի՝ կթվորուհի Աստղիկ Թադևոսյանի աշխատանքի փորձը։ Թվարկելով մի քանի ցուցանիշներ, անելով ընդհանուր դատողություններ, թերթը այնուհանդերձ, բաց չի արել փակագծերը, ցույց չի տվել թե նա ինչպես է հասել լավ ցուցանիշների, ինչ ձևերով ու մեթոդներով է պայքարում ֆուրաժային կովից 1600 կգ. կաթ ստանալու համար։

«Աղինի կոլտնտեսական» թերթի խմբագրությունը (խմբագիր՝ Մ. Իսպիրյան) ի վիճակի է վերացնելու նշված թերությունները։ Անհրաժեշտ է բազմակողմանիորեն լուսաբանել անասնաբուծության հարցերը, տպագրվող նյութերը դարձնել առավել բովանդակալից ու մարտական։

ԱԼ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ռևոլյուցիոն լուրջ աշխատանք է տարված Արտաշատ գյուղի պարտկազմակերպության կողմից: Դեռ 1917 թվականից մի խումբ ընկերներ, համախմբվելով Կարապետ Կարապետյանի («Քեռու») և Ա. Գալստյանի շուրջը, կազմակերպել են մարքսիստական խմբակ, կապված են եղել Երևանի և Էջմիածնի բոլշևիկյան կազմակերպությունների հետ: Ահա այդ ընկերներից մի քանիսը՝ Ս. Գալստյան, Ա. Բաբադուլյան, Վ. և Ս. Մարգարյաններ և ուրիշներ, որոնք 1917 թվականին և հետագա քաղաքացիական կռիվների օրերին մեծ դեր են խաղացել և շատերը հերոսաբար ընկել սովետական կարգերի հաստատման համար մղվող պայքարում:

Ինչպե՞ս կարել է գրել Ղամարլուի ռևոլյուցիոն անցյալի մասին և չհիշել այն կատաղի պայքարը, որ տեղի ուներ Գյոդաքլու գյուղում աղքատ կուլակների և պարտկազմակերպության մեջ, ո՞ւր են այդ պայքարի մարտիկները՝ Պ. Շահբազյանը, Մ. Գրիգորյանը, Մ. Մնացականյանը, Դադաշը և ուրիշներ:

Հայաստանի և Ղամարլուի ռևոլյուցիոն շարժման մեջ քիչ դեր չեն խաղացել Ղամարլու գյուղի ընկերները: Ո՞վ չգիտե Լ. Խնոյանին, Ս. Դզոյանին՝ մեր խիզախ մարտիկներին: Ինչո՞ւ թշնամու դիրքերը գրոհող այդ ընկերները մոռացության են տրվել:

Ինչպե՞ս կարելի է պատկերացնել Ղամարլուի ռևոլյուցիոն շարժումն առանց Յուվայի պարտկազմակերպության, առանց Ն. Սարգսյանի, Գ. Աղիզյանի, Բաբաջանի, Ենոք Սաֆարյանի, Ենոք Մովսիսյանի և շատ ուրիշների, որոնք իրենց կանանց հետ միասին խիզախորեն մարտնչում էին թե՛ թիկունքում և թե ճակատում: Ինչպե՞ս կարելի է մոռանալ Օղուրբեկլու գյուղի պարտկազմակերպությունը՝ Բ. Զաքարյանին, Հակոբ և Աշոտ Հովհաննիսյաններին, հենց թեկուզ այն փաստի համար, որ նրանց օգնությամբ կանխվեց դաշնակների դիվային պլանը:

Ո՞ւր է Բեջազլու գյուղի պարտկազմակերպությունը, հանձինս Գրիգոր և Վլաս Այվազյանների, Գեղամ Մինասյանի, Հակոբ Զալյանի, Մնացական Բադալյանի, Դոման Հայրապետյանի, Մ. Վարդանյանի և շատ ուրիշների, որոնք դաշնակցական կարգերի դեմ անձնվեր պայքարի օրինակներ տվին, իսկ քաղաքացիական կռիվների ժամանակ ամբողջ մի սերունդ էին ճակատ հանել:

Ո՞ւր են Աղբաշ, Նորաշեն, Դվին, Ջոհրաբլու գյուղերի ռևոլյուցիոն անցյալ ունեցող ընկերները՝ Գ. Հակոբյանը, Տիգրան Հակոբյանը, Ա. Այգինյանը, Ա. Ամիրաղայանը, Վ. Առաքելյանը, Ա. Ծահգելդյանը, Բեգո Վիրաբը, Խ. Նազարյանը, որոնք թե՛ մինչև քաղաքացիական կռիվները, և թե քաղաքացիական կռիվների օրերին ուղղակի հերոսաբար էին կռվում ռազմաճակատի տարբեր տեղամասերում:

Հապա Ղամարլուի շրջանի փոթորկածին երիտասարդնե՞րը, որոնք թե՛ ընդհատակում և թե քաղաքացիական կռիվների ճակատներում իրենց կյանքն ու արյունը չխնայեցին ռևոլյուցիայի համար. դրանցից են՝ Ա. Ծմավոնյանը, Ա. Բադալյանը, Մ. Իսահակյանը (որոնք կապված էին Երևանի «Սպարտակի» հետ) և այլն: Վերջապես ո՞ւր են Ղամարլուի ռևոլյուցիոներ կանայք, որոնք իրենց ամուսինների, եղբայրների հետ համատեղ զենքը ձեռքներին կռվում էին Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար:

Այսպիսով, Ղամարլուի շրջանում վարած մեր հերոսական պայքարն աղճատված է և վերագրված հեղինակին ու մի քանի մտացածին «հերոսների»: Օրինակ, հեղինակը նկարագրում է, թե ինչպես 1921 թվականի հունվարին Ա. Խուդոյանը ճակատամարտ է տալիս խմբապետ Մակեդոնին բանտարկելիս. այնինչ նման «ճակատամարտ» տեղի չի ունեցել, իսկ այդ օպերացիաները ղեկավարել է Լևոն Կարապետյանը: Կամ մի այլ տեղ հեղինակը պնդում է, թե իրեն և Ա. Խուդոյանին նշանակել էին Զեկայի կենտրոնի լիազոր Գ. Ղարիբյանի օգնական: Գ. Ղարիբյանը միայն մի քանի օր է եղել Ղամարլուում և նրա զեկուցման հիման վրա պարտշրջկոմը որոշում է ընդունել և այն կենսագործվել է Մ. Էլոյանի, Պ. Բաբայանի և ուրիշների կողմից և ոչ թե Խուդոյանի կամ հեղինակի կողմից:

Եվ, վերջապես, հեղինակը գրքի խմբագրին՝ Սամսոն Հակոբյանին հաճոյանալու համար, նրա եղբորը՝ Վարդան Հակոբյանին դարձրել է ռևոլյուցիոն ակտիվ գործիչ, նշանակել է Նորաշեն գյուղի հեղկոմի նախագահ, դաշնակցական զորամասի ընդհատակյա կոմբջջի ղեկավար:

Անցյալի ռևոլյուցիոն պայքարն ու իրադարձությունները չի կարելի այս ձևով նկարագրել: Մեմուարային գրականությունը լուրջ գործ է, և դրա հրատարակմանը պետք է մոտենալ պատասխանատվության մեծ զգացումով:

Ղամարլուի ռևոլյուցիոն շարժման մասնակիցներ՝

Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆ, Ա. ՄԵԼԻՔ-ՍԱՀԱԿՅԱՆ, Տ. ՀՈՎՍԵՓՅԱՆ, Կ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ, Պ. ԲԱԲԱՅԱՆ, Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ, Ե. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ, Ս. ՍՄԲԱՏՅԱՆ

---

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐՈՒՄ 1959 ԹՎԱԿԱՆԻՆ ԶԵՏԵՂՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ



ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ



ՀԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ



ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ



ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ







ՔՆՆԱՐԿՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՎԻՃԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ



ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ



ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ



ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐԵՆ





---

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

*Մեր ամսագրի № 10-ում տպագրված «Հասունացած պահանջ» վերնագրով նամակի կապակցությամբ Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրի տեղակալ ընկ. Ա. Շահինյանը հայտնում է, որ նամակում առաջ քաշված հարցերը ճիշտ են ու ժամանակին։ Ձնայած այդ ուղղությամբ կատարված որոշ աշխատանքին, մինիստրությունը միջոցներ է ձեռնարկում ռեսպուբլիկայի գյուղական աշխատավորության գեղարվեստական սպասարկումը բարելավելու համար։*

*Մինիստրությունը միաժամանակ հարց է հարուցել համապատասխան կազմակերպությունների առաջ՝ թույլատրելու առանձին շրջկենտրոններում և քաղաքներում կազմակերպել կերպարվեստի լավագույն գործերի վաճառք։*

---


Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес Редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. (գլխավոր խմբագիր),
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս։

ՎՖ 09037 Պատվեր 2475 Տիրաժ 8500

Տպ. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ։ Ստորագրված է տպագրության 26/XII 1959 թ.։

Խմբագրությանը ճանձնված ձեռագրերը ճեղինակին չեն վերադարձվում։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 59։


# ՆՈՐ ԳՐՔԵՐ

### ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

*Քաղաքական գրականության պետական հրատարակությամբ (Մոսկվա) ռուսերեն լույս է տեսել «Марксизм-ленинизм՝ հիմունքները» ուսումնական ձեռնարկը, ուր հանրամատչելի ձևով շարադրված են մարքս-լենինյան ուսմունքի հիմունքները։*

*Գիրքը պատրաստվել և տպագրության է հանձնվել մի խումբ գիտական և պարտիական աշխատողների, հրապարակախոսների կոլեկտիվի կողմից՝ Օ. Վ. Կուուսինենի ընդհանուր ղեկավարությամբ։ Ձեռնարկն ունի ներածական մաս և հինգ բաժիններ։ Առաջին բաժին — մարքսիստական-լենինյան աշխարհայացքի փիլիսոփայական հիմունքները։ Երկրորդ բաժին — պատմության մատերիալիստական ըմբռնումը։ Երրորդ բաժին — կապիտալիզմի քաղաքատնտեսությունը։ Չորրորդ բաժին — միջազգային կոմունիստական շարժման թեորիան և տակտիկան։ Հինգերորդ բաժին — ուսմունք սոցիալիզմի ու կոմունիզմի մասին։*

### ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

*Հայպետհրատը հրատարակել է «Մարքսիստական փիլիսոփայության հիմունքները» գիրքը, որը նախատեսված է որպես ուսումնական ձեռնարկ։ Գրքում տրված է մարքսիստական փիլիսոփայության հիմունքների՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի սիստեմատիկ շարադրանքը։*

*Ներածության մեջ տրված է փիլիսոփայության առարկայի բնորոշումը, մատերիալիզմի և իդեալիզմի պայքարը մինչմարքսյան էպոխայի փիլիսոփայության պատմության մեջ, մարքսիստական փիլիսոփայության առաջացումն ու զարգացումը։ Ապա գրքի երկու մասերում շարադրված են դիալեկտիկական մատերիալիզմի և պատմական մատերիալիզմի հիմունքները։*

### ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս է տեսել բոլշևիկյան պարտիայի ականավոր գործիչ Ստեփան Շահումյանի 1896—1918 թթ. գրած նամակները։ Ժողովածուն տպագրության է պատրաստել Խ. Հ. Բարսեղյանը։ Առաջին բաժնում զետեղված է Վ. Ի. Լենինի և Ս. Գ. Շահումյանի նամակագրությունը (1904—1918 թթ.). երկրորդ բաժնում՝ Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչներին Ստ. Շահումյանի գրած նամակները, երրորդ բաժնում՝ նամակներ ընկերներին և չորրորդ բաժնում՝ հարազատներին ուղղած նրա նամակները։*

### Ս. ՍՊԱՆԴԱՐՅԱՆԻ ԵՐԿԵՐԸ

*Հայպետհրատը հրատարակել է լենինյան գվարդիայի ականավոր գործիչ Սուրեն Սպանդարյանի երկերի երկհատորյակի առաջին հատորը։ Գիրքն սկսվում է Սպանդարյանի կյանքի և գործունեության մասին համառոտ ակնարկով։ Առաջին հատորում զետեղված են Ս. Սպանդարյանի 1906 թվականից մինչև 1910 թվականի մայիսը գրած հոդվածները, որոնց զգալի մասը նվիրված է 1905—1907 թվականների ռուսական առաջին ռևոլյուցիայում բոլշևիկյան պարտիայի լենինյան տակտիկայի պրոպագանդային ու պաշտպանությանը։ Երկերի ժողովածուում զետեղված շատ հոդվածներ արտացոլում են այն մեծ պայքարը, որ մղել են բոլշևիկները դաշնակների և բուրժուանացիոնալիստական այլ պարտիաների ու հոսանքների դեմ։ Ժողովածուն խմբագրել են Վ. Ավետիսյանը և Տ. Գրիգորյանը։*

### ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Ուկրաինայի քաղաքական գրականության պետական հրատարակչությունը ռուսերեն հրատարակել է «Партийная работа в промышленности» հոդվածների ժողովածուն, ուր ամփոփված է Ուկրաինայի արդյունաբերության ձեռնարկություններում և կառույցներում ՍՄԿՊ XX և XXI համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում կատարված պարտիական աշխատանքի փորձը։ Նրանում ցույց է տրված ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գործունեությունը՝ մասսաների մեջ տարվող կազմակերպական և քաղաքական աշխատանքի կատարելագործման, ղեկավարման լենինյան ոճի արմատավորման ուղղությամբ։*

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՀԱՅԳՐՔԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԳՐՔԵՐԸ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Սովետական Միության միջազգային դրության և արտաքին քաղաքականության մասին», գինը՝ 50 կոպ.:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Խաղաղ գոյակցության մասին», գինը՝ 20 կոպ.:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Բոլոր երկրների ժողովուրդների պարտքն է ապահովել ամբողջ աշխարհի խաղաղությունը», գինը՝ 25 կոպ.:

ՈՒ. ՖՈՍՏԵՐ—«ԱՄՆ-ի Կոմպարտիայի ճգնաժամը և նրա հաղթահարումը», գինը՝ 45 կոպ.:

«ՍՄԿՊ Կանոնադրություն», գինը՝ 2 ռուբլի:

Ա. ՄԻՆԱՍՅԱՆ—«Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքի մասին», գինը՝ 1 ռուբ. 15 կոպ.:

«1959—65 թթ. կոմունիզմի կառուցման մարտական ծրագիրը» (ալբոմ), գինը՝ 13 ռուբ. 20 կոպ.:

Դ. ԲԱԽՇԻԵՎ—«Ինչպե՞ս է ստեղծվել լենինյան պարտիան», գինը՝ 2 ռուբ. 25 կոպ.:

«ՀԱՄԼԿԵՄ կանոնադրություն», գինը՝ 20 կոպ.:

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ—«Էռնստ Թելման», գինը՝ 60 կոպ.:

«Լենինյան կոմերիտմիությունը», գինը՝ 11 ռուբլի:

Վ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ—«Պատճառականության կատեգորիայի մասին» գինը՝ 1 ռուբ. 15 կոպ.:

Վ. ԸՆԴԻԲԱՐՅԱՆ—«Ալբանական ժողովրդական Ռեսպուբլիկա», գինը՝ 40 կոպ.:

Թ. ԻՍԱՅԱՆ—«Գերցենի աթեիզմը», գինը՝ 6 ռուբ. 20 կոպ.:

Պ. ՍԱՀԱԿՅԱՆ—«Մայակովսկին և ռևոլյուցիան», գինը՝ 2 ռուբ. 80 կոպ.:

Ս. ՄԱՐԿՈՍՅԱՆ—«Ագրարային հարաբերությունները Արարատյան նահանգում», գինը՝ 12 ռուբ. 30 կոպ.:

*ԳՐՔԻ ԱՌԵՎՏՐԻ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆ «ՀԱՅԳԻՐՔ»*